АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСКУССТВ

М. М. АСРАТЯН

# АРХИТЕКТУРНЫЕ КОМПЛЕКСЫ СЮНИКА XVII—XVIII ВВ.

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1973

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ԱՐՎԵՍՏԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Մ. Մ. ՀԱՍՐԱԹՅԱՆ

# ՍՅՈՒՆԻՔԻ XVII—XVIII ԴԱՐԵՐԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐՆԵՐԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1973

72 ԱՐ 1
Հ 36

*Գրքում ուսումնասիրվում են Տաթևի Մեծ անապատի, Շատին վանքի, Հարանց, Շնհերի Կուսանաց, Բեխի անապատների, Հալիձորի, Մեղրու բերդերի և այլ համալիրները, որոնք կարևոր նշանակություն ունեն հայ ճարտարապետության զարգացման համար։*

*Բացահայտվում են XVII—XVIII դարերի Հայաստանի ճարտարապետական անսամբլների առանձնահատկությունները, նշանակությունը և արժանիքները։ Վերլուծվում են այդ անսամբլների կառուցվածքների առանձին տիպերը։*

Հ $\frac{0322-044}{703(02)-73}$ 66—71

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Միջնադարյան Հայաստանի ճարտարապետությունը վաղուց է գրավում հետազոտողների ուշադրությունը: Ընդհանուր բնույթի ուսումնասիրություններից բացի, ստեղծվել են բազմաթիվ աշխատություններ, նվիրված հայ ճարտարապետության հանգուցային հարցերին, դպրոցներին, անսամբլներին, առանձին հուշարձաններին: Սակայն դեռ մինչև այժմ բացակայում են XVII—XVIII դդ. հայ ճարտարապետությանը վերաբերող մենագրություններ, և տվյալ աշխատությունը այդ ուղղությամբ փաստորեն առաջին փորձն է: Նման հետազոտությունն անհրաժեշտ է նաև այն պատճառով, որ, անբավարար ուսումնասիրվածության հետևանքով, Հայաստանի ուշ միջնադարի ճարտարապետությունը մինչև օրս էլ չի ստացել իր օբյեկտիվ գնահատականը և մասնագիտական գրականության մեջ նույնիսկ անկումային է համարվում:

Աշխատությունը նվիրված է պատմական Սյունիքի տերիտորիայում գտնվող XVII—XVIII դդ. ճարտարապետական համալիրներին:

Նման տերիտորիալ ընդգրկումը հիմնավորվում է այն բանով, որ Սյունիքն ուշ միջնադարում նույնպես հանդես է գալիս որպես տնտեսական-մշակութային ամբողջություն, և այդ ժամանակաշրջանում համեմատաբար նպաստավոր պայմանները, առավել քան Հայաստանի ուրիշ որևէ նահանգում, թույլ են տվել շինարարական լայն աշխատանքների ծավալում: Եվ պատահական չէ, որ Սովետական Հայաստանի տերիտորիայում ուշ միջնադարի ճարտարապետական համալիրները, բացի մեկից (Խոր-Վիրապ), գտնվում են Սյունիքում՝ Վայոց ձորում և Զանգեզուրում:

Ուսումնասիրվող ժամանակաշրջանում Սյունիքն իր պատմական անցուդարձով և տնտեսական վիճակով ինքնուրույն շատ կողմեր ունի: Այստեղ, ի տարբերություն Հայաստանի այլ շրջանների, ազգային-ազատագրական պայքարը ոչ միայն հարատևել է մինչև ուշ միջնադար, այլ նաև հաջողությամբ է պսակվել: Այն ժամանակ, երբ ողջ Հայաստանը գտնվում էր պարսկա-թուրքական տիրապետության տակ, Սյունիքում ստեղծվել է միակ անկախ Ղափանի իշխանությունը: Այս գործոնը նպաստել է ոչ միայն շինարարության ծավալմանն ընդհանրապես, այլև ամրոցա-

շինությանը, և Հայաստանի ուշ միջնադարում հայերի կողմից կառուցված ամրոցները գտնվում են Սյունիքում (Մեղրի, Հալիձոր)։

Տվյալ աշխատությունում ուսումնասիրված համալիրները՝ Տաթևի Մեծ անապատը, Հալիձորի Հարանց անապատը, Ծղեների Կուսանաց անապատը, Հալիձորի բերդը, Կնեվանքը, Ցատին վանքը, Մեղրու բերդը, Մեղրու վանքը, շատ կարևոր են և անհրաժեշտ հայ ճարտարապետության ամբողջական պատմության համար։ Իսկ վերը թվարկված համալիրներից և ոչ մեկը մինչև այժմ չի ուսումնասիրվել մասնագիտական գրականության մեջ։

Ընդհանուր բնույթի աշխատություններում, խոսելով Հայաստանի XVII—XVIII դարերի ճարտարապետության մասին, նշել են միայն Արարատյան դաշտում գտնվող հուշարձանները՝ Մուղնին, Էջմիածնի Շողակաթը, Խոր-Վիրապը և հին եկեղեցիներին կից կառուցված զանգակատները։ Իսկ Սյունիքի այդ շրջանի համալիրները և բազմաթիվ առանձին կանգնած հուշարձանները դուրս են մնացել ուսումնասիրողների տեսադաշտից։

Սյունիքի XVII դարի ճարտարապետական համալիրների մասին առանձին դիտողությունների հանդիպում ենք միայն հայ ճարտարապետության պատմության ընդհանուր հարցերը շոշափող աշխատություններում։ Համեմատաբար ընդարձակ տեղեկությունների, պատմական և նկարագրական բնույթի, հանդիպում ենք անցյալ դարի ճանապարհորդների և մինչսովետական շրջանի ազգագիրների մոտ։ Մասնագիտական գրականությունում Սյունիքի ու միջնադարի համալիրների մասին համառոտ դիտողություններ կամ նրանց առանձին կառուցվածքների վերաբերյալ ուսումնասիրություններ երևան են գալիս վերջին քսանամյակում միայն։

Տվյալ աշխատության հիմնական նպատակը ոչ միայն այդ հուշարձանները ներկայացնելն է, այլև XVII—XVIII դարերի Հայաստանի անսամբլների ճարտարապետության առանձնահատկությունները և ուղղությունը, բնույթն ու արժանիքները վեր հանելը։

* * *

Սյունիքը կամ Սյունյաց աշխարհը տեղադրված է Հայաստանի հարավ-արևելյան մասում, Վարդենիսի լեռնաշղթայից արևելք։ Պատմական Սյունիքի սահմանները տարբեր ժամանակաշրջաններում փոփոխվել են։ Սյունյաց թագավորության ստեղծման և հզորացման ժամանակ՝ X—XI դարերում, նրա տերիտորիան բավականաչափ ընդարձակ էր, այն ընդգրկում էր Բաղք, Կապան, Արևիք, Կովսական, Հաբանդ գավառները ամբողջությամբ և Ծղուկ գավառի հարավային մասը[1]։

Հետագայում Սյունիքի սահմանները արդեն զգալի կրճատվում են և ժամանակակից հասկացողությամբ Սյունիքը կազմված է Վայոց ձորից (որը զբաղեցնում

---

[1] Թ. Խ. Հակոբյան, *Հայաստանի պատմական աշխարհագրություն*, Երևան, 1968, էջ 278։

է Արփա գետի ավազանը ՀՍՍՀ-ի տերիտորիայում) և Զանգեզուրից, որը ձգվում է Վայոց ձորից մինչև Մեղրու ձորը[2]:

Ըստ Հայկական ՍՍՀ վարչա-տերիտորիալ բաժանման պատմական Սյունիքի տերիտորիան ընդգրկում էր Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Սիսիանի, Գորիսի, Ղափանի և Մեղրու շրջանները:

Սյունիքի աշխարհագրական սահմաններն են հյուսիս-արևմուտքից Վարդենիսի լեռնաշղթան, հյուսիս-արևելքից՝ Ղարաբաղի բարձրավանդակը, արևմուտքից՝ Զանգեզուրի լեռնաշղթան, հարավից՝ Արաքս գետը: Սյունիքը ոչ միայն Սովետական Հայաստանի, այլև ողջ Անդրկովկասի ամենալեռնոտ և կտրտված երկրամասն է[3]: Մի հանգամանք, որը նպաստեց, որ հայկական պետականության անկումից հետո, մինչև XVIII դարի կեսերը, Սյունիքի (և Ղարաբաղի) մելիքությունները կարողանան պայքարել թուրքական և պարսկական նվաճողների դեմ և պահպանեն իրենց որոշ, փաստական անկախությունը:

Դեռ վաղ միջնադարից Սյունիքը եղել է պատմական Հայաստանի զարգացած ճարտարապետություն ունեցող նահանգներից մեկը: Հայ ճարտարապետության մեջ իրենց արժանի տեղն ունեն Սյունիքի IV—VII դդ. այնպիսի հուշարձանները, ինչպիսիք են Ծիծեռնավանքի եռանավ բազիլիկան, Թանահատի միանավ եկեղեցին, Սյունի վանքը: Ծինարվեստը առանձնապես լայն զարգացում ստացավ Սյունյաց իշխանության և թագավորության տարիներին, երբ հիմնադրվեցին բազմաթիվ խոշոր կրոնական և մշակութային կենտրոններ: Այդ ժամանակաշրջանում էլ ստեղծվեց հայ ճարտարապետության պատմության մեջ կարևոր տեղ գրավող Սյունիքի դպրոցը:

Սակայն XI դարից սկսած Սյունիքը մինչև XVII դարը անընդհատ ենթարկվում է թշնամական ասպատակությունների, որոնց ընթացքում քանդվում և ավերվում էին միջնադարյան Սյունիքի մշակութային կենտրոնները, վանքերն ու քաղաքները:

XV—XVI դարերում Հայաստանը դառնում է Օսմանյան Թուրքիայի և Սեֆյան Իրանի միջև մղվող պատերազմների թատերաբեմ: 1554 թ. թուրքական բանակը մտնում է Արարատյան դաշտ և այստեղից՝ Սյունիք ու Նախիջևան: Սյունիքի նվաճման մասին արշավանքի ժամանակակից թուրք պատմիչ Փեչևին գրում է. «...լուսավոր ցերեկը մութ գիշերի վերածվեց ... Հաղթական բանակի սարսափից քաղաքներն ու գյուղերը, տներն ու բնակավայրերն այն աստիճան ամայացել, ավերվել ու բուերի ու ագռավների բնակավայր էին դարձել, որ տեսնողներին սարսափ էին պատճառում: Որսի և ավերի զինվորները... գյուղերն ու ավանները, դաշտերն ու շինությունները այն աստիճան քանդեցին ու ավերեցին, որ շինության ու կենդանության հետք անգամ չմնաց[4]»:

Թուրքիայի հաջորդ արշավանքն Անդրկովկաս կայացավ 1578 թ.: Թուրքական

---

[2] „Советский Союз. Армения." М., 1968, стр. 290.

[3] *Նույն տեղում:*

[4] *«Հայ ժողովրդի պատմություն», Առաջին մաս, Երևան, 1951, էջ 260:*

բանակը նորից ապստամբեց Սյունիքը և Ղարաբաղը: 1590 թ. թուրք-պարսկական համաձայնագրով Թուրքիային անցավ ամբողջ Անդրկովկասը և Հարավային Ադրբեջանը:

Իրանի տիրակալ Շահ-Աբասի արշավանքների ժամանակ Հայաստանը կրկին ամայացավ, երբ նա որոշեց բռնի տեղահանել հայ բնակչությանը և տեղափոխել Իրանի խորքերը: Տեղահանությունն ու դրան հաջորդած սովը Արևելյան Հայաստանի բնակչությանը բնաջնջման վտանգի տակ դրեց: 1616 թ. թուրքերը վերսկսում են ռազմական գործողությունները, և թուրք-պարսկական նոր պատերազմները, ընդմիջումներով, տևում են մինչև 1639 թ., երբ երկու պետությունների միջև հաշտության պայմանագիր է կնքվում: Այդ պայմանագրով վերահաստատվում է Հայաստանի 1555 թ. բաժանումը համարյա նույն սահմաններով և Արևելյան Հայաստանը վերստին անցնում է Պարսկաստանի տիրապետության ներքո: Դարերով խաղաղության ծարավի հայ բնակչությունը XVII դարի առաջին կեսից վերստին ձեռնամուխ է լինում ավերված երկիրը վերաշինելուն:

Ըստ Արևելյան Հայաստանի վարչական բաժանման, Սյունիքը ինչպես և Արարատյան դաշտն ու Շիրակը ենթարկվում էին Երևանի խանին: Հայ բնակչություն ունեցող գավառները կառավարում էին մելիքները, որոնք սովորաբար հայեր էին: Նրանք մեծ մասամբ հին ֆեոդալական տների շառավիղներ էին, որոնք կորցրել էին իրենց վաղեմի իրավունքները և կախման մեջ ընկել օտար նվաճողներից:

Սյունիքի XVII և XVIII դարի առաջին կեսի մելիքություններից համեմատաբար հզորը և նշանավորը չորսն էին՝ Անգեղակոթինը, Քաշաթաղինը (կենտրոնը Խնածախ գյուղը), Տաթևինը և Բեխինը:

Թե՛ Սյունիքի և թե՛ Ղարաբաղի մելիքությունները խոշոր դեր խաղացին XVIII դարի ազատագրական պայքարում, որն ուղղված էր պարսկական լծի և թուրքական զավթիչների դեմ: Սյունիքում ազատագրական պայքարը ղեկավարում էր Դավիթ-Բեկը: Կարճ ժամանակամիջոցում իր շուրջը համախմբելով Սյունիքի ապստամբ ուժերին, նա ազատագրում է Զանգեզուրը, գրավում Որոտն, Զեյվա բերդերը: Ազատագրված Սյունիքի մելիքությունները միանալով կազմում են Ղափանի անկախ իշխանությունը, Հալիձորի կենտրոնով: Դավիթ-Բեկի մահից հետո (1728 թ.) Ղափանի իշխանությունն իր գոյությունը պահպանում է միայն երկու տարի: 1730 թ. այն ամբողջովին նվաճվում է թուրքական զորքերի կողմից և վերանում պատմական ասպարեզից:

Ընդամենը ութ տասնամյակ տևած խաղաղությունը՝ 1639 թ. թուրք-պարսկական հաշտությունից մինչև XVIII դարի քսանական թվականները, նպաստավոր եղան Արևելյան Հայաստանի և մասնավորապես Սյունիքի տնտեսական, շինարարական, մշակութային կյանքի աշխուժացման, կարելի է ասել վերածննդի համար: Այդ տարիները առանձնապես բեղմնավոր էին շինարարական աշխատանքների ծավալման առումով՝ կարճ ժամանակամիջոցում վերականգնվեցին քանդված ու ամա-

յացած բնակավայրերը՝ գյուղերն ու քաղաքները, վերակառուցվեցին վանքերն ու եկեղեցիները և կառուցվեցին նոր, խոշոր ճարտարապետական համալիրներ։

* * *

Սյունիքի XVII—XVIII դարերի համալիրների ճնշող մեծամասնությունը «անապատներ» են, որոնք բավական մեծ դեր խաղացին ողջ Հայաստանի մշակութային զարթոնքի գործում։ Գրականության մեջ՝ վանքերը և անապատները հաճախ նույնացվում են, որը, սակայն, ճիշտ չէ։ Անապատները նույնպես կրոնական կենտրոններ էին, բայց ունեին մի շարք էական առանձնահատկություններ, որոնցով տարբերվում են վանքերից։

Ըստ Ստ. Մալխասյանի անապատը «մարդկային բնակությունից հեռու ...տեղում հաստատված վանք է, միայնակեցարան կրոնավորների համար[5]»։

Նույն բնորոշմանը հանդիպում ենք և Հ. Աճառյանի մոտ՝ անապատը «քաղաքից հեռու գտնված վանք է[6]»։ Սակայն քաղաքից հեռու գտնվելը անհրաժեշտ, բայց ոչ բավարար պայման է, վանքը անապատ կոչելու համար կան ավելի էական առանձնահատկություններ։ Ըստ Կ. Ղաֆադարյանի «...անապատ կոչվում էին միայն խստակյաց հոգևորականների՝ քաղաքից և որևէ այլ բնակավայրից դուրս գտնվող վանքերը, որտեղի կրոնական կարգերն ավելի խիստ էին, քան քաղաքի միջին եղածները[7]»։

Վանքի և անապատի հիմնական տարբերությունը նրանց կանոնադրություններին մեջ է, իսկ բնակավայրերից հեռու գտնվելը պարտադիր է ոչ բոլոր անապատների համար։ Մեկուսացած, բնակությունից հեռու վայրերում կառուցվել են միայն «արանց» անապատները, իսկ կուսանաց անապատները, անվտանգության նպատակով, ընդհակառակը, տեղադրվել են միայն բնակավայրերի մեջ կամ նրանց կից։ Հաղպատի Կուսանաց անապատը գտնվում է Հաղպատի վանքին հարևան, գյուղի տերիտորիայում, Անիի Կուսանաց անապատը տեղադրված է ձորի եզրին, քաղաքի տերիտորիայում, Շնհեր գյուղում է գտնվում Շնհերի Կուսանաց անապատը, Մալևի, Հալիձորի (Ղափան) Կուսանաց անապատները կառուցվել են նույնանուն գյուղերին կից (այժմ այդ բնակավայրերը չեն պահպանվել)։

Հետևաբար, էականը ոչ թե տեղն է, այլ միաբանության կյանքի կանոնադրությունը։ Իսկ այն, որ վանքի և անապատի կրոնական կարգերի տարբերությունը շատ կարևոր է և զգալի, պարզորոշ երևում է Շատին վանքի օրինակով։ Շատինը կառուցվել է 1655 թ. և գործել որպես սովորական վանք։ Սակայն որոշ ժամանակ անց, XVII դարի երկրորդ կեսում վանքի միաբանությունը որոշում է վանքը վերափոխել անապատի։ Եվ, որովհետև, նրանց անծանոթ էր վերջինիս կանոնադրու-

---

[5] Ստ. Մալխասեանց, *Հայերէն բացատրական բառարան*, հատ. Ա, 1944, էջ 89։

[6] Հ. Աճառյան, *Հայերեն արմատական բառարան*, հատ. Ա, Երևան, 1926, էջ 288։

[7] Կ. Ղաֆադարյան, *Հովհաննավանքը և նրա արձանագրությունները*, Երևան, 1948. էջ 46։

թյունը, դիմում են Հովհաննավանքի եպիսկոպոս Հովհաննեսին. «Եւ եկին մուղտեսիք յԵղեգաձորոյ ի Ծատին անապատէն, աղաչէին և ասէին, մեք ոչ գիտեմք զկարգ և սահմանս անապատի, դու եկ և կարգաւորեա զմեզ[8]»: Հովհաննեսը, որ մինչև այդ յոթ տարի անց էր կացրել Լիմ անապատում և քաջ գիտեր անապատական կանոնադրությունը «ըստ աղաչանաց նոցա ելեալ գնաց և ըստ կարգի անապատի կարգաւորեաց զնոսա ուղղությամբ և ամենայն բարեձևութեամբ[9]»: Այս վերափոխումից հետո է, որ Ծատին վանքը սկսում է կոչվել Ծատիկ անապատ և գրականության մեջ հանդիպում է այդ երկու անուններով:

Անապատական կյանքի առանձնահատկությունները հասկանալու համար անհրաժեշտ է դիմել նրանց առաջացման և զարգացման պատմությանը: Չորրորդ դարի սկզբում, երբ քրիստոնեությունը պետական կրոն դարձավ շատ երկրներում՝ ժողովրդին, առանց նրա ներքին համոզմունքի, պարտադիր կարգով, զանգվածաբար քրիստոնյա էին դարձնում, ֆանատիկոս քրիստոնյաներից շատերը հեռանում էին անապատ ճգնելու, վտանգված տեսնելով քրիստոնեության հիմնական դոգմաները:

Առաջին քրիստոնյա անապատականները երևան եկան Եգիպտոսում, որտեղ այս երևույթը նկատելի էր և հեթանոսական կրոնների ժամանակ: Անապատ անվանումը պահպանվել է այդ ժամանակաշրջանից, երբ միայնակյացները բնակվում էին իսկական անապատում, Եգիպտոսում և Պաղեստինում:

Շատ չանցած առաջին ճգնավորները՝ անապատականները, սկսում են բնակվել միմյանց մոտ. առաջանում է համակեցություն, ստեղծվում են կրոնական նոր տիպի կազմակերպություններ, որոնք կոչվեցին հունարեն «մոնաստիրիա»՝ վանք (իսկ «մոնախ», նույնպես հունարեն, նշանակում է «միայնակյաց»)[10]:

Առաջին վանքերը ստեղծվեցին Եգիպտոսում և այստեղից տարածվեցին ողջ քրիստոնեական աշխարհում՝ Պաղեստինում, Ասորիքում, որտեղից անցան նաև Հայաստան: Վանական շարժումը հոգևորականների կողմից չէր ստեղծված և նույնիսկ ուղղված էր արդեն պետական դարձած եկեղեցու դեմ: Վանականները չէին կամենում եկեղեցու հետ որևէ հարաբերություն ունենալ, որովհետև նրանց կարծիքով եկեղեցին ևս միանգամայն աշխարհիկ էր և հեռացած քրիստոնեական սկզբունքից[11]: Եկեղեցին զգալով պառակտման վտանգը, անհապաղ միջոցներ ձեռնարկեց անապատականությունն իրեն ենթարկելու և իր մեջ ներգրավելու համար: Արդեն հինգերորդ դարում անապատական-վանական շարժումը լրիվ ենթարկվեց եկեղեցու իշխանությանը, և 451 թ. Քաղկեդոնի տիեզերական ժողովը կանոններ սահմանեց նաև վանքերի համար: Այդ կանոնների համաձայն եպիսկոպոսը իշխում էր իր թեմի

---

8 *«Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն», հատ. երկրորդ, Վաղարշապատ, 1870, էջ 50։*

9 *Նոյն տեղում։*

10 Երուանդ վարդապետ Տէր-Մինասեանց, *Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, հատ. առաջին, Էջմիածին, 1908, էջ 275—277։*

11 *Նոյն տեղում։*

մեջ եղած բոլոր վանքերի վրա: Ոչ մի նոր վանք չէր կարող առանց նրա թույլտվության հիմնվել, ժամանակավոր վանական դառնալ չէր կարելի, վանականներն ամուսնանալու իրավունք չունեին և այլն[12]:

Ինչպես տեսնում ենք, V դարում անապատները և վանքերը նույնացան և ստացան միասնական կանոնադրություն, դառնալով քրիստոնեական եկեղեցու կարևոր և հիմնական կազմակերպությունները: Սակայն շատ չանցած վանքերը դարձան միաժամանակ և հարուստ տնտեսություն ունեցող խոշոր ֆեոդալական կազմակերպություններ: Աշխարհիկ կյանքի այն բոլոր տարրերը, որոնց դեմ էին անապատականները, նորից երևան եկան վանական կյանքում: Այս է պատճառը, որ VI դարից հետո «անապատները» նորից սկսեցին հանդես գալ, ճիշտ է, եկեղեցու հսկողության և իշխանության ներքո, բայց իրենց ուրույն՝ վանքերից տարբեր կանոնադրությամբ: Միջնադարում, մանավանդ արևելյան և արևմտյան եկեղեցիների բաժանումից հետո, անապատները հիմնականում պահպանվեցին մոնոֆիզիտ ազգային եկեղեցիներում՝ Եգիպտոսում (կոպտական), Ասորիքում և Հայաստանում:

«Անապատներ» ունեցել են նաև ուղղափառ եկեղեցիները: Ռուսաստանում «անապատներին» համապատասխանում են «սկիտները» (հունական «ասկիտես» -ասկետ բառից), որոնք լայն տարածում գտան ուշ միջնադարում, առանձնապես XVII դարի երկրորդ կեսում, երբ ռուսական եկեղեցու պառակտումից հետո հալածանքից փախչող հնածեսները խուլ վայրերում ստեղծում էին իրենց վանքանման ավանները: Դալն այսպես է բնորոշում սկիտը՝ «-անապատ, ամայի վայրում առանձին խցերով ճգնավորների ընդհանուր մենաստան, եղբայրություն, համակեցություն: Սկիտ են անվանում նաև հերձվածողականների վանքերը»[13]: Ուղղափառ եկեղեցու վանքերին կից, որոշակի հեռավորության վրա ևս կառուցվում էին սկիտներ՝ ճգնավոր-հոգևորականների համար: Սակայն Ռուսաստանում սկիտները XVIII—XIX դդ. վերածվեցին վանքերի, նրանցից ոչնչով չտարբերվող թե՛ ներքին կառուցվածքով և թե՛ ճարտարապետությամբ:

Սկիտներ միջնադարում հանդիպում են նաև Բալկանյան երկրների ուղղափառ եկեղեցիներում (օրինակ՝ Ռումինիայում 1666 թ. կառուցվեց Կորնետ Ռիմնիկու Վիլչու սկիտը):

Հայ եկեղեցու պատմության մեջ անապատները հարատևել են մինչև ուշ միջնադար: IX—XIV դարերը Հայաստանում անապատներ կառուցվել են Շիրակում, Լոռիում, Այրարատում, Սյունիքում, Վասպուրականում:

Հետաքրքրական է այն փաստը, որ պատմիչները նշում են Սյունիքում միջնադարում բազմաթիվ անապատների գոյությունը, սակայն անապատ անվանումով համալիրներ եզակի են պատահում (օրինակ Մասրուց անապատ): Նկարագրելով Հարանց անապատի տեղի ընտրումը, Դավրիժեցին նշում է, որ Սարգիս եպիս-

[12] *Նույն տեղում, էջ 283—284։*

[13] „Толковый словарь живого великорусского языка“, т. IV, М., 1955, стр. 197.

կոյրոսն ու Կիրակոսը եկան «յարեւելեայ մասն աշխարհին Հայոց, և մանաւանդ յերկրին Սիւնեաց՝ որ և ի հին ժամանակից անապատ եղեալ է յաշխարհին յայնմիկ, որոց տեղիքն ևս երևին»...[14]: Սյունիքի միջնադարյան մենաստանները թվելիս Ստ. Օրբելյանը, և ոչ էլ որևէ մեկը, չի նշում անապատ անունով: Գաղտնիքը պարզվում է, երբ նկատի ենք ունենում, որ այդ դարերում Հայաստանում «անապատն» ունեցել է ուրիշ անվանում ևս՝ «ուխտ»: Ըստ Օրբելու, «ուխտ» նշանակում է ոչ թե սովորական վանք, այլ «обитель»—մենաստան[15]:

Ուշադրություն դարձնելով Ստ. Օրբելյանի այն բնութագրումներին, որոնք վերաբերում են Սյունիքի «ուխտերին», միանգամայն ակներև է դառնում վերջինների «անապատային» բնույթը: Նախ և առաջ Օրբելյանի մոտ՝ Սյունիքի մենաստանների թվարկման գլուխը վերնագրված է «Վանորայք եւ ուխտք եկեղեցեաց թէ քանի էին յայսմ աշխարհի», որով հստակ առանձնացվում են վանքերն ու ուխտերը[16]: Ուխտ՝ անապատ հանդիսանում են և շատ մենաստաններ, որոնք ունեն նույնիսկ վանք անվանումը՝ օրինակ Խոտակերից վանքը, Թանահատի վանքը, Երիցավանքը, Ծառանեա վանքը: Սակայն Օրբելյանը անունից հետո բնութագրում է նրանց միաբանությունը, որպես՝ «մշտապաշտոնք, մշտնջենաւորք, խարազնազգեստք սահմանաւորի»[17], որը բացահայտում է այդ միաբանությունների ճգնավորական բնույթը: Այս առանձնապես պարզ երևում է առանձին մենաստանների նկարագրության մեջ: Օրինակ, պատմիչը նշում է, որ Երիցավանքը «...ներս ի պարսպին խցկունք թուով միայն 40, մշտնջենաւորք, խարազնազգեստք, լուռք, որք իբր զկանթեղունս մշտավառս և անշէջս յիրաքանչիւր խղի...»[18]:

Թանահատի վանքի մասին Օրբելյանը գրում է. «Յայնմ ժամանակի պայծառանայր... հռչակելի ուխտն Թանահատի վանքից... Եւ էին սահմանավորք, մշտապաշտօնք հեռացեալք յամենայն փափուկ կերակրոց, միայն աշտոն հացիվ և լոկ ջրով վճարէին զպէտս իրեանց...»[19]:

Անապատ է և Ծառանեա վանքը, որը բնութագրվում է որպես «խստակրոն, մեծահռչակ մշտանջենաւորանոցին...»[20]:

Խոտակերաց վանքը (Քարկոփի) X դարի սկզբում կառուցվել է ի մի հավաքելու Վայոց ձորի անապատականներին, որոնք էին «...խոտաճարակ և խարազնազգեստ... և ցրուեալք ընդ քարաժայռս և ընդ խորաձորս... գայլ աուրսն բնակէին

---

[14] *«Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», Վաղարշապատ, 1896, էջ 252:*

[15] *И. А. Орбели.* Надписи Мармашена, Петроград, 1914.

[16] *«Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց», Թիֆլիս, 1911, էջ 338 (այսուհետև՝ Ստ. Օրբելյան):*

[17] *Նույն տեղում:*

[18] *Նույն տեղում, էջ 75:*

[19] Ստ. Օրբելյան, *էջ 160:*

[20] *Նույն տեղում, էջ 200:*

ոմանք ի ծերսյս, ոմանք՝ ի նեղացուն խղի, ոմանք՝ բացօթեայ»[21]: Միայն Տանձափարախն է, որը XVI դարի ձեռագրերում որոշակի «անապատ» է անվանվում[22]: Ստ. Օրբելյանը Թանահատի վեա այն կոչում է «սուրբ առաքինարան»[23]: Սյունիքի բազմաթիվ ուխտերն ու անապատները XIV դարից մինչև XVII դարը ընկած, Հայաստանի համար այնքան աղետալի այս ժամանակաշրջանում ավերվում են, քանդվում, միաբանությունները ցրվում: XVII դարում, երբ նպաստավոր պայմանները հնարավորություն տվեցին վերականգնելու երբեմնի մենաստանները, արդեն իսպառ մոռացվել էին անապատական կարգն ու կանոնադրությունը: Վանքերից ոմանք գործում էին, սակայն անապատներից և ոչ մեկը չէր պահպանվել: Այս պատճառով է, որ չբավարարվելով գրավոր տեղեկություններով, ստիպված նորից դիմեցին անապատական կյանքի ավանդական օրրան հանդիսացող Եգիպտոսին: Սյունիքի և ընդհանրապես Հայաստանի ուշ միջնադարի առաջին, Սյունյաց անապատի (այժմ Հարանց) հիմնադիրները «...զամենայն զկարգս և զսահմանս անապատի և կրօնավորութեան սահմանեցին, զորս ի գրոց ընթերցմանէ գտին և զորս Մովսէս վարդապետն յանապատս Ղիփթոցն (Եգիպտոս) տեսեալ էր և ուսեալ...»[24]:

Ինչն էր անապատի և վանքի տարբերությունը:

Առաքել Դավրիժեցին որոշակի նշում է այն կարևոր տարբերությունը, որ կար միջնադարյան վանքերի և անապատների միջև: Հիմնականը վանքի և անապատի միաբանների տարբեր, տրամագծորեն հակառակ իրավական, սոցիալական վիճակն էր: Վանականը, խոշոր ֆեոդալական տնտեսության՝ վանքի միաբանը, ուներ անձնական տնտեսության իրավունք: Նա սովորաբար ապրում էր վանքին կից բնակավայրում, ուներ տնամերձ հողամաս, բավականին հարուստ տնտեսություն, միաժամանակ օգտվում էր նաև վանքի սեփականությունից: Դավրիժեցին գրում է, որ «...ամենայն վանօրայք ազգիս Հայոց՝ իւրաքանչիւր սեագլուխ ունէր իւր զինչս առանձին, այգի և բուրաստան, փեթակ և տուն, և մարան և համբարանոց և զմուտս ստացուածոց. նաև զմուտս հասարակաց վանիցն մասունս արարեալ՝ յինքեանս բաժանէին»[25]:

Սրան հակառակ՝ անապատականը իսպառ զուրկ էր անձնական սեփականություն ունենալու իրավունքից[26]: Դավրիժեցին, թվարկելով անապատի «կարգ և սահմանքը», նշում է «թե պարտ է անապատաւորաց միայն կալ և ժուժել ի խցի. և թողուլ զկամս իւր և լինիլ հնազանդ և կատարօղ կամաց առաջնորդին, և ոչ լինիլ ումեք ստացուած առանձին, այլ ամենայն ինչ հասարակաց լինիլ»[27]:

---

[21] *Նույն տեղում, էջ 234—235:*

[22] Ալիշան, *Սիսական, Վենետիկ, 1893, էջ 280:*

[23] Ստ. Օրբելյան, *էջ 200:*

[24] *«Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 291:*

[25] *Նույն տեղում, էջ 288:*

[26] *Այսպես էր դրվածքը նաև ուղղափառ եկեղեցու անապատներում՝ «Սկիտներում»:*

[27] *«Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 256:*

Երկրորդ կարևոր տարբերությունը վանականի և անապատականի միանգամայն հակադիր կենցաղը, ապրելակերպն է։

Եթե վանականները կիսաշխարհիկ կյանք էին վարում, անապատականի կյանքն իր խստությամբ հավասարվում էր ճգնավորությանը։ Անապատում հնազանդության օրենքը խիստ էր, կերակուր օրը մի անգամ էր տրվում, գինին և միսը իսպառ արգելված էին, ուտելու ժամանակ պարտադիր էր ընթերցանությունը՝ «ամենեքեան ժողովէին ի սեղանատունն՝ և միահաղոյն նստէին ի սեղան՝ և ուտէին վռելայն, և յորն միանգամ առնուին կերակուր՝ ի բոլոր տարին, և յուտելն զկերակուրն սահմանեցին գիրս ընթեռնուլ, զի որպէս քիմք զհամս ճաշակեն...»[28]։

Եթե վանականները որոշակի ժամերին, ծիսակատարություններին մասնակցելուց հետո, ազատ էին և զբաղվում էին իրենց անձնական գործերով, ապա անապատականները ամբողջ ժամանակը անց էին կացնում աղոթքների և ընթերցանության մեջ։ Վանականները XVII դարում սկսել էին կրոնական համազգեստ հագնել միայն ծիսակատարության ժամանակ, որից դուրս նրանք շրջում էին իբրև աշխարհական[29]։ Անապատականները, ընդհակառակը, պետք է միշտ կրեին իրենց ճգնավորական համազգեստը, որը գործած էր այծի մազից և հագնում էին մերկ մարմնի վրա[30]։

Տեսնենք, թե անապատային կյանքի առանձնահատկություններն ինչպես են արտահայտվում համալիրների ճարտարապետության մեջ։

Առաջին հերթին, ի տարբերություն վանքի, անապատի միաբանները պետք է բնակվեին անապատի ներսում։ Եթե վանքի միաբանը ապրում էր ոչ թե բնակավայրում, այլ վանքի ներսում, ապա նա իր տրամադրության տակ ուներ բավական ընդարձակ, լուսավոր, հաճախ երկհարկանի, պատշգամբով սենյակներ (Տաթևի վանք, Գեղարդ, Ամենափրկիչ վանք և այլն)։ Անապատականը պարտադիր բնակվում էր մենաստանի ներսում, յուրաքանչյուրն առանձին խցում։ Խցերի ձևը և հարմարությունները նույնպես պետք է համապատասխանեին անապատի կանոններին։ Դավրիժեցին նշում է, որ Մեծ անապատը հիմնադրելիս «...շինեցին եկեղեցի և զխուցս ըստ պատշաճի անապատի, և միայնակեցի որպէս ցուցանէ գիրք հարանց վարուց և այլ ճգնաւորաց, նեղ և մթին փոքրագոյն...»[31]։

Խցերը միատեսակ են և ունեն նվազագույն չափեր։ Նկարագրելով Լիմ անապատի միաբանների կենցաղը, Ե. Լալայանը նշում է, որ «..միաբանների խցերը... փոքրիկ, խոնավ և մութ սենյակներ են, ամեն մի միաբանի միայն մի սենյակ է հատկացված, ուր թե քնում է և թե ամբողջ օրը անցկացնում, մահճակալներ բնավ չկան, քնում և նստում են նույնիսկ չհատակած գետնին, փսիաթի վրա...»[32]։

---

[28] *Նույն տեղում, էջ 258։*

[29] Մաղաքիա Արքեպիսկոպոս Օրմանեան, *Ազգապատում, հատ. Բ, Բեյրութ, 1960, էջ 2346։*

[30] *«Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 256—257։*

[31] *Նույն տեղում, էջ 252։*

[32] Ե. Լալայան, *Վասպուրականի նշանավոր վանքերը, Ա պրակ, Թիֆլիս, 1912, էջ 88։*

Սակայն անապատները ունեն մի շատ կարևոր առանձնահատկություն ևս, որով նրանք տարբերվում են վանքերից: Դա այն է, որ անապատները ունեն միայն մեկ պաշտամունքային կառուցվածք[33]:

Մեկ եկեղեցի ունենալը բնորոշ է անապատներին դեռ վաղ միջնադարից սկսած. և Հայաստանի բոլոր անապատների համալիրները, կառուցված տարբեր ժամանակաշրջաններում ու տարբեր պատմական նահանգներում, հաստատում են այս կանոնի պարտադիր բնույթը: Սյունիքի XVII դարի անապատները նույնպես, առանց բացառության, ունեն մեկ պաշտամունքային կառուցվածք: Այս օրինաչափությունն իր որոշակի կնիքն է դրել ուշ միջնադարի համալիրների ընդհանուր հորինվածքների վրա, որոնք կազմակերպված են մեկ դոմինանտի շուրջը:

Մեծ է XVII դարի անապատների դերը ուշ միջնադարի Հայաստանի մշակութային նոր զարթոնքի առաջացման մեջ: Այս գործում ամենակարևորը և առաջնեկը Սյունյաց Մեծ անապատն է (Հարանց անապատը), որից տարածվեց անապատական նոր շարժումը ողջ Հայաստանում: Այն իրավամբ համարվում է «...հայկական վերանորոգութեան նշանավոր ազդակներից մեկը... Սիւնեաց դպրոցին մեկ վերընձիւղումըն...»[34]:

XIV դարից մինչև XVII դարը տևած արհավիրքները հայ ժողովրդին ոչ միայն ֆիզիկական կործանման եզրին կանգնեցրին, այլև ստեղծեցին ողջ մշակույթի, մտավոր կյանքի ոչնչացման ռեալ վտանգ: XVII դարին նախորդող երեք հարյուրամյակում «...առատությամբ թափվող դժբախտություններից ոչ մեկն այնքան ահռելի չէր, որքան այն, որ 1200 տարի գիր և դպրություն պահպանած մի ժողովուրդ դարձել էր անգրագետ»[35]: XVII դարում անգրագետ էր դարձել և հոգևորականությունը, որը միայն ուներ այդ դարերում ուսուցանելու արտոնություն: Ահա այդպիսի ծանր ժամանակաշրջանում է, որ Սյունյաց Մեծ անապատը իր ձեռքն է վերցնում Հայոց աշխարհում մշակութային նոր վերածննդի գործը: Այս ճգնավորական կազմակերպության խոշոր նվաճումն այն էր, որ կրոնական-միստիկական գործունեության հետ մեկտեղ պարտադիր մտցված էր գրքերի ընթերցանությունը, վաղուց մոռացված ձեռագիր գանձերի ուսումնասիրությունը: Սա մեծ գործ էր, որովհետև «...մինչև ցայս վայր տգիտութեամբ խոպանացեալ և կորդացեալ էր ազգս Հայոց, և ոչ միայն ոչ ընթեռնուին, այլ և ոչ զգիրս գիտէին և ոչ զզօրութիւնս գրոց. վասն զի անպիտացեալ էր գիրքն յաչս մարդկան, և իբրև զկոճեղս փայտից անկեալ յանկեան ուրեք լցեալ հողով և մոխրով»[36]:

---

33 Երուանդ վարդապետ Տէր-Մինասեանց, *Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, հատ. առաջին, Էջմիածին, 1908, էջ 281։*

34 Գեորգ-Մեսրոպ, *Պատմութիւն հայ եկեղեցւոյ, հատ Բ, Կ. Պոլիս, 1914, էջ 382։*

35 Լեո, *Հայոց պատմություն, հատ. երրորդ, Երևան, 1946, էջ 279։*

36 *«Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 255։*

Սյունյաց անապատի ամենամեծ ծառայությունն հայ ազգին այն էր, որ նա մեկուսացված մի կազմակերպություն չէր, այլ պատրաստում էր գրասեր, բարեխիղճ գործիչներ, որոնք ցրվում էին ողջ Հայաստանով, հիմնում նոր անապատներ, տարածում գրագիտություն, այն պարտադիր դարձնելով ամենուրեք:

Սյունյաց դպրոցն իր ճյուղավորումներն ունեցավ Հայաստանի ամենատարբեր մասերում: Այս անապատից դուրս եկած լուսավորիչները հիմնադրեցին Լիմի, Սևանի, Տանձափարախի, Չարեքագետի, Նոր Ջուղայի, Երևանի և այլ բազմաթիվ անապատներ, որոնցից յուրաքանչյուրը դարձավ այդ վայրի մշակութային կենտրոնը:

Սյունյաց Մեծ անապատը ինքը, իբրև կրթական-մշակութային կենտրոն և դպրոց, երկար չհարատևեց՝ հիսուն տարուց էլ պակաս: Նա սկիզբ դրեց, իսկ նրա սկսած գործը շարունակվում էր և այն ժամանակ, երբ Սյունյաց անապատն այլևս գոյություն չուներ: «Գրական-կրթական իդեալներ պաշտող այդ հիմնարկությունը... ներկայանում է իբրև նախատիպ այն վանական հիմնարկության, որ հարյուր տարի հետո հաստատեց Մխիթար Սեբաստացին Վենետիկի կղզիներից մեկի վրա»[37]:

---

[37] Լեո, *Հայկական տպագրութիւն*, *Թիֆլիս*, *1904*, *էջ 155*:

## Գլուխ առաջին

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԱՆՍԱՄԲԼՆԵՐԸ

*Միջնադարյան Հայաստանը հարուստ է բազմաթիվ ճարտարապետական անսամբլներով։ X—XIV դարերում կառուցված բոլոր վանքերը, բերդերն ու ամրոցները անսամբլային ճարտարապետության մի-մի հիանալի նմուշներ են, որոնք այժմ էլ հիացնում են դիտողին։ Այդ ժամանակաշրջանում են ստեղծվել և իրենց ավարտուն ճարտարապետական կերպարը ստացել այնպիսի նշանավոր համալիրներ, ինչպիսին են Հաղարծինը, Գոշավանքը, Մակարավանքը, Հոռոմոսը, Մարմաշենը, Խծկոնքը, Սանահինը, Հաղպատը և շատ ուրիշներ։ Այս հուշարձանախմբերը հայ ճարտարապետության IV—VII դարերի դասական շրջանի նվաճումների զարգացման նոր էտապի արդյունք են։ X—XIV դարերում մշակվեցին արտահայտչականության նոր միջոցներ՝ հուշարձանների պատերը հարստացվեցին պլաստիկ միջոցներով, մեծ դերստացավ դեկորը, ստեղծվեցին ճարտարապետական նոր ձևեր ու կոնստրուկցիաներ։*

*Առանձին կառուցվածքների և ամբողջ անսամբլների հորինվածքներում գերիշխող դարձավ ուղղաձիգության գաղափարը, վերասլաց համաչափություններն իրենց արտահայտությունը գտան թե՛ դրսում և թե՛ հուշարձանների ինտերյերում։*

*X—XIV դարերի անսամբլներն աչքի են ընկնում ճարտարապետության և բնության ներդաշնակությամբ։ Միջնադարյան անսամբլները կառուցված են ամենաբազմազան տեղերում, սակայն, լինեն դրանք տեղադրված լեռներում, թե հարթավայրերում, լճերի ափին, թե խիտ անտառի մեջ, ամայի տեղերում, թե բնակավայրերի կենտրոնում, երբեք հակասության մեջ չեն գտնվում շրջակա բնապատկերի և տեղանքի հետ։ Սա միջնադարյան Հայաստանի անսամբլային ճարտարապետության ամենակարևոր և հատկանշական գիծն է, որը կարմիր թելով անցնում է հայ ճարտարապետության զարգացման ողջ պատմության միջով՝ սկզբնավորման շրջանից մինչև ուշ միջնադար։*

Մյուս կարևոր բնորոշ գիծը ճարտարապետական անսամբլների գեղարվեստական-արտահայտչական միասնությունն է, ողջ անսամբլի տարածական լուծման ներդաշնակությունը։ Առանց բացառության՝ բոլոր անսամբլները ձևավորվել են երկարատև ժամանակամիջոցում՝ մի քանի դարի ընթացքում և բաղկացած են ամենատարբեր տեսակի ու չափի կառուցվածքներից (եկեղեցիներ, գավիթներ, զանգակատներ, սեղանատներ, գրատներ, պաշտպանական շինություններ)։ Երկարատև ժամանակի ընթացքում փոխվել են մի քանի սերնդի ճարտարապետներ, մեկենաս-կառուցողներ, փոխվել է ճաշակը, ճարտարապետության այս կամ այն հարցի մեկնաբանումը։ Թվում է թե այս բոլորը բացասաբար պետք է անդրադառնային անսամբլի առանձին կառուցվածքների միջև եղած փոխադարձ կապի, ներդաշնակության վրա։ Սակայն արդյունքը միանգամայն հակառակն է՝ բոլոր համալիրներն ունեն միասնականություն, ներդաշնակ ընդհանուր ճարտարապետական կերպար։ Միջնադարյան հայ ճարտարապետների վարպետությունը տվյալ հարցում արտահայտվել է այն բանում, որ նրանք ճիշտ են գտել համալիրի ճարտարապետական մասշտաբը՝ բոլոր կառուցվածքները համաչափ են մարդուն և շրջակա բնությանը, ծավալները ցլատված են միասնական ռիթմով և մոդուլով և, վերջապես, պահպանված է համալիրի տարածական հորինվածքի ամբողջականությունը։ Միջնադարում յուրաքանչյուր նոր շենք (ըստ տիպի և ըստ ժամանակի) կառուցելիս ձգտել են չհակադրել արդեն գոյություն ունեցողին, գերիշխել չափերով կամ դեկորով, չափազանց զգույշ են եղել մասշտաբի հարցում՝ կառուցվածքները միմյանցից մեծ են կամ փոքր, սակայն համաչափություններով նրանք համահնչուն են, ոչ թե հակադրվում են, այլ լրացնում են միմյանց։ Այս բանին մեծապես նպաստել է և կառուցվածքների փոխադարձ ճիշտ դիրքը, յուրաքանչյուր նոր շինության, կարելի է ասել, միակ գտնված տեղը և հեռավորությունը մյուսների նկատմամբ, որով չի խախտվել անսամբլի միասնությունը։

X—XIV դարերի համալիրների համար կարևոր է և ուրվագծի հարցը։ Անսամբլի ընդհանուր արտահայտչականության համար ուրվագիծը շատ մեծ դեր է խաղում։ Ուրվագծով է, որ լինելով բնապատկերի օրգանական մի մասը, ճարտարապետական անսամբլը միաժամանակ և առանձնանում է նրանից, յուրաքանչյուր համալիր ստանում է իր ուրույն դեմքը, ձեռք բերում ողջ ճարտարապետական կերպարի անհատականությունը։ Այդ ժամանակաշրջանի անսամբլների համար երրորդ բնորոշ գիծն այն է, որ նրանց ուրվագծերում գերիշխողը վերասլաց շեշտերն են, ուղղաձիգ համաչափություններով ծավալները, որոնք և կազմակերպում են յուրաքանչյուր ուրվագիծը։

Իրոք, X—XIV դարերի մենաստաններից չկա որևէ մեկը, որը ուղղաձիգ շեշտ չունենա։ Այդ համալիրների պաշտամունքային կառուցվածքների ճըն-

շող մեծամասնությունը գմբեթավոր են, գմբեթ կամ ռոտոնդա ունեն զանգակատները, գավիթները, սեղանատները, գրատները։ Տարբեր մեծության, բարձրության և դեկորատիվ մշակումով այս ուղղաձիգ ծավալներն են, որ տարածականորեն համախմբում են համալիրի բոլոր կառուցվածքները։

X—XIV դարերի անսամբլների ճարտարապետության համար բնորոշ է հորինվածքների ասիմետրիկ լուծումը, որը բխում է քաղաքաշինական և ֆունկցիոնալ կոնկրետ պահանջներից, ինչպես նաև տեղանքի և ընդհանրապես շրջապատի պայմաններից։

Հայ ճարտարապետության հաջորդ շրջանում՝ XVII—XVIII դարերում պահպանվեցին և շարունակվեցին նախորդ շրջանների ավանդները։ Ուշ միջնադարի անսամբլները նույնպես համահնչուն են տեղանքին, բնությանը. ունեն միասնական ուրվագիծ՝ ուղղաձիգ շեշտերով։ Այսպիսիք են Խոր-Վիրապը Արարատյան դաշտում, Ագուլիսի ս. Թովմայի վանքը, Աստապատի Կարմիր վանքը, ս. Ստեփանոս նախավկայի վանքը՝ Ատրպատականում, Լիմ անապատը Վասպուրականում։

Սակայն Սյունիքի XVII դարի մենաստանները ճարտարապետությամբ զգալի տարբերվում են թե Հայաստանի X—XIV դարերի, թե իրեն ժամանակակից այլ շրջանների համալիրներից։ Սյունիքի անսամբլների ճնշող մեծամասնության պաշտամունքային կառուցվածքները բազիլիկաներ են, բացակայում են ուղղաձիգ ծավալները, ուշադրություն չի դարձված անսամբլի ընդհանուր ուրվագծի վրա։ Հետաքրքրականն այն է, որ Սյունիքի անսամբլների մեծ մասը ոչ թե կապվում են բնությանը, այլ հակադրվում են՝ բարձր և խուլ պարիսպներով լրիվ անջատվում են նրանից, չկա ներդաշնակություն բնապատկերի և անսամբլի ճարտարապետության միջև։ Տաթևի Մեծ անապատի, Կնեվանքի, Շատին վանքի և ուրիշների ճարտարապետական կերպարը բացահայտվում է միայն համալիրի ներսում՝ դրսից նրանք անթափանց պատնեշներով կտրված են շրջապատից, իսկ անսամբլային լուծում ունի միայն մենաստանների ներքին տարածությունը։ Այս տեսակետից Սյունիքի համալիրների ուսումնասիրությունը առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում։

## ՏԱԹԵՎԻ ՄԵԾ ԱՆԱՊԱՏ

Ուշ միջնադարի հայ ճարտարապետության ամենաարժեքավոր և հետաքրքրական անսամբլներից է Տաթևի Մեծ անապատի համակառույցը։ Գտնըվելով Տաթևի վանքի մոտ, Մեծ անապատի անսամբլը մնացել է հռչակավոր հարևանի փառքի ստվերում, կարոտ ուսումնասիրության ու արժանի գնահատականի։ Անուշադրությունը դեպի Մեծ անապատի ճարտարապետությունը

նաև այն կանխակալ կարծիքի արդյունքն է, որ XVII—XVIII դարերում հայ ճարտարապետությունը իբր չունի արժեքավոր հուշարձաններ՝ արժանի ուսումնասիրության։

Տաթևի Մեծ անապատի համակառույցը տեղադրված է Որոտանի անդընդախոր ձորում, Տաթևի սարի ստորոտում։ Մոտեցումը դեպի Անապատը հնարավոր է Սատանայի կամրջի կողմից, որից դեպի արևելք Որոտանի նեղ կիրճը զգալի լայնանում է և գետի աջ ափին կազմում մի թեքադիր փոքրիկ հովիտ, ծածկված խիտ անտառակով և փարթամ բուսականությամբ։ Ահա այս գեղեցիկ վայրում է կառուցված Մեծ անապատի պարսպապատ անսամբլը, համարյա քողարկված շրջապատի հսկա ընկուզենիներով ու թթենիներով։ Տեղանքն ունի թեթևակի թեքություն դեպի արևելք՝ դեպի գետը և միանգամայն հարմար է խոշոր համակառույցի տեղադրության համար։ Անկասկած տվյալ տեղում անապատի հիմնադրումը թելադրված էր նաև սառնորակ աղբյուրի առկայությամբ, որը կառուցման ընթացքում թողել են բակի միջում։

Տեղանքի ոչ մեծ թեքությունը հնարավորություն է տվել անսամբլն իրականացնել կանոնավոր հատակագծով՝ ողջ հորինվածքը կազմված է ուղղանկյուն պարսպապատերով պարփակված հիմնական մասից և նրան հարավից կից սեղանաձև հատակագծով օժանդակ մասից։

Անսամբլի ուղղանկյուն մասը շրջապատված է բարձր, ուղղաձիգ պարիսպներով, որոնց ներսի կողմից ողջ պարագծով կառուցված են անապատի բնակելի և օժանդակ սենյակները։

Հյուսիսային, արևելյան և արևմտյան պարիսպներին կից են միաբանության խցերը, իսկ հարավայինին՝ սեղանատունը, խոհանոցը, մթերանոցը։ Համալիրի չորս անկյուններում, պարսպապատերի վերին մասում պահպանվել են ուղղանկյուն աշտարակների հետքերը։

Անսամբլի հարավ-արևմտյան մասում, առանձին կանգնած, բարձրանում է Անապատի հիմնական կառուցվածքը՝ ս. Աստվածածնի եկեղեցին։ Սա եռանավ բազիլիկա է, որին արևմուտքից կից է գավիթ-սրահը, իսկ հյուսիսից՝ փոքրիկ գմբեթածածկ դամբարանը։ Բազիլիկայից արևելք գտնվում են վանքի աղբյուրը և այժմ կիսաքանդ տնտեսական սենյակների շարքը։ Անապատի հյուսիս-արևելյան մասում կառուցված է բնակելի սենյակների մի խումբ՝ Γ-աձև ընդհանուր հատակագծով։ Համալիրի օժանդակ մասում գտնվում են հյուրատունը, ախոռը և սրան կից շինությունները, խմբավորված եռանկյունաձև բակի շուրջը։ Անապատն ունի երկու մուտք՝ հարավային և հյուսիսային պարիսպներում (վերջինն արդեն XVIII դարում փակվել է շարվածքով)։

Տաթևի Մեծ անապատը հիմնականում կառուցվել է XVII դարի երկրորդ կեսում և որոշ շինություններով լրացվել XVIII դարում։ Անապատի ստեղծ-

ման ավիթը նույն ձորում, դեպի հարավ գտնվող Հարանց անապատի կործանումն էր երկրաշարժից, որից շատ չանցած Հակոբ կաթողիկոսը որոշում է նոր մենաստան կառուցել և այստեղ տեղափոխել նախկին անապատի միաբանությունը։ Հարանց անապատը քանդվել է 1658 թ. ապրիլին։ Ըստ Զաքարիա Ագուլեցու, միաբանությունը տեղափոխվել է նոր վայրը 1660 թ. և սկսել Տաթևի անապատի շինարարությունը՝ «Թվին ՌՃԺԷ (1668) յունիսի Զ-ումն գնացինք Տաթեւու անապատն։ Սորայ հայրն է Առիստակէս վարդապետն։ Սորայ ունէր Հ կրօնավոր մարդ։ Այս անապատիս եկեղեցին դէռ ևս կիսակատար էր։ Քանզի առաջ ուրիշ տեղ ին բնակեալ... տեղն խախտվեցավ, փլաւ... եկին այս տէղս, նոր ըսկիզըն արարին, յիսար, խուց, եկեղեցին շինեցին։ Այս ը տարի այ, որ եկել ան այս տէղս»[1]։

Եկեղեցու արևմտյան դռան վերևում փորագրված է ՌՃԺԲ (1663) թվականը, որը պետք է համարել բազիլիկայի հիմնադրման տարեթիվը։ Ագուլեցին նշում է եկեղեցու հետ միաժամանակ սկսված պարիսպների և բնակելի խցերի շինարարությունը 1660—1668 թվականներից։ Այս վերաբերում է ուղղանկյուն մասի պարիսպներին և նրան կից խցերի շարքին։ Սենյակների Г-աձև խումբը կառուցվել է մոտ երկու տասնամյակ ուշ՝ ներսում, պատին կա փորագրված կառուցման թվականը՝ ՌՃԼԱ (1682)։

Եկեղեցուն կից մատուռ-դամբարանում հավանաբար թաղված է Անապատի հիմնադիր Առիստակես վարդապետը։ Այդ դեպքում դամբարանը պետք է կառուցված լինի 1670-ական թվականներին, որովհետև Առիստակեսը վախճանվել է Ագուլիսում 1669 թ. դեկտեմբերին և թաղվել «...իւր շինած անապատն»[2]։

XVII դարի վերջում Անապատում բնակելի խցեր է կառուցել Տաթևի վանքի առաջնորդ Հովասափ Աղուբրձեցին[3]։ Սրանք սեղանատանը հյուսիսից կից կառուցված խցերն են, որոնց հետագա ավելացված լինելը պարզորոշ երևում է տեղում։ XVIII դարի առաջին կեսում Տաթևի վանքի Ներսես եպիսկոպոսը «...արարեալ շինութիւնս սրբոյ աթոռոյս և Մեծի անապատին...»[4]։ Մեր կարծիքով սա վերաբերում է Անապատի օժանդակ շինությունների խմբին։ Այդ ժամանակաշրջանում է կառուցվել նաև եկեղեցու գավիթ-սրահը։ Գավթի հյուսիսային որմնամույթի խարիսխի վրա կա արձանագրված կառուցման թվականը՝ ՌՃՂԲ (1743)։ Իսկ արևմտյան պատին, դրսի կողմից փորագրված արձանագրությունից հայտնի է դառնում և կառուցման մեկենասը՝ «Յիշա-

---

[1] «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», Երևան, 1938, էջ 75—76։
[2] Նույն տեղում, էջ 87։
[3] Ստ. Օրբելյան, էջ 528։
[4] Նույն տեղում, էջ 529—530։

տակ է Մելիք Եկանին, որ ե թուման տուաւ գաւիթն շինելոյն որ գլուխն սրբատան քարանց շինեցինք»[5]։

Այս արձանագրությունից պարզվում է մի այլ մանրամասնություն ևս՝ եկեղեցու տանիքի քարե սալերով ծածկի կառուցման ժամանակը (1743 թ.)։

Անապատի արևմտյան պարսպի վերին մասում, դրսից հագցված շինարարական արձանագրությունից երևում է, որ պարսպապատերի վերին մասը, անկյունների վերնահարկերի հետ միասին, կառուցել է 1711 թ. Ղուկաս վարդապետը։ Տեղում շարվածքից որոշակի երևում է, որ պարիսպները XVIII դարի սկզբում ավելացվել են խցերի տանիքներից սկսած։

Տաթևի Մեծ անապատն առանձին աղբյուրներում տարբեր անվանում ունի և հաճախ այն շփոթվել է Հալիձորի Հարանց անապատի հետ։ Այս երևույթն արդյունք է այն բանի, որ Հարանց անապատը մինչև քանդվելը և միաբանության տեղափոխումը կոչվել է «Մեծ անապատ», կամ «Տաթևի անապատ»։ Իսկ նորը նույնպես «...ըստ առաջնոյն կոչեցավ Մեծ Անապատ, իբր գլուխ և առաջին ամենայն անապատից...»[6]։ Ագուլեցին երկու մենաստաններն էլ անվանում է «Տաթևի անապատ»[7]։ Տարբերելու համար հետագայում հինը կոչվել է սոսկ «Հարանց անապատ», իսկ «Մեծ անապատ», «Տաթևի անապատ» անունները վերագրվել են միայն նոր մենաստանին։ Այժմ ընդունված է Տաթևի Մեծ անապատ անվանումը, որը և օգտագործում ենք տվյալ աշխատությունում։

Գրականության մեջ Տաթևի Մեծ անապատի վերաբերյալ թյուրիմացություններ հանդիպում են ոչ միայն անվանման հետ կապված։ Սխալ տեղեկություններ են բերվում նրա առանձին կառուցվածքների հորինվածքների մասին։ Այսպես, Ջալալյանը և Լալայանը նկարագրելով Անապատը նշում են, որ եկեղեցին կառուցված է վեցասյուն։ Եկեղեցին՝ եռանավ բազիլիկան ունի չորս մույթ՝ երկու զույգ։ Մույթերի քանակի հարցը կարևոր է, որովհետև ի տարբերություն V—VI դարի բազմամույթ եռանավ բազիլիկաների, ուշ միջնադարում Հայաստանում համանման կառուցվածքները ամենաշատը չորս մույթ ունեն։ Այս սխալը, ցավոք, արմատացել է նաև ժամանակակից մասնագիտական գրականության մեջ ևս[8]։

Տաթևի Մեծ անապատի գլխավոր հատակագծում պարզորոշ երևում է ողջ անսամբլի բաժանումն ըստ կառուցվածքների առանձին խմբերի ֆունկցիոնալ նշանակության։ Արտադրական, տնտեսական նշանակություն ունեցող շինությունների առանձնացումը և միաժամանակ համակառույցներին կից

5 Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 2, Երևան, 1960, էջ 35։

6 Ալիշան, Սիսական, էջ 250։

7 «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 39, 75։

8 „Всеобщая история архитектуры в 12 томах", том. 3, Л.-М., 1966, стр. 288·




Նկ. 1. Տաթևի Մեծ անապատ, գլխավոր հատակագիծը։

տեղադրելը հատուկ է Սյունիքի XVII դարի ճարտարապետությանը՝ նման սկզբունք կիրառված է Շատին վանքում (արտադրական, տնտեսական կառուցվածքները պարիսպներից դուրս են և կից վերջիններիս), Տաթևի վանքում (տերիտորիայից դուրս է ոչ միայն ձիթահանքը, այլ նույնիսկ բաղնիքը)։ Տնտեսական շինությունների տեղադրումը Տաթևի Մեծ անապատի մուտքի մոտ բավականին հարմար է՝ ոչ միայն անմիջական կապ է ստեղծվում համակառույցի երկու մասերի միջև, այլև ստացվում է ընդհանուր բակ դարբասի դիմաց։ Սա կարևոր է և պաշտպանական տեսակետից՝ բարձր և ամուր պարիսպներով այս բակը ներթափանցելուց հետո միայն կարելի է մոտենալ Անապատի գլխավոր մուտքին։

Ֆունկցիոնալ զոնավորման է ենթարկված ոչ միայն համալիրն ամբողջովին վերցրած, այլև նրա հիմնական մասը ևս։ Այստեղ կառուցվածքները նույնպես խմբավորված են ըստ նշանակության՝ տնտեսական և կոմունալ շինությունները գտնվում են հարավային մուտքին կից և անմիջական կապ ունեն դրսի հետ, իսկ բնակելի սենյակները խմբավորված են համակառույցի խորքում, անջատվելով առաջին խմբից և մուտքից՝ բազիլիկայի մեծ ծավալով։ Տվյալ տեղադրությունը շատ հարմար է կողմնորոշման տեսակետից՝ բնակելի սենյակները նայում են դեպի արևելք, հարավ և արևմուտք, իսկ տնտեսական կառուցվածքները՝ դեպի հյուսիս։

Հաջող է և շարժման ֆունկցիոնալ գրաֆիկը։ Հյուրերի, ուխտավորների գրաստները և Անապատի սեփականությունը հանդիսացող անասունները չեն մտնում համալիրի տերիտորիան, այլ հարավային կառուցվածքի բակում թեքվում են մի կողմ, չխանգարելով ընդհանուր շարժմանը և տեղաբաշխվում համապատասխան շինություններում։

Մտնելով հարավային դարբասով, ուխտավորը հայտնվում է այցելության հիմնական նպատակի՝ եկեղեցու դռան առջև։ Դեպի աջ ձգվում է երկարավուն բակ-միջանցքը, որը Անապատի մուտքը կապում է սեղանատան, խոհանոցի, մթերանոցի հետ։ Եկեղեցու ու համալիրի մուտքերի այս մոտիկությունը, վերջինիս կարճ և հարմար կապը սեղանատան և խոհանոցի հետ ստեղծում է շարժման առավել նպատակահարմար գրաֆիկ՝ ուխտավորները եկեղեցի մտնելիս կամ սեղանատանը հյուրասիրվելիս չեն հատում Անապատի տերիտորիան, այլ ամենակարճ ճանապարհով ընկնում են այդ տեղերը (նույնը վերաբերում է և խոհանոց մթերք բերողներին)։

Անապատի միաբանության բնակելի սենյակների կապը եկեղեցու սեղանատան հետ իրականացվում է պարիսպներին զուգահեռ, Π-աձև բակի միջոցով, որն ավելի շուտ փողոցի է նման և վերջինիս դերն է կատարում։ Իսկ Γ-աձև մասնաշենքով և եկեղեցու հյուսիսային ճակատով ստացվում է մի երկրորդ՝ ներքին բակ, որը մեկուսացված է շարժման ուղղություններից

և ծառայում է լոկ միաբանության հանգստի համար։ Համալիրի հիմնական ուղղանկյուն մասի կառուցապատման խտության տոկոսը շատ բարձր է՝ մոտ 50 տոկոս։ Սակայն կոմպակտ, քառակուսուն մոտ հատակագիծը, առանձին շինությունների և խմբերի նպատակահարմար տեղադրությունը գլխավոր հատակագծում տվել է այն արդյունքը, որ չկա որևէ խճողում, նեղվածք։ Ընդհակառակը, ստացվել են բավարար ազատ տարածություններ՝ կառուցվածքների առանձին խմբերի միջև հաղորդակցության հարմար կապ ստեղծելու և ներքին ընդարձակ բակեր ստանալու համար։

Անապատի գլխավոր հատակագծում բնակելի սենյակների պարագծով կառուցումն ունի տնտեսական և կոնստրուկտիվ առավելություններ։ Պարիսպները դառնում են բնակելի խցերի (սեղանատան և խոհանոցի համար ևս) պատերից մեկը՝ ստացվում է շարվածքի զգալի տնտեսում, իսկ իրենց հերթին, խցերի ընդերկայնական պատերը նեցուկ են ծառայում մոտ 70 մ երկարություն և 6—8 մ բարձրություն ունեցող պարիսպների համար, տալով նրանց սեյսմիկ տեսակետից անհրաժեշտ կոշտություն և կայունություն։

Հետաքրքրական է Տաթևի Մեծ անապատի անսամբլի ընդհանուր գեղարվեստական արտահայտչականության խնդիրը։

Անապատը՝ XVII դարի մենաստաններին բնորոշ բարձր և խուլ պարիսպներով, ամբողջովին անջատվում է արտաքին աշխարհից։ Նրա ճարտարապետությունն ինքնամփոփ է՝ այն դրսից, պարիսպների ետևից նույնիսկ չի երևում, և համակառույցի անսամբլային լուծման արժանիքները բացահայտվում են միայն ներսում՝ ներքին տարածության կազմակերպման մեջ։ Մենաստանի մեկուսացումը շրջապատից ավելի է շեշտվում պարսպապատերի խուլ լինելով՝ չկա ոչ մի բացվածք դեպի դուրս, և Անապատի ուղղանկյուն հորինվածքը թողնում է քարե արկղի ծանր և մռայլ տպավորություն։ Սա բխում է առաջին հերթին անապատների կրոնա-դավանաբանական առանձնահատկություններից՝ մենաստան, սահեղծված առանձնանալու, ճգնելու և ապաշխարելու համար, հեռու այն ամենից, ինչը կապում է աշխարհիկ կյանքին, նույնիսկ բնությանը։ Սակայն պետք է նշել, որ նման հորինվածքը ունի երկրորդ, ոչ պակաս կարևոր սկզբնապատճառ, որն արդարացնում է նրան ֆունկցիոնալ տեսակետից։ Դա այն է, որ XVII դարի մենաստանները միաժամանակ պաշտպանական կառուցվածքներ էին՝ նրանք և ամրոցների դեր էին խաղում, պատսպարելով նաև մերձակայքի բնակչությանը թշնամիների և առանձին ավազակախմբերի ասպատակությունների ժամանակ, որոնք այնքան հաճախակի էին այդ դարում։

Սակայն այլ է տեսքը անսամբլի ներսում՝ այն դրսի միանգամայն հակապատկերն է։ Անապատի ներքին տարածությունը կազմակերպելիս ձգտել են նրան հնարավորին չափ արտահայտչականություն տալ, խիստ հորինվածքին որոշ գունագեղություն հաղորդել։ Այս առումով հետաքրքրական է

նորից քննել շարժման գրաֆիկը, բայց արդեն դիտողական տեսանկյունից։

Մտնելով հարավային դարբասով, այցելուն սկզբում ընկնում է օժանդակ կառույցվածքների խմբի բակը։ Սա նույնպես շրջապատված է բարձր և խուլ պարսպապատերով, սակայն արդեն զգացվում է անսամբլի հորինվածքի խստության մեղմացումը, որը ստացվում է դեպի աջ ձգվող օժանդակ սենյակների կամարակապ մուտքերով և դիմացի պատում եղած լուսամուտների բացվածքներով։

Երկարավուն և թաղակապ միջանցքով մտնելով համակառույցի ներսը, մեր առջև միանգամից չի բացվում անսամբլի ողջ ներքին տարածությունը, այլ դա կատարվում է աստիճանաբար։

Առաջին հերթին, դիմացից, անկյան տակ, երևում է եկեղեցու մուտքը՝ գավիթ-սրահը, ձախից՝ բնակելի սենյակների արևմտյան շարքը, իսկ դեպի աջ ձգվում են սեղանատան, խոհանոցի երկարավուն ծավալները։ Սակայն միատեսակ խցերի արևմտյան շարքը, որը կարող էր տաղտկալի տպավորություն թողնել, լրիվ չի երևում՝ այն մեջտեղում կրճատվում է կից կառուցված երկու այլ սենյակների ծավալներով։ Աջ կողմի անցումով, որը գտնվում է եկեղեցու հարավային պատի և տնտեսական սենյակների միջև, մտնում ենք արտաքին՝ Π-աձև բակը և նրանով՝ անսամբլի խորքը։ Այս փողոց-միջանցքի տեսքը խիստ է՝ մի կողմից այն եզերված է բնակելի սենյակների ներքին խմբի խուլ պատերով, մյուս կողմից՝ խցերի արևելյան և արևմտյան շարքերով։

Սակայն անսամբլի խստաշունչ հորինվածքի միջում կա մի անկյուն, առանձնացված շարժման ուղղություններից և անմատչելի կողմնակի այցելուների համար։ Դա մոտավորապես քառակուսի հատակագծով ներքին բակն է, որը շրջապատված է երեք կողմից միաբանության սենյակներով, իսկ չորրորդ կողմից՝ եկեղեցու հյուսիսային պատով։ Դեպի բակն են բացվում բնակելի սենյակների Γ-աձև խմբի զույգ թևերի կամարակապ նախասրահները, որոնք բակում աճող սաղարթախիտ պտղատու ծառերի հետ ինտիմ բնույթ են հաղորդում այս ոչ մեծ տարածությանը, այն դարձնելով մի զողտրիկ անկյուն։ Վերջինիս գունագեղ և ուրախ տեսքը լրացվում է նաև դամբարանի տանիքին բարձրացող փոքրիկ ռոտոնդայի ծավալով, որի նրբաոլաց սյուները և սրածայր վեղարն աշխուժացնում են բակի ներքին տարածությունը։

Ինչպես տեսանք, Տաթևի Մեծ անապատի համակառույցը լրիվ անջատված է շրջապատից և նրա ճարտարապետությունը դրսից ընկալելու հնարավորություն չկա։ Սակայն Սյունյաց աշխարհի բնությունը ստեղծել է մի այնպիսի կետ, որից կարելի է ընդգրկել ողջ անսամբլը և նրա շրջապատի համայնապատկերը։ Դա Որոտանի անդնդախոր ձորի հանդիպակաց լանջն

*է, որտեղից օձագալար անցնում է դեպի Տաթևի վանքը տանող ճանապարհը։ Այս գլխապտույտ բարձրությունից երևում է ողջ ձորը և նրա խորքում, կարծես գծագրված, Անապատի հորինվածքը։*

*Տաթևի Մեծ անապատն ինքնատիպ գլխավոր հատակագծով, ողջ հորինվածքի նշված հետաքրքրական առանձնահատկություններով իր ուրույն և արժանի տեղն է գրավում հայ ճարտարապետության միջնադարյան անսամբլների շարքում։*

ՇԱՏԻՆ ՎԱՆՔ

*Սյունիքի XVII դարի մյուս ուշագրավ և արժեքավոր համալիրը՝ Շատին վանքը գտնվում է համանուն գյուղից մոտ 4 կմ դեպի արևելք, Եղեգիսի ձախ ափին բարձրացող սարի լանջին, գագաթից քիչ ցածր։*

*Համալիրը շրջափակված է համարյա ուղղանկյուն հատակագիծ ունեցող պարիսպներով։ Մեջտեղում, առանձին կանգնած, բարձրանում է եկեղեցին՝ եռանավ բազիլիկա, որի արևմտյան կողմում պահպանվել են գավթի փլատակները։ Հարավային, բուրգերով ուժեղացված պարիսպներին կից են երկհարկ շինություններ, որոնց վերին հարկը կիսաքանդ է։ Արևելյան, հյուսիսային և արևմտյան պարիսպներին ներսից կից կան քանդված և հողածածկ կառուցվածքների հետքեր, որոնց նշանակությունը և հորինվածքն այժմ դժվար է որոշել։ Մուտքերը երկուսն են՝ արևմտյան և արևելյան կողմերում։ Արևմուտքից, վանքի պարիսպներին դրսից կից, կան ձիթհանի, ախոռների, տնտեսական շենքերի ավերակներ։ Արևելյան կողմում, մի փոքր հեռու՝ ջրաղացի քանդված շենքն է։*

*Շատին վանքի ներկա համալիրը կառուցված է շատ ավելի վաղ գոյություն ունեցած մենաստանի տեղում, որը, հավանաբար, նույնպես Շատին անունն է ունեցել։ Ըստ Օրբելյանի՝ նախկին վանքը կառուցվել է 929 թ.։ «Ի ժամանակս թագաւորութեանն Հայոց Աբլ-Աբասայ որդւոյ Սմբատայ թագաւորի, և ի տէրութեանն Սիւնեաց Սմբատայ և եղբարց իւրոց և որդւոց, ի թուականութեանն Հայոց 378, երանելի եպիսկոպոսն Սիւնեաց պատահեալ ի տեղի մի յճղեգաց ձորի ի վերայ Ոստին գեղջն և յոյժ հիացեալ ընդ նա վասն առաւել գեղեցկութեան վայրացն և յոյժ զառանց և ապահով գոլոյն և շարժեալ տեսչութենէն սկիզբն առնէ շինուածոյ հրամանաւ Սմբատայ իշխանի և Սոփիայ կնոջ նորա, և Սահակայ՝ եղբօր նորին։ Եւ կանգնէ ի նման տուն Աստուծոյ ի քերածոյ վիմաց, և զանազան երանգօք զարդարէ զնա ի նկարս գեղեցիկս, և կոչէ զՍմբատ զՍահակ ի նաւակատիս տաճարին»*[9]*։*

*Վանքի տեղագրության նկարագրությունը համընկնում է Շատինի հետ՝*

[9] Ստ. Օրբելյան, *էջ 258*։

Ոստին գյուղը (այժմ Հոստուն) գտնվում է ժամանակակից Շատին գյուղի մոտ։

Շատին վանքի գոյության առաջին շրջանից (X—XIV դդ.) պահպանվել են բազմաթիվ խաչքարեր, արձանագրություններ և նրանց բեկորներ, որոնք հետագայում դրվել են վերակառուցված եկեղեցու պատերի մեջ, օգտագործվել նրանց շարվածքում։ Մինչև XVII դարը պատմիչների մոտ չկա ոչ մի հիշատակություն Շատին վանքի վերաբերյալ։ Հավանաբար, XIV դարից հետո վանքն անկում է ապրել, որովհետև XVII դարի կեսերին, նույն տեղում, փաստորեն նոր վանք են կառուցել և հին կառուցվածքներից ոչինչ չի պահպանվել։

Եկեղեցին կառուցվել է 1655 թ. և կոչվել է ս. Սիոն։ Նրա արևմտյան մուտքի բարավորի վրա սև ներկով դրսից գրված է եղել. «Շինեցաւ եկեղեցիս թվին ՌՃԴ»[10]։ Այս մուտքի առաջ գավիթ է կառուցվել, որը քանդվելուց հետո անձրևները ջնջել են արձանագրությունը։

Կառուցման մեկենասը եղել է ջուղայեցի Հակոբ վաճառականը, որի անունով մարմարե փոքրիկ խաչքար է հագցված ս. Սիոնի արևմտյան դռան վերևում՝ «Սբ. խաչս յիշատակ է մահդասի Յակոբ Ջուղայեցու եւ ծնողացն Աւաքին, Եղիսաբէթին թվ. ՌՃԵ» (1656)։ Պարիսպները և նրանց կից բնակելի սենյակները, հավանաբար, ժամանակակից են եկեղեցուն։ Պարիսպներից դուրս գտնվող գմփի և ախոռի կառուցման ժամանակը հայտնի է դառնում հարավային պատի վրա գտնվող արձանագրությունից՝ «Շնորհօքն Քի ի Հայկազեան թվի ՌՃՂԸ (1749) երորդի, ես առաջնորդ ՍԲ ուխտիս Անտոն վարդապետս նորոգեցի զտեղիք անբանից, վայելումն միաբանից»[11]։

Վանքն ունեցել է մեծ սեղանատուն, որը նույնպես չի պահպանվել[12]։

Շատին վանքը եղել է ուշ միջնադարի Սյունիքի կրոնական խոշոր կենտրոններից մեկը։ Նրա տնտեսական հզորության ապացույցներն են մեծաքանակ արտադրական, օժանդակ շինությունները և այն փաստը, որ վանքը կառուցել է նաև ինժեներական կառուցվածքներ՝ ջրանցք, կամուրջ[13]։ Վերջինիս շինարարական արձանագրությունից պարզվում է և վանքի միաբանների թիվը՝ 90։

Վանքի հզորությանը և բարգավաճմանը նպաստել է նրա հարմար աշխարհագրական դիրքը (Նախիջևանը և Սյունիքը Սևանի ավազանին կապող ճանապարհի վրա տեղադրված լինելը) և սերտ կապերը Ջուղայի, Գողթան գավառի հետ։ Շատինում բազմաթիվ կառուցվածքներ իրականացվել են Ջու-

10 Քաջբերունի, Ճանապարհորդական նկատողութիւնք, «Արարատ», №3, էջ 164։

11 Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 3, Երևան, 1967, էջ 161։

12 Ջալալյանց Սարգիս արքեպիսկոպոս, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, Տփխիս, էջ 150։

13 Ալիշան, Սիսական, էջ 166։

ղայի, Աստապատի հայ վաճառականների միջոցներով։ Շատին վանքը եղել է և հայտնի մշակութային կենտրոն՝ այդտեղ գրվել են բազմաթիվ ձեռագրեր[14]։




Նկ. 2. Շատին վանք, գլխավոր հատակագիծը։

[14] Նույն տեղում, էջ 159։

Տաթևի վանքի համալիրի գլխավոր հատակագիծն ունի նույն սկզբունքը, ինչ և այդ ժամանակաշրջանի հայ ճարտարապետական անսամբլները՝ հորինվածքի կենտրոնում առանձին բարձրանում է հիմնական կառուցվածքը՝ եկեղեցին, որի շուրջը, պարիսպների պարագծով, տեղադրված են մյուս շինությունները։ Տարածականորեն անսամբլը կազմակերպվում է դոմինանտի՝ պաշտամունքային կառուցվածքի շուրջը։ Չկան կից կառուցված ուրիշ շենքեր. եկեղեցին ազատ է կանգնած և շուրջը թողնված է բավարար ազատ տարածություն։ Այսպիսի դիրքը եկեղեցին առանձնացնում է բնակելի, տնտեսական, օժանդակ շինություններից, ավելի է շեշտում նրա կարևոր, առաջնային նշանակությունը։ Վանքի միակ եկեղեցին իր ճարտարապետական հորինվածքով եռանավ բազիլիկա է և, հետևաբար, ունի մեկ՝ արևելք-արևմուտք առանցք։ Հետաքրքրական է, որ ողջ կոմպլեքսի հատակագծային-տարածական հորինվածքը կազմակերպված է այդ նույն արևելք-արևմուտք ընդերկայնական առանցքի շուրջը։

Համալիրի գլխավոր՝ արևմտյան մուտքը տեղադրված է եկեղեցու արևմտյան դռան դիմաց, նույն առանցքով։ Մտնելով այդ դարբասով, այցելուն տեսնում է իր առջև բազիլիկայի գլխավոր՝ արևմտյան ճակատը։ Առանց զարդաքանդակների, ճակտոնով ավարտվող այս ճակատի զուսպ հարթության առջև կառուցվել է կամարակապ զանգակատուն-սրահը, որի միջին, ավելի մեծ կամարն ընդգրկում է եկեղեցու հիմնական՝ արևմտյան մուտքը։

Սիմետրիան պահպանվել է և օժանդակ շինությունների տեղադրման ժամանակ։ Եկեղեցու աջ և ձախ կողմերում, հարավային և հյուսիսային պարիսպների երկայնքով ձգվում են բնակելի և տնտեսական սենյակների շարքերը և վանքի գլխավոր դարբասով մտնելիս կարելի է մեկ անգամից ընկալել անսամբլի ողջ հորինվածքը, որը լուծված է սիմետրիկ՝ բազիլիկայի նկատմամբ։

Տաթևի վանքի գլխավոր հատակագիծը բավականին հաջող է ֆունկցիոնալ տեսակետից։ Տնտեսական և արտադրական շինությունները՝ ախոռը, գոմը, ձիթահանքը ոչ թե համալիրի ներսում են, այլ դրսից կից են արևմտյան պարիսպին, գլխավոր մուտքին մոտ։ Մթերանոցները, հացահատիկի հորը գտնվում են տերիտորիայի ներսում, սակայն խմբավորված են հյուսիս-արևմտյան անկյունում, մուտքի աջ ու ձախ կողմերում։ Նրանք միաժամանակ մոտ լինելով մուտքին, չեն խանգարում այցելուների շարժմանը դեպի եկեղեցի, չեն խախտում վանքի սիմետրիկ հորինվածքի հավասարակշռությունը։ Սեղանատունը, ըստ Ջալալյանի, տեղավորված է եղել բակի արևելյան կողմում։ Այս պատճառով, սեղանատան անմիջական կապը դրսի հետ ապահովելու համար, արևելյան պարսպապատում բացված է վանքի երկրորդ մուտքը, որը ճարտարապետական միջոցներով բոլորովին չի մշակված և չի շեշտ-

*վում։ Սա համապատասխանում է նրա նշանակությանը՝ օժանդակ մուտք նախատեսված միայն տնտեսական կարիքների համար (միաժամանակ նա կապում է վանքը դեպի արևելք գտնվող ջրաղացի հետ)։*

*Հետաքրքրական է Շատին վանքի ողջ համալիրի արտաքին արտահայտչականության հարցը։ Այստեղ առավել, քան Սյունիքի XVII դարի որևէ այլ անսամբլում, շեշտված է նրա ամրոցային բնույթը։ Միակ հնարավոր մոտեցումը դեպի մենաստան՝ հարավից է, Եղեգիսի ձորից։ Այս կողմից մոտեցողը, ոլորապտույտ ճանապարհի վերջին գալարն անցնելուց հետո, իր առջև, բարձրության վրա տեսնում է մի հուժկու պարիսպ, ուժեղացված երեք կիսաշրջանաձև բուրգերով։ Վանքի ճարտարապետությունը զուրկ է ուղղաձիգ ծավալներից։ Միակ մոնումենտալ շենքը՝ բազիլիկան ունի հորիզոնական, ցածրանիստ հորինվածք և լրիվ ծածկված պարիսպներով դրսից չի երևում։ Դրսից ոչնչով չի զգացվում անսամբլի պաշտամունքային բնույթը՝ թվում է, թե այն միայն պաշտպանական կառուցվածք է, և այն էլ բավականին ազդեցիկ (սրան նպաստում է և Շատին վանքի դիրքը՝ համարյա սարի գագաթին)։ Այս առումով եթե համեմատելու լինենք Սյունիքի XVII դարի մյուս համալիրների հետ, կտեսնենք, որ Շատինում ռազմա-պաշտպանական կառուցվածքի տպավորությունը անհամեմատ ավելի ուժեղ է՝ Կնեվանքը և Տաթևի Մեծ անապատը բուրգեր չունեն, Հալիձորի բերդում այն մեկն է և տեղադրված է հնարավոր մոտեցման հակառակ կողմում։ Իսկ միջնադարյան այն համալիրներում, որոնք XVII դարում ստացան բուրգերով ուժեղացված պարիսպներ, դրությունն այլ է, որովհետև գմբեթավոր եկեղեցիների, զանգակատների ուղղագիծ ծավալները երևալով դեռ շատ հեռվից, ցույց են տալիս, որ վերջինները կրոնական կենտրոններ են, լոկ շրջապատված պաշտպանական կառուցվածքներով։*

## ԿՆԵՎԱՆՔ (ՀԵՐՄՈՆԻ ՎԱՆՔ)

*Կանոնավոր, քառակուսի հատակագիծ ունի նույն Եղեգիսի ձորում XVII դարի մի այլ համալիր՝ Կնեվանքը։ Այն գտնվում է Եղեգնաձորից մոտ 30 կմ դեպի հյուսիս-արևելք, Ղավուշուղ գյուղի մոտ։ Վանքը կառուցված է Եղեգիս գետի աջ ափի մի բարձրավանդակի վրա, լեռնագագաթի ստորոտում, փոքր թեքություն ունեցող մի գոգավորության վրա։*

*Համալիրից պահպանվել են եկեղեցին՝ երկու մույթով բազիլիկան և պարսպապատերը։ Պարիսպներին կից, ներսի կողմից, եղել են բնակելի և այլ շինություններ, որոնք լրիվ ավերակ են և հետքերն են միայն երևում։ Վանքի գերեզմանոցը եղել է հենց վանքի բակում՝ պահպանվել են խաչքարեր և գերեզմանաքարեր։*

Գրականության մեջ մինչև վերջերս վանքը անվանվել է Կնեվանք կամ Գյունեյ վանք։ Ս. Բարխուդարյանի հետազոտությունները պարզեցին, որ Կնեվանքը կառուցվել է Սյունիքի X դարի Հերմոնի վանքի տեղում։ Վանքի այժմյան եկեղեցու հյուսիսային մույթը պատին միացնող կամարի կենտրոնում ագուցված է մի հին քարի բեկոր, որի վրա նախկին արձանագրությունից մնացել է երկու բառ՝ «Երամոնի վանք»[15]։

Հերմոնի վանքը, համաձայն Ստ. Օրբելյանի վկայության, կառուցել են 936 թ. Սյունյաց գահերեց իշխան Սմբատը և Հակոբ եպիսկոպոսը Եղեգիս ավանից դեպի վեր, ժայռաձև լեռների մի բարձրավանդակի վրա[16]։ Ինչպես տեսնում ենք, Կնեվանքի և Հերմոնի վանքի տեղագրությունները նույնպես համընկնում են։

XIV—XV դդ. Հերմոնի վանքն իր ծաղկումն է ապրում։ Նա դառնում է Սյունիքի մշակութային հայտնի կենտրոններից մեկը։ Վանքում աշխատել են նշանավոր մատենագիրներ, գրիչներ, նկարիչներ։ Հայտնի են Հերմոնի վանքում գրված 26 ձեռագիր մատյանները[17]։ XVI դարում վանքը, հավանաբար, հիմնովին ավերվել է, որովհետև այժմ նախկին շրջանից ոչ մի կառուցվածք չի պահպանվել։ X դարի եկեղեցին «գմբեթայարկ» է եղել[18]։ Այժմյանը, ինչպես նշվեց, եռանավ բազիլիկա է և հիմքից ի վեր կառուցված է XVII դարում։

Կնեվանքի ընդհանուր կոմպոզիցիայում դոմինանտը նույնպես բազիլիկան է, բայց ի տարբերություն Շատինից, վանքն ունի համարյա քառակուսի հատակագիծ։ Սակայն կառուցապատումը կազմակերպված է մեկ սիմետրիկ առանցքի (արևելք-արևմուտք) շուրջը և վանքի բնակելի, տնտեսական ու այլ շինությունները տեղադրված են արևելյան և արևմտյան պարիսպներին կից։ Ինչպես Շատին վանքում, այստեղ էլ արևմտյան պարսպի մուտքը (վանքի համար միակը) տեղադրված է կենտրոնում, եկեղեցու մուտքի դիմաց։

Ընդհանուր հորինվածքով նմանվելով հարևան Շատին վանքին, արտահայտչականության տեսակետից Կնեվանքը ավելի մոտ է Տաթևի Մեծ անապատին։ Երկուսն էլ ունեն ուղղագիծ, խուլ և բարձր պարիսպներով պարփակված տարածություն, լրիվ մեկուսացված շրջապատից։ Իսկ ներքին տարածության կազմակերպման հարցում Կնեվանքը Սյունիքի այդ ժամանակաշրջանի մյուս բոլոր համալիրների համեմատ ունի գլխավոր հատակագծի ամենախիստ երկրաչափական կառուցումը և կառուցվածքների նվազագույն քանակը։

---

15 Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 3, էջ 132։

16 Ստ. Օրբելյան, էջ 159։

17 «Դիվան հայ վիմագրության», պրակ 3, էջ 132։

18 Ստ. Օրբելյան, էջ 159։

*Շնհերի Կուսանաց անապատն ունի մի քանի առանձնահատկություններ, որոնցով նա տարբերվում է Հայաստանի ուշ միջնադարի վանքերից և անապատներից։ Նախ և առաջ նա առանձնանում է իր տեղադրությամբ։ Երբ XVII դարի Սյունիքի մենաստանները, որպես օրենք, կառուցվում էին բնակավայրերից հեռու, ամայի, անմատչելի տեղերում, լեռնագագաթների մոտ, ապա Շնհերի Կուսանաց անապատը կառուցված է հենց գյուղի մեջ։ Այս երևույթը բացատրվում է նրանով, որ XVII դարում կուսանոցների համար առավել ապահով վայրը ոչ թե ամայի լեռներն էին, այլ բնակավայրերը, որոնց պաշտպանությանը միայն կարող էին նրանք ապավինել։*

*Շնհերի Կուսանաց անապատը կառուցված է նույնանուն գյուղի հարավային ծայրում, Որոտանի անդնդախոր ձորի քարափներից մեկի գլխին։ Երեք կողմից շրջապատված է կառուցապատումով և մոտենալ հնարավոր է միայն ողջ գյուղը անցնելուց հետո։ Սակայն այս կողմից էլ համալիրը շրջապատված է ամուր, բարձր պարիսպներով, որով լրիվ մեկուսանում է բնակավայրից։ Իսկ չորրորդ՝ անդունդի կողմից անսամբլը բացվում է դեպի Որոտանի ձորը, դեպի Սյունիքի հրաշագեղ բնությունը։*

*Անսամբլը բաղկացած է եկեղեցուց, որը մեկ զույգ մույթերով եռանավ բազիլիկա է, նրան հարավից կից գավթից, նույն կողմում գտնվող սեղանատնից և պարիսպներին կից սենյակներից։*

*Եկեղեցին ունի երեք շինարարական արձանագրություն՝ հարավային մուտքի տիմպանի վրա, ներսում, բեմի հյուսիսային որմնասյան և հարավային կամարի վրա։ Այդ արձանագրություններից պարզվում է հուշարձանի կառուցման ճշգրիտ ժամանակը, կառուցող մեկենասը և ճարտարապետը։*

*Բազիլիկան՝ ս. Աստվածածնի եկեղեցին կառուցել է Ագուլիսցի Մահտեսի Ազարիան 1676 թ.։ Շինարարությունն սկսվել է ապրիլի 4-ին և ավարտվել նույն թվականի սեպտեմբերի 30-ին, այսինքն տևել է ուղիղ կես տարի։*

*Բեմի հարավային կողմի որմնասյան վրայի արձանագրությունից պարզվում է, որ այն վերանորոգել են 1720 թ. գողթնեցի Մահտեսի Բենիամինը և նրա որդի Ազարիան։ Այս արձանագրության տակ, հարավ-արևելյան ավանդատան բարավորի վրա երեք տողով փորագրված է «Ցիշեցէք ուստա Մուրատն որ է յերկրէն Քրդստանի»։ Մինչև վերջերս բոլոր հրատարակողները (Ջալալյան, Ալիշան, Լալայան) այս արձանագրությունը միացրել են նախորդի հետ։ Սակայն ըստ Բարխուդարյանի դա ճիշտ չէ, և այս երկու արձանագրությունները միմյանց հետ կապ չունեն[19]։ Հետևաբար պետք է եզրակացնել, որ վասպուրա-*

[19] Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 2, էջ 59։

*կանցի Մուրադը եկեղեցին կառուցող ճարտարապետն է, այլ ոչ թե վերանորոգողը: Սեղանատան արևմտյան մուտքի բարավորի վրայի շինարարական արձանագրությունից պարզվում է և ուշ միջնադարի աշխարհիկ ճարտարապետության այս հետաքրքրական հուշարձանի կառուցման ժամանակը և մեկենասը՝ այն շինվել է 1720 թ. ցղնեցի Հովհաննեսի և նրա որդի Աստվածատուրի կողմից:*

*Պարիսպներին կից սենյակները, ընդհանուր պատշգամբով, կառուցվել են XIX դարի վերջին որպես եկեղեցական-ծխական դպրոց[20]:*

*Լալայանի կողմից հիշատակվող խցերը, բաղնիքը, պարիսպների երեք աշտարակները այժմ չեն պահպանվել:*

*Ելնելով եկեղեցու շինարարական արձանագրություններից, մինչև այժմ գրականության մեջ ընդունված է այն կարծիքը, որ Շնհերի Կուսանաց անապատն ընդհանրապես հիմնվել է 1676 թ.: Սակայն, դեռ 1668 թ. Շնհերի Կուսանաց անապատն է այցելել Զաքարիա Ագուլեցին, որի օրագրի համաձայն այդ թվականին մենաստանի միաբանների թիվը հասնում է 60-ի[21]: Հետևաբար պետք է ենթադրել, որ Շնհերի անապատը ստեղծվել է ամենաուշը XVII դարի կեսերին:*

*Շնհերի համալիրը հյուսիսից և արևելքից շրջապատված է պարիսպներով, իսկ արևմուտքից և հարավից նրա բնական սահմաններն են ուղղաձիգ, դեպի ձորը գահավիժող ժայռերը: Այս երկու կողմերից պաշտպանական կառուցվածքների կարիքը չկար և բնակելի սենյակների, եկեղեցու ու սեղանատան առջև բացվում է Որոտանի կիրճի գեղատեսիլ համայնապատկերը: Այս առումով Շնհերի անապատն առանձնանում է նույն ժամանակաշրջանի Հայաստանի մյուս ճարտարապետական անսամբլներից, որոնք, որպես օրենք, բոլոր կողմերից պարփակված են բարձր և խուլ պարիսպներով, լրիվ մեկուսանալով շրջապատից, բնությունից: Իսկ Շնհերում, ընդհակառակը, բնությունը օրգանապես մտնում է անսամբլի մեջ, դառնում նրա բաղկացուցիչ մասը: Տեղադրության այս գործոնն ազդել է կառուցապատման վրա: Եթե ուշ միջնադարի հայկական մենաստանների մեծ մասը ունեն սիմետրիկ կամ էլ ասիմետրիկ, բայց խիստ երկրաչափական հորինվածք (Վայոց ձորի վանքերը, Տաթևի Մեծ անապատը, Խոր-Վիրապը), ապա Շնհերի համալիրը կառուցված է ազատ հատակագծման սկզբունքով, ելնելով միայն տեղանքից և կողմնորոշումից: Աչքի է ընկնում ռելիեֆի հմուտ օգտագործումը: Եթե մյուս մենաստանները, որոնք կառուցված են թեքադիր տեղանքի վրա, հողային աշխատանքների (հիմնականում լիցքի) շնորհիվ պարսպապատերի ներսում ունեն միանգամայն հարթ տարածություն, ապա Շնհերում ռելիեֆը թողնված է անփոփոխ և*

---

[20] *«Ազգագրական հանդես», հատ. Դ, 1898, էջ 45:*

[21] *«Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 76:*



2 0 2 4 6 8 10

Նկ. 3. Շնհերի Կուսանաց անապատ, գլխավոր հատակագիծը։

կառուցապատումն է հարմարեցված տեղանքին։ Հողամասը նեղ է և երկար՝ այն ձգվում է քարափի եզրով։ Այդ պատճառով կատարվել է շինությունների խմբավորում, ելնելով նրանց ֆունկցիոնալ նշանակությունից՝ սենյակները ընդհանուր բակով առանձնացած են համալիրի հյուսիսային մասում, իսկ եկեղեցին, գավիթը և սեղանատունը՝ հարավային։ Երկու խմբերի միջև կա ընդհանուր բակ-միջանցք, դեպի ուր բացվում է համալիրի մուտքը[22]։

Եկեղեցին կառուցված է թեքադիր տեղանքի վրա։ Նրա հյուսիսային պատը փաստորեն հենապատ է և իր բարձրության կեսի չափով խրված է հողում։ Այս պատճառով պատը մեկ լուսամուտից բացի ուրիշ բացվածքներ չունի։ Եկեղեցու միակ մուտքը, որը հարավային պատում է, բացվում է ուղղանկյուն փոքր գավթի մեջ։ Գավթի առջև կառուցված սեղանատան հյուսիսային պատը նույնպես հենապատ է ծառայում և լրիվ թաղված է հողի մեջ[23]։ Այնպես որ սեղանատան կտուրի վերին նիշը հավասար է գավթի հատակին և սեղանատան տանիքը փաստորեն բակ է ծառայում եկեղեցու համար։ Տեղանքի նման հմուտ օգտագործումը տվել է այն արդյունքը, որ անսամբլն ըստ բարձրության բաժանվում է երեք տարբեր, բայց փոխադարձ կապված գոտիների։ Առաջինը՝ վերին անապատի բակն է, սենյակներով, որից աստիճաններով իջնում են դեպի եկեղեցին, գավիթը և նրանց առջևի հարթակը։ Այդտեղից նույնպես աստիճաններով ընկնում են երրորդ, ամենաներքևի գոտին, որտեղ գտնվում է սեղանատունը։ Համալիրի նման տարածական կազմակերպումը, ռելիեֆի և կառուցապատման օրգանական միասնությունը զգալի հարստացնում է անսամբլի ճարտարապետության արտահայտչականությունը։

Հետաքրքիր է կազմված շարժման գրաֆիկը և դիտողական տեսակետից։ Դարբասով մտնելիս կարելի է թեքվել ձախ և շրջանցելով եկեղեցու արևմտյան պատը, անմիջապես հասնել գավիթ կամ ցած իջնելով՝ սեղանատուն։ Սակայն այս դեպքում այցելուն իր ճանապարհի երկու կողմում կունենար պարսպի և եկեղեցու արևելյան պատի բարձր, ուղղաձիգ հարթությունները, որոնք նրան լրիվ մեկուսացնում են շրջապատի բնությունից։ Այս պատճառով եկեղեցին այցելելու համար կա մի այլ, ավելի երկար, բայց անհամեմատ ավելի գեղատեսիլ ճանապարհ։ Այս դեպքում ճանապարհն անցնում է եկեղեցու հյուսիսային պատի երկայնքով և այցելուն իր դիմաց տեսնում է Որոտանի կիրճի անտառապատ սարերը, իսկ աջից՝ անապատի ներքին բակը և նրան եզերող Г-աձև հատակագծով սենյակների խումբը։ Շրջանցելով եկեղեցու հյուսիսարևմտյան անկյունը և իջնելով արևմտյան պատի կողքով, Որոտանի ձորի

[22] Շնհերի անապատի նախկին դարբասը գտնվում է ժամանակակից մուտքից քիչ վերև և հետագայում փակվել է ներսի կողմից սենյակներ կառուցելու պատճառով։

[23] Ընդ որում, սեղանատունը կառուցված է եկեղեցուն ոչ թե զուգահեռ, այլ անկյան տակ, որը նույնպես բխում է տեղանքից։

համայնապատկերը երևում է արդեն մի նոր անկյան տակ, նախկինից ընդարձակ։ Ավելի իջնելով և թեքվելով դեպի սեղանատուն, երևում են գյուղի պտղատու այգիները, որոնք տերասաձև իջնում են ձորի թեք լանջերն ի վար։

Շնհերի Կուսանաց անապատն իր ժամանակի մյուս համալիրների համեմատ բավական ինքնատիպ է։ Այստեղ է միայն, որ բնությունը ճարտարապետության հետ համատեղ մասնակցում է անսամբլի արտահայտչականության ստեղծմանը։ Լրիվ և բավականին հաջող օգտագործված է ռելիեֆի հնարավորությունները՝ չկա ճարտարապետության և տեղանքի ամենափոքր հակադրությունը նույնիսկ։

## ՀԱԼԻՁՈՐԻ ՀԱՐԱՆՑ ԱՆԱՊԱՏ

Հալիձորի Հարանց անապատը (նախկին Տաթևի կամ Սյունյաց Մեծ անապատը) ուշ միջնադարի հայկական հոգևոր, մշակութային, շինարարական-ճարտարապետական զարթոնքի ազդակներից առաջինը եղավ։

Հարանց անապատի հիմնադիրներն են Սաղմոսավանքի եպիսկոպոս Սարգիսը և քահանա Կիրակոսը՝ Տրապիզոնից։ Նրանք միմյանց հանդիպում են Երուսաղեմում, ուր մեկնել էին ուխտի և միաժամանակ անապատների կանոնադրությանը ծանոթանալու և երկուսով որոշում են վերադառնալ Հայաստան ու նոր մենաստան հիմնել, այդ գործում առաջնորդվելով Երուսաղեմում ծանոթացած օրենքներով։ Նրանք հանդիպել են 1606 թ. և մինչև 1607 թ. փետրվարը մնացել Երուսաղեմում, որից քիչ անց վերադարձել են Հայաստան[24]։ Սարգիսը և Կիրակոսը գալիս են Սյունիք՝ անապատական կյանքի հինավուրց և ավանդական կենտրոնը, լինում Տաթևի վանքում, Ցրուանցում, Թանահատի վանքում, ապա փնտրում «...առավել ևս անքոյթ և անշփոթ և յապահով տեղի, մինչև գտին զտեղին, յորում այժմ շինեալ կայ մեծ անապատն...»[25]։

Հարանց անապատի հիմնադրման թվականը որոշակի հայտնի չէ։ Դավրիժեցին նկարագրելով 1658 թ. երկրաշարժը և Անապատի ավերումը, նշում է, որ դա տեղի է ունեցել հիմնադրումից 45 և ավել տարի անց[26]։ Հետևաբար ամենաուշը այն կառուցվել է 1613 թ., Օրմանյանն այն համարում է 1608 թ. կառուցված, իսկ Ջամչյանն ընդունում է 1610 թվականը[27]։

Հարանց անապատը գտնվում է Որոտան գետի աջ ափին, Հալիձոր գյուղի հանդեպ, ժայռերով շրջապատված մի փոքրիկ հարթության վրա։ Համալիրն

---

24 Օրմանյան. Ազգապատում, հատ. Բ, էջ 2344։

25 «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 252։

26 Նույն տեղում, էջ 261։

27 Օրմանյան. Ազգապատում, հատ. Բ, էջ 2949։



Նկ. 4. Հարանց անապատ, գլխավոր հատակագիծը

այժմ բաղկացած է եկեղեցուց գավիթ-սրահով և հարավից կից կառուցված երկու սենյակներով, պարիսպների մնացորդներից, (որոնցից արևմտյանում գտնվում է դարբասը), սեղանատնից։ Բացի եկեղեցուց, մյուս նշված շինությունները համալիրի սկզբնական հորինվածքին չեն պատկանում, այլ կառուցված են 1658 թ. երկրաշարժից հետո։ Այս աղետի ժամանակ գետնի ճեղքվածքի և սողանքի հետևանքով եկեղեցին սահել-իջել է այժմյան տեղը, իսկ «...արևմտեան կողմն անապատին, պարիսպն և հիւրատունն, և ախոռք անասնոցն, և համբարանոցքն, և մասն ինչ է սեննկէ եղբարցն, և արևմտեան կողմն մեծ եկեղեցւոյն՝ յետուստ կուսէ արևմտեան սեանցն, սոքա ամենեքեան աւերեցան»[28]։

Հարանց անապատի ավերումից երկու տարի հետո միաբանությունը լքում է այն և տեղափոխվում նոր տեղ, կառուցում նոր՝ Տաթևի Մեծ անապատը[29]։

Սակայն XVII դարի վերջին և XVIII դարի սկզբին Հարանց անապատը նորից կենդանանում է, այստեղ վերանորոգումներ և նոր կառուցումներ են կատարում Տաթևի վանքի առաջնորդները և զանազան նվիրատուներ։ Այդ ժամանակաշրջանին են պատկանում պարիսպները, գավիթը, սեղանատունը։ Պարսպի դարբասի վրայի արձանագրություններից պարզվում է, որ պարիսպը կառուցել են Տաթևի վանքի առաջնորդ Կիրակոս վարդապետը. Հայրապետը և Սահակ աբեղան, իսկ դարբասը կառուցել են մի խումբ նվիրատուներ 1717 թ.[30]։

Եկեղեցու արևմտյան մուտքի կամարակապ քարի վրա, դրսից, փորագրված է հետևյալ շինարարական արձանագրությունը. «Յիշեցէք ի ՔՍ զմեղապարտ Սահակ աբեղայս, որ նորոգեաց զեկեղեցիս եւ շինեաց զգաւիթս պարիսպս եւ այլ շինուածք սուրբ Անապատիս, յիշատակ իւր եւ ծնողացն տէր Ովանէսին եւ Փարիխաթունին»։ Այս շինություններն էլ կառուցված պետք է լինեն XVIII դարի սկզբին, որովհետև գավիթը, պարիսպը և դարբասը կոնստրուկտիվ, շինարարական առումով ամբողջություն են կազմում և կառուցվել են միաժամանակ, այսինքն 1717 թ.։ Սեղանատան մասին ոչինչ չի նշվում արձանագրություններում։ Երկրաշարժի ժամանակ քանդված շինությունների շարքում այն չի հիշատակում և Դավրիժեցին։ Սակայն սեղանատունը կառուցվել է երկրաշարժից հետո, սրա ապացույցն է այն փաստը, որ նրա համար որպես հարավային ընդլայնական պատ է ծառայում ուղղաձիգ ժայռը։ Այս ժայռը փլուզման ժամանակ կիսվել էր և հյուսիսային մասը, վրան կառուցված եկեղեցիով տաս մետրից ավել սահել, իջել է ներքև։ Սեղանատունը

[28] «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 263։

[29] «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 75—76։

[30] Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 2, էջ 54։

կառուցելիս այն հպել են ժայռին, տնտեսելով մի պատի շարվածքը: Սեղանատունն էլ ըստ երևույթին կառուցել է վերոհիշյալ Սահակ աբեղան, որովհետև ավելի ուշ՝ XVIII դարի կեսերում Հարանց անապատի կյանքը ընդմիշտ կանգ է առնում և դառնում «...ամայի և որջ գազանաց»[31]:

Հյուսիսից, եկեղեցուն կից կա երկու սենյակ: Մեկի մեջ բացվում է բազիլիկայի հյուսիսային մուտքը և այս սենյակը գավթի դեր է կատարում, որովհետև առանձին մուտք ունի դեպի դուրս: Մյուսը կից է հյուսիսային ավանդատանը և դռնով կապված է վերջինիս հետ: Այս փոքրիկ սենյակը դրսի հետ չի հաղորդակցվում և մատուռ է ծառայել, ուր եղել է մի գերեզմանաքար, առանց տապանագրի[32]:

Պարսպապատերին կից կառուցված են եղել փոքր, գետնափոր խցեր[33], որոնցից այժմ ոչինչ չի պահպանվել:

Հալիձորի Հարանց անապատը մեծ հետաքրքրություն է ներկայացնում Սյունիքի և ընդհանրապես Հայաստանի XVII դարի անապատների և վանքերի անսամբլների ճարտարապետության առանձնահատկությունների բացահայտման համար, որովհետև Հարանց անապատը թե ժամանակագրական տեսակետից և թե իր նշանակությամբ առաջինն էր երկրում: Հարանց անապատից են ելել Սյունիքի, Արարատի, Վասպուրականի և պատմական Հայաստանի այլ նահանգների անապատների հիմնադիրները: Բնականաբար, նրանք իրենց հետ տանում էին ոչ միայն կրոնական կյանքի կանոնադրությունը և կազմակերպչական ձևերը, այլև համալիրի հորինվածքի և նրա առանձին մասերի ճարտարապետական լուծումները: Եվ եթե վերջիններս նույնությամբ չեն կրկնվել նոր անսամբլներում, ապա իրենց մեծ ազդեցությունն են ունեցել նրանց վրա: Սակայն, ցավոք, համալիրի նախնական հորինվածքից մեզ ոչինչ չի հասել, և եղածը, այն էլ կիսով չափ պահպանված, արդյունք է XVIII դարի սկզբի շինարարական աշխատանքների: Բայց, համենայն դեպս, որոշ ազդեցություններ պարզորոշ նկատվում են: Առաջինը համալիրի հիմնական կառուցվածքի՝ եկեղեցու հորինվածքն է: Հարանց անապատի եկեղեցին երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկա է, աբսիդի երկու կողմերում ուղղանկյուն ավանդատներով: Այն ունի ընդհանուր երկթեք ծածկ: Մուտքերը երեքն են՝ հյուսիսային, արևմտյան և հարավային պատերում: Ահա այս հորինվածքն էլ կիրառված է Հարանց անապատից հետո կառուցված Սյունիքի մյուս մենաստանների մեծ մասում: Նման հորինվածք ունեն նաև Սյունիքի XVII դարի առանձին կառուցված եկեղեցիների ճնշող մեծամասնությունը, թվով մոտ երեք տասնյակ: Հարանց անապատի բազիլիկայի երեք մուտքերի առկայությունը ցույց է տալիս, որ համալիրի սկզբնական հորինվածքում այն եղել է

[31] Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, էջ 306:

[32] «Ազգագրական հանդես», 1898, №1, էջ 147:

[33] Նույն տեղում:

ազատ տարածության մեջ առանձին կանգնած (երեք կողմերից մոտեցումն ապահովելու համար)։ Պաշտամունքային կառուցվածքի նման տեղադրություն հանդիպում ենք և մյուս անսամբլներում (Ճատին վանք, Կնեվանք, Տաթևի Մեծ անապատ, Շնհերի անապատ, Բեխի անապատ)։ Հարանց անապատի բազիլիկան մինչև օրս էլ պահպանել է իր սկզբնական հորինվածքը. Փլուզումից վնասված է եղել միայն նրա արևմտյան մասը՝ արևմտյան մույթերն ու պատը, որը և վերանորոգվել է XVIII դարի սկզբում, առանց խախտելու կառուցվածքի հիմնական հորինվածքը։

Միաբանության խցերը կառուցված են եղել պարսպապատերի երկայնքով, նրանց կից։ Նման դասավորություն կիրառված է և այն բոլոր անապատներում, որոնց բնակելի շինությունները մեզ են հասել։ Միատեսակ, իրարից ոչնչով չտարբերվող խցերի շարքը հատուկ է Սյունիքի անապատներին։

Դավրիժեցու կողմից թվարկված շինությունների անուններից հայտնի է դառնում և Հարանց անապատի նախնական համալիրի բաղկացուցիչ կառուցվածքները։ Որպես հայտնի կրոնական և մշակութային կենտրոն, Անապատ են այցելել բազմաթիվ մարդիկ՝ կրոնական, քաղաքական գործիչներ, վաճառականներ, պատմիչներ, բանաստեղծներ, սոսկ ուխտավորներ։ Նրանց հյուրընկալելու և տեղավորելու համար գոյություն է ունեցել հատուկ հյուրանոց։ Մեր կարծիքով, այդ հյուրանոցը տեղադրված է եղել պարսպապատերի ներսում. այդ դարում շատ կարևոր էր անվտանգության գործոնը։ Որպես խոշոր տնտեսական կազմակերպություն, Հարանց անապատն ունեցել է և իր «ախոռքն, անասնոցն, համբարանոցքն»։ Նման տնտեսական կառուցվածքներ ունեն և դարի մյուս բոլոր մենաստանները։

Հարանց անապատի գլխավոր հատակագծի նախնական կերպարը, ավելի ճիշտ, որոշ սկզբունքներ կարելի է իմանալ նույն Դավրիժեցու նկարագրություններից։ Թվելով երկրաշարժից քանդված շինությունները, նա նշում է, որ այդ բոլորը տեղադրված են եղել անապատի արևմտյան կողմում։ Դեպի արևմուտք է նայում եկեղեցու հիմնական մուտքը։ Անկասկած, համալիրի գլխավոր մուտքը նույնպես տեղադրված է եղել արևմտյան կողմում (դա անհրաժեշտ էր թե եկեղեցու գլխավոր ճակատը չեշտելու և թե այդ կողմից դեպի անապատը մոտենալու նպատակահարմարության տեսակետից)։ Հետևաբար, ստացվում է, որ բոլոր օժանդակ՝ արտադրական, տնտեսական, անասնապահական շենքերը, հյուրատունը խմբավորված են եղել համալիրի արևմտյան մասում, մուտքի մոտ, իսկ հիմնական կառուցվածքը՝ եկեղեցին գտնվել է անսամբլի խորքում, ազատ կանգնած (նման հորինվածք ունի և Ճատին վանքը)։

Հետագա կառուցումները և վերանորոգումները լրիվ աղավաղել են այս հորինվածքը։ Այժմ Հարանց անապատն արևմտյան մասում կառուցված գավթով հպված է պարսպապատին և գտնվում է գլխավոր մուտքի մի կող-

մում։ Նման դիրքը, հարավից կցված սենյակները քողարկում են բազիլիկայի ծավալը և վերջինս չունի այն գերիշխող դիրքը անսամբլում, որպիսին ուներ նա առաջ և ունեն այդ ժամանակաշրջանի մյուս համալիրների եկեղեցիները։ Անապատի այժմյան հորինվածքում պարզորոշ զգացվում է, որ վերակառուցումների ժամանակ կարևորը եղել է տնտեսական գործոնը։ Արևմտյան պարիսպը կառուցելիս այն հպել են եկեղեցուն՝ պարսպապատերի նվազագույն երկարություն ստանալու և գավթի պատերից մեկը տնտեսելու համար (պարիսպը ծառայում է գավթի համար որպես արևմտյան պատ)։ Նույնը տեղի է ունեցել սեղանատան հետ՝ այն տեղադրված է եկեղեցու հարավային պատի և ուղղաձիգ ժայռերի միջև, որով տնտեսել են նրա ընդլայնական պատերից մեկը։ Այս բոլորից երևում է, որ XVIII դարի սկզբին վերանորոգողները բացարձակորեն հաշվի չեն առել անսամբլի ընդհանուր արտահայտչականության գործոնը։

## ԲԵԽԻ ԱՆԱՊԱՏ (ՏԱՆՁԱՓԱՐԱԽ)

Ժամանակակից Ղափանի շրջանում գտնվում է Սյունիքի մի այլ անապատ ևս, որը հայտնի է «Բեխի անապատ» անունով։ Այն տեղադրված է Բեխ գյուղից հարավ-արևելք, մի բարձրադիր վայրում՝ լեռնաշղթայի գագաթներին մոտ, խիտ անտառում։

Անապատը կազմված է եկեղեցուց, որը թաղածածկ դահլիճի հորինվածք ունի և նրա հյուսիսային կողմում կանգուն ուղղանկյուն, թաղածածկ սեղանատնից։ Մնացած կառուցվածքներից՝ պարիսպների, միաբանության բնակելի սենյակների միայն հետքերն են պահպանվել։ Քանդված է և եկեղեցու արևմտյան ճակատին կից կառուցված գավիթ-սրահը։

Անապատի շենքերն ամբողջովին ծածկված են ծառերով և թփերով, որոնք լրիվ քողարկում են նրանց և միայն մոտիկից է հնարավոր նկատել խիտ անտառի թավուտում ճարտարապետական կառուցվածքների առկայությունը։ Իսկ պարսպապատերի, խցերի և այլ շինությունների փլատակները ուղղակի կուլ են գնացել բուսականությանը և այժմ անհնար է տալ համալիրի գլխավոր հատակագծի ամբողջական տեսքը։ Բեխի անապատը, սակայն, ունի մի շարք հետաքրքիր առանձնահատկություններ, որոնք արժեքավոր են ուշ միջնադարի Սյունիքի ճարտարապետության համար։ Առաջինը դա եկեղեցու հորինվածքն է, այն միջանկյալ տեղ է գրավում եռանավ բազիլիկայի և որմնամույթերով և որմնախորշերով դահլիճի միջև։ Երկրորդը սեղանատան տեղադրությունն է. եթե մյուս անսամբլներում սեղանատունը առանձնացված է եկեղեցուց, ապա այստեղ նրանք ոչ միայն կից են, այլև երկու կառուցվածքների գլխավոր մուտքերը արևմտյան ճակատներից են, որոնք միևնույն

հարթության մեջ են գտնվում։ Ճիշտ է, եկեղեցին այս կողմում ունի կից կառուցված գավիթ-սրահ, որը շեշտում է նրա մուտքը և առանձնացնում այն սեղանատնից, սակայն վերջինս նույնպես այս կողմից ունի սրահանման մի կառուցվածք (սրա միայն հետքերն են մնացել)։

Համալիրի մուտքը չի պահպանվել, սակայն մոտեցումը Անապատին հարմար է արևմուտքից և, մեր կարծիքով, դարպասը տեղադրված է եղել այս կողմում։

Բայց ամենահետաքրքրականը եկեղեցու և սեղանատան պատերի շարվածքում օգտագործված մի այլ՝ շատ ավելի հին կառուցվածքի բեկորների առկայությունն է, որը լույս է սփռում Բեխի անապատի իսկական անվան և Սյունիքի հնագույն վանքերից մեկի տեղադրությունը ճշտելու հարցի վրա։

Անապատի սեղանատունը և եկեղեցին կառուցված են կիսամշակ բազալտից և որձաքարից, XVII դարին բնորոշ շինարարական տեխնիկայով, իսկ շարվածքում օգտագործված բեկորները բոլորովին ուրիշ քարից են՝ դեղնակարմրավուն տուֆաքարից։ Բեկորներում հանդիպում են ատամնավոր քիվի, քանդակազարդ զարդագոտու հատվածներ։ Եկեղեցու արևմտյան ճակատին արտաքուստ ագուցված քարի վրա պահպանվել է ուռուցիկ գրված արձանագրության մի կտոր։ Փորագրության ձևը հատուկ է XII—XIV դարերին։ Ակնհայտ է, որ Անապատի տեղում եղել է մի ուրիշ՝ ավելի հին հուշարձան, որը լրիվ քանդվել է և քարերը մասամբ օգտագործվել են նոր կառուցվածքի համար։ Նման օրինակներ շատ կան Հայաստանի XVII դարի ճարտարապետության մեջ, երբ XV—XVI դարի արհավիրքներից վնասված, կիսաքանդ տաճարները և եկեղեցիները լրիվ քանդում էին և նույն տեղում շինում նոր պաշտամունքային կառուցվածքներ։ Քանդակազարդ բեկորների և արձանագրության ոճական առանձնահատկություններից պետք է ենթադրել, որ Անապատի նախնական հուշարձանը կառուցված է եղել VII դարից ոչ ուշ և կանգուն է եղել մոտավորապես մինչև XIV դարը, որից հետո քանդվել է կամ երկրաշարժից, կամ թշնամիների կողմից։ Իսկ Սյունիքի միջնադարյան վանքերից որն է, որ յոթ դար և գուցե ավելի կյանք է ունեցել և անհայտ չքացել, չթողնելով նույնիսկ իր անունը։ Այդ վանքը կանգուն է եղել Ստ. Օրբելյանի ժամանակ էլ, իսկ պատմիչը ամենայն բարեխղճությամբ տվել է վաղ միջնադարից մինչև իր ժամանակաշրջանը Սյունիքում կառուցված համարյա բոլոր վանքերի և մենաստանների անունները, տվել նրանց հիմնադրման ժամանակը, կամ բերել նրանց հետ կապված այս կամ այն պատմական անցքի նկարագրությունը։ Եվ, իսկապես, Օրբելյանի մոտ մենք գտնում ենք այն, ինչ փնտրում ենք՝ այս հուշարձանի հին անունը, որը պարզվում է շնորհիվ նրա տեղադրության և հարևանության Վահանավանքին։ Բեխի անապատը կառուցված է Վահանավանքից մոտ 5 կմ արևելք, լեռնաշղթայի գագաթներից սկսվող մի



2 0 2 4 6 8 10

*Նկ. 5. Բեխի անապատ (Տանձափարախ), գլխավոր հատակագիծը*

խոր ձորի սկզբնավորման մոտ։ Ջրով հոսող գետակը միախառնվում է Ողջի գետի հետ։ Ըստ Օրբելյանի, այդ տեղում է գտնվում Սյունիքի հնագույն և հռչակավոր մենաստաններից մեկը՝ Տանձափարախը։

Ստ. Օրբելյանը գրելով Վահանավանքի կառուցման մասին, նշում է նրա տեղագրությունը վանքապատկան հողատարածության սահմանները. «...զձորն գետովն յայս դեհս և յայն յանդաստանս և յայգեստանս վանիցն, և զլեռնակողմն մինչ ի վեր ի ծայր բարձրաւանդակին ուր հօրանք հօտիցն լինէին. և բնակետղ խաչանց և ի քաղաքին կողմանէ մինչ ի պատուար պարսպի արտաքին որմոյն որ ի լեռնէն սկսանի և ի Տանձափարախոյ կողմանեն մեծ բնաձորն որ ի լեռնէն սկսանի և իջանէ ի գետն, և զգեղանն որ ի հանդեպ վանացն՝ զԱչաղու և զԱչախուայ, զԳետարավայր և զՇէկք...[34]»։ Ստ. Օրբելյանը գրում է, որ Սիսական տոհմի Ջագիկ մեծ իշխանի որդի Վահանը մինչև իր անունը կրող Վահանավանքի հիմնադրումը (911 թ.) երկար ժամանակ անց է կացրել այդ նշանավոր մենաստանում։ Նա «...բազում ժամանակօք ճգնեալ ի սուրբ առաքինարենին Տանձափարախու...»[35]։ Վահանը այնտեղից անցել է Շատաննա վանքը և ապա որոշ ժամանակ անց կառուցել Վահանավանքը։ Հետևաբար նա պետք է Տանձափարախում եղած լիներ IX դ. վերջերին։ Իսկ այդ դարում Տանձափարախն արդեն հռչակավոր և հայտնի վանք է եղել։ Ստ. Օրբելյանը Սյունիքի վանքերի ցուցակում նշում է 11-րդ տեղում, Վահանավանքից հետո, միաժամանակ շեշտելով, որ նրա միաբանությունը «...խարազանազգեստք և սահմանաւորք...» են եղել[36]։ Նման բնորոշումը, ինչպես և այն փաստը, որ այդտեղ ճգնել են, ցույց են տալիս, որ Տանձափարախը եղել է անապատ, որոնցով հայտնի է եղել Սյունիքը դեռ վաղ միջնադարից սկսած[37]։ Հետաքրքրական է, որ տալով Սյունիքի բոլոր նշանավոր մենաստանների կառուցման ժամանակը, Ստ. Օրբելյանը ոչինչ չի խոսում Տանձափարախի հիմնադրման ժամանակաշրջանի մասին։ Դա, մեր կարծիքով, բացատրվում է նրանով, որ Տանձափարախը կառուցվել է շատ ավելի վաղ և նրա հիմնադրման պատմությունը Ստ. Օրբելյանի ժամանակ արդեն մոռացված էր։

Տանձափարախի և Բեխի անապատի նույնությունը մեկ անգամ ևս հաստատվում է Առաքել Դավրիժեցու վկայությամբ։ Պատմիչը նշում է, որ XVII դարի 20-ական թվականներին Տաթևի Մեծ անապատից տեր Արիստակեսը գնաց «...Տանձափարախ և շինեաց անապատ՝ և անդ եկաց մինչ ցվախճան կենաց՝ իւրոց՝ և անդէն թաղեցաւ և տեղին անապատ կայ հաստա-

34 Ստ. Օրբելյան, էջ 239։

35 Նույն տեղում, էջ 200։

36 Նույն տեղում, էջ 339։

37 «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 252։

տուն մինչև ցայսօր»[38]։ Սյունիքի XVII դարի բոլոր անապատներն հասել են մինչև մեր օրերը և հայտնի են նրանց տեղերը։ Տանձափարախ կոչված վայրում կանգուն է միմիայն մեկը՝ վերոհիշյալ Բեխի անապատը։ Այս փաստը ոչ մի կասկած չի թողնում, որ նշված կոմպլեքսը պատկանում է Սյունիքի հինավուրց անապատներից մեկին՝ Տանձափարախին, որը հիմնովին վերակառուցվել է Արիստակեսի կողմից XVII դարում։ Եվ պատահական չէ, որ Բեխ գյուղի բնակիչները մինչև վերջերս այն կոչել են Արիստակես անապատ[39]։

Տանձափարախի անապատը միջնադարում եղել է նաև հայտնի մշակութային կենտրոն։ Այնտեղ գրվել են ձեռագրեր, աշխատել է Գրիգոր Տաթևացու աշակերտ Մաթեոս վարդապետը, որ 1393 թ. «...գրէր զքաղուածոյ Քարոզագիրս իւր, ընդ գրոց Եւագրի և Նեղոսի. որպես ասէն, ի ներքնագոյն անապատիս Տանձափարախոյ...»[40]։ Հայտնի է մի ձեռագիր ևս, որը գրվել է «...ընդ հովանեան սուրբ Անապատիս՝ որ կոչի Տանձափարախ...»[41]։ Հետևաբար, դեռ XIV դարում Տանձափարախը որոշակիորեն անապատ է անվանվել։ Տանձափարախի անապատը XVII դարում վերականգնվելով, գործել է հավանաբար մինչև XVIII դարի վերջերը՝ եկեղեցում գտնվող մի խաչքարի վրա կա 1751 թ. արձանագրություն։ Սակայն հետո այն լքվում է և նրա անունը չի հիշատակվում ոչ ազգագիրների, ոչ ճանապարհորդների ու պատմիչների կողմից։

## ՀԱԼԻՁՈՐԻ ԲԵՐԴ (ՀԱԼԻՁՈՐԻ ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ)

Սյունիքի XVII—XVIII դարերի ճարտարապետական անսամբլների շարքում առանձնահատուկ տեղ է գրավում Հալիձորի բերդը (Հալիձորի Ս. Աստվածածնի Կուսանաց անապատը), կրոնական համալիրի և ամրոցի հորինվածքների հետաքրքիր զուգակցման շնորհիվ։ Կառուցված լինելով XVII դարի առաջին կեսում, Ղափանից ոչ հեռու, Հալիձորի անապատը նշանավոր դարձավ XVIII դարում՝ որպես Դավիթ-Բեկի ազատագրական պայքարի գլխավոր ամրոցը և Ղափանի անկախ իշխանության կենտրոնը։ Այս է պատճառը, որ գրականության մեջ հաճախ շփոթում են նրա կառուցման ժամանակաշրջանը և նշանակությունը՝ ընդունված է այն կարծիքը, որ Հալիձորի համալիրը կառուցել է Դավիթ-Բեկը 1720-ական թվականներին որպես բերդ։ Սակայն դա ճիշտ չէ։ Հալիձորի Կուսանաց անապատը հիշատակվում է դեռ 1653 թ. երբ «...Անապատիս մայրապետ Հռիփսիմէն... ընդօրինակեր զխորովու մեկնութիւնն ժամագրոց...»[42]։

---

[38] Նույն տեղում, էջ 253։

[39] Ստեփան Լիսիցյան, Զանգեզուրի հայերը, Երևան, 1969, էջ 47։

[40] Ալիշան, Սիսական, էջ 280։

[41] Նույն տեղում։

[42] Նույն տեղում, էջ 257։

1668 թ. անապատ այցելել է Զաքարիա Ագուլեցին՝ «...գնացինք Յալիձորու կուսանաց անապատն։ Սորայ հայրն է Տէր Միքայէլ։ Այս անապատումն կէր Հ կուսանք ապաշխարող»[43]։

Հալիձորը նորից հիշատակվում է 1711 թ.՝ Տաթևի վանքի առաջնորդ Առաքել վարդապետի եղեռնական սպանության առթիվ[44]։

1723 թ. Դավիթ-Բեկը Հալիձորի անապատը դարձնում է ազատագրված Ղափանի կենտրոն, վերակառուցելով այն անառիկ ամրոցի[45]։ Սակայն այդ տարիներին Հալիձորը մնում է և որպես մենաստան՝ 1727 թ. թուրքական բանակի կողմից Հալիձորի պաշարման ժամանակ պաշտպանությանը մասնակցել են «...ամենայն ժողովրդականին և կուսանք (զի էր անդ նաև Մենարան ինչ կուսանաց...)»[46]։

Ղափանի իշխանության անկումից հետո Հալիձորը դառնում է Մելիք-Փարսադանյանների «տոհմային բույնը» մինչև նրանց Բեխ գյուղ տեղափոխվելը[47]։

Այժմ երբեմնի հզոր բերդից շատ քիչ բան է պահպանվել՝ և Ղափանի անկախ իշխանության կենտրոնի բազմաթիվ կառուցվածքներից ավերակներ են մնացել, կիսով չափ կամ արդեն լրիվ հողածածկ։

Համակառույցն հատակագծում ունի անկանոն քառանկյուն ձև, որը բխում է տեղանքի պայմաններից։ Ունի երկու մուտք՝ հարավային և հյուսիսային պարիսպներում։ Անսամբլում գերիշխողը՝ թե տեղադրությամբ և թե չափերով, եկեղեցին է, որն անմշակ բազալտի խոշոր քարերից շարված բարձր պատերով լուսամուտների նեղ ճեղքերով ավելի ամրոցի է նման, քան պաշտամունքային կառուցվածքի։ Այդ տպավորությունն ուժեղանում է երկհարկ շինությունների ծավալներով, որոնք հյուսիսից և հարավից կից են եկեղեցուն և վերջինիս հետ միասնական հորինվածք են կազմում։ Այս առումով Հալիձորի բերդը տարբերվում է XVII—XVIII դարի մյուս մենաստաններից, որոնց եկեղեցիները համակառույցի մեջտեղում են և կանգնած առանձին։

Հալիձորի եկեղեցին ուղղանկյուն, արևելյան մասում աբսիդով և վերջինիս երկու կողմերում ավանդատներով կառուցվածք է, ծածկված կիսաշրջանաձև թաղով, առանց թաղակիր կամարների։

---

[43] «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 75։

[44] Ստ. Օրբելյան, էջ 528—529։

[45] Դաւիթ Բէգ։ Ընտիր պատմութիւն Դաւիթ Բէգին, եւ պատերազմաց հայոցն Խափանու-որք եղեն ընդ դէմ Թուրքաց ի մերում ժամանակի, այն է ժամի տեառն 1722—եւ հայոց 1171, Վաղարշապատ, 1871, էջ 20. (այսուհետև Դաւիթ Բէգ)։

[46] Նույն տեղում, էջ 49։

[47] Ստեփան Լիսիցյան, Զանգեզուրի հայերը, էջ 44։



2 0 2 4 6 8 10

Նկ. 6. Հալիձորի բերդ, գլխավոր հատակագիծը

Եկեղեցին չունի գավիթ կամ սրահ՝ նման այդ տիպի կառուցվածքների միջնադարում տարածված հորինվածքներին։ Այստեղ, եկեղեցու հյուսիսային և հարավային կողմերին կից երկհարկ շինությունների առաջին հարկերը փաստորեն գավիթների դերն են կատարում և եկեղեցու երկու մուտքերը բացվում են նրանց մեջ։ Եկեղեցուց հյուսիս կանգուն է ուղղանկյուն հատակագծով չորս մույթերով գմբեթածածկ մի շինություն, որը հավանաբար կառուցվել է որպես դամբարան։ Նման հորինվածքով դամբարաններ կան Աշտարակում և Սպիտակում, որոնք, սակայն, ավելի ուշ են կառուցված (XIX դ.)[48]։ Ամրոցն ունի շրջանաձև հատակագծով (արտաքին տրամագիծը 5 մ) մեկ բուրգ՝ հարավ-արևմտյան անկյունում։

Հարավային պարսպին դրսից կից կա ուղղանկյուն հատակագծով ոչ մեծ մի շինություն։ Սա որպես աշտարակ չէր կարող ծառայել, որովհետև պարսպապատից էլ ցածր է (երկրորդ հարկի հետքեր չկան) և չի հաղորդակցվում բերդի հետ։ Պետք է կարծել, որ սենյակը կառուցված է ոչ թե XVIII դարի նորոգումների ընթացքում, այլ ավելի վաղ և մենաստանի պահակատունն է եղել։

Հալիձորի բերդի ճարտարապետական անսամբլի առանձնահատկությունները վերաբերում են նրա ամրոցային բնույթին և այդ մասին կխոսվի պաշտպանական կառուցվածքների ենթագլխում։

* * *

Սյունիքի XVII դարի մյուս համալիրներից հիմնականում պահպանվել են միայն պաշտամունքային կառուցվածքները։ Այսպես, օրինակ, Մալևի Կուսանաց անապատից մնացել է միայն եռանավ բազիլիկան, Մեղրու վանքից՝ գմբեթավոր բազիլիկան և արևմուտքից կից կիսաքանդ գավիթը, Ջվարավանքից, Վահրավարի Կարմրավանքից՝ միայն թաղածածկ դահլիճները։ Եվ այժմ անհնար է խոսել այդ մենաստանների համալիրների սկզբնական հորինվածքների մասին ու վերլուծել նրանց անսամբլների ճարտարապետությունը։

XVII դարում Հայաստանում ոչ միայն կառուցվեցին նոր համալիրներ, կամ հները հիմնովին վերակառուցվեցին, այլև որոշ հին մենաստաններ լրացվեցին նոր շինություններով, ամբողջացավ նրանց անսամբլների ճարտարապետական կերպարը։ Պաշտպանական, բնակելի, կոմունալ, արտադրական, տնտեսական, ինժեներական կառուցվածքներ ստեղծվեցին թե՛ Արևելյան և թե՛ Արևմտյան Հայաստանի բազմաթիվ վանքերում (ս. Թովմայի,

---

48 *С. Х. Мнацаканян*, Архитектура армянских притворов, Ереван, 1952. стр. 101.

ս. Բարթուղիմեոսի վանքեր, Գեղարդ, Հոգոց վանք, ս. Թադեի վանք, Հովհաննավանք)։ Նման երևույթ տեղի ունեցավ և Սյունիքում, ուր բազմաթիվ կառուցումներ կատարվեցին երկու նշանավոր մենաստաններում՝ Գնդեվանքում և Տաթևի վանքում։ Գնդեվանքը գտնվում է Վայոց ձորում, Արփա գետի ձախ ափի լեռնալանջի ոչ մեծ մի հարթավայրի վրա, ձորի կողմից շրջապատված ուղղաձիգ ժայռերով։ Վանքը, ըստ շինարարական արձանագրության և պատմիչների վկայության, հիմնադրել և եկեղեցին կառուցել է Սոփյա Սյունյաց տիկինը 936 թ.։ Եկեղեցին գմբեթավոր քառաբսիդ կառուցված է, արևելյան կողմում երկու ավանդատներով։ Արևմտյան կողմում գտնվում է գավիթը՝ ուղղանկյուն թաղածածկ դահլիճ, որը կառուցել է վանքի առաջնորդ Քրիստափոր վարդապետը 999 թ. XVII դարում վերանորոգվել են եկեղեցին, գավիթը և վերակառուցվել պարիսպներն ու կից սենյակները։ Այդ մասին կա շինարարական արձանագրություն պարսպի արևմտյան մուտքի կամարակալ քարի վրա՝ «Շնորաւքն Այ, ես անարժան Պետրոս վարդապետս վերստին նորոգեցի Սբ. եկեղեցիս հանդերձ ժամատանօքս, շուրջանակի պարսպօք եւ ամարաթօք յամենայնի, յիշատակ հոգոց իմոյ եւ իմ ծնողացն. հօրն իմոյ Յովանիսին եւ մօրն Խանումին, թվին ՌՃԽ (1691)[49]։

Վանքի գլխավոր հատակագիծն անկանոն քառանկյունի է, արևելք-արևմուտք առանցքի ուղղությամբ ձգված։ XVII դարի կառուցվածքները կից են հարավային և արևմտյան պարիսպներին։ Մուտքերը երկուսն են՝ արևելյան պարսպում և հյուսիսային պարսպի արևելյան կողմում։ Հնագույն կառուցվածքները՝ եկեղեցին և գավիթը ազատ են կանգնած, XVII դարում նրանց կից ոչինչ չի շինվել։

Անսամբլի ողջ հորինվածքը շատ նման է նույն Վայոց ձորի մի այլ համալիրին՝ Շատին վանքին։ Երկուսում էլ հորինվածքի գերիշխողը պաշտամունքային կառուցվածքն է (արևմուտքից կից գավիթով), որը գտնվում է բակի կենտրոնում, առանձին կանգնած։ Երկուսն էլ ունեն պարսպապատերի նույն ուրվագիծը՝ արևելյանը, հարավայինը և արևմտյանը ուղիղ են, իսկ հյուսիսայինը բեկված։ Թե՛ Գնդեվանքում և թե՛ Շատին վանքում հարավային պարիսպը ուժեղացված է կիսաշրջանաձև բուրգերով և ներսի կողմից ունի կից կառուցված սենյակների շարք։ Երկու համալիրներում էլ այս պարիսպը միաժամանակ հենապատ է ծառայում, որի շնորհիվ թեքադիր վայրում կառուցված վանքը ներսում ունի համարյա հարթ բակ։ Սակայն անսամբլների ճարտարապետության ընդհանուր արտահայտչականությունը տարբեր է։ Եթե Շատինում բազիլիկայի հորինվածքը դրսից չէր երևում և մենաստանը, շնորհիվ բուրգերով ուժեղացված պարիսպների, ամրոցի տպավորություն է թողնում, ապա Գնդեվանքում վիճակն ուրիշ է։ Եկեղեցին ոչ միայն շնորհիվ

[49] Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 3, էջ 19։



Նկ. 7. Գնդեվանք, գլխավոր հատակագիծը

իր դիրքի դոմինանտ է գլխավոր հատակագծում, այլև գերիշխում է անսամբլի ողջ ուրվագծում։ Կենտրոնագմբեթ կառուցվածքի ուղղաձիգ ծավալը վեր բարձրացող թմբուկով և գմբեթով թե հեռվից՝ Արփայի ձորից և թե մատույցներից ընդգծում է համալիրի բնույթը, կազմակերպում վանքի արտաքին ուրվագիծը։ Այնպես որ, չնայած XVII դարի մեծաքանակ կառուցումներին, Գնդեվանքի ճարտարապետական ընդհանուր կերպարը մնում է հարազատ X—XIV դարերի հայկական մենաստանների անսամբլներին, որտեղ գերիշխողը ծավալների վերասլաց շեշտերն են։

Նման երևույթի մենք հանդիպում ենք և Տաթևի վանքում, Սյունիքի հոգևոր և մշակութային հռչակավոր կենտրոնում։

Տաթևի վանքը գոյություն է ունեցել դեռ վաղ միջնադարում, սակայն բուռն շինարարության շրջանը ընկնում է IX դարի վերջից մինչև XIII դարը, և երկարատև ընդմիջումից հետո՝ XVII—XVIII դարերը։ Այժմ պահպանված կառուցվածքները պատկանում են այդ երկու շրջաններին։ Տաթևի վանքի գլխավոր տաճարը՝ Պողոս և Պետրոս առաքյալներին նվիրված, հիմնադրվել են 895 և ավարտվել 906 թ.։ Տաճարը, որը կառուցել է Հովհաննես եպիսկոպոսը, պատկանում է առանձին գմբեթակիր մույթերով կառուցվածքների տիպին և միակ օրինակն է Սյունիքում[50]։ Տաճարին հարավից կից է Գրիգոր Լուսավորչի եկեղեցին՝ թաղածածկ մի դահլիճ, որը կառուցվել է 848 թ. և հիմնովին վերակառուցվել՝ 1285 թ. Ստ. Օրբելյանի կողմից։ Եկեղեցու առջև, գլխավոր տաճարի հարավային ճակատին կից է գավիթ-սրահը, կառուցված 1043 թ.։ Վանքի համալիրի հյուսիս-արևելյան անկյունում բարձրանում է Աստվածածնի երկհարկ դամբարան-եկեղեցին, կառուցված 1087 թ.։ Այս գմբեթավոր փոքրիկ եկեղեցին տեղադրված է վանքի գլխավոր մուտքի թաղածածկ միջանցքի և նրան հյուսիսից կից դամբարանի վրա։ Վանքի բակի հարավային կողմում կանգուն է Տաթևի նշանավոր գավազան-սյունը, որը, հավանաբար, կառուցված է IX դարի վերջին կամ X դարի սկզբին։

XIV դարի վերջին վանքը կողոպտվում է ու ավերվում Լենկթեմուրի հորդաների կողմից և նորից վերակենդանանում է միայն XVII դարում։ Տաթևի վանքի ծաղկման երկրորդ շրջանի շինարարական աշխատանքների մասին մանրամասն տեղեկություններ է տրվում «Շարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց արարեալ ի միաբանից Տաթեւոյ վանաց» ձեռագրում, որը որպես հավելված տպագրված է Ստ. Օրբելյանի «Պատմութիւն նահանգին Սիսական» աշխատությունում։

XVII դարի առաջին կեսում, «արար բազում ուղղութիւնս և շինութիւն ի սուրբ աթոռս» վանքի առաջնորդ Հովհաննես Շապանօղլին։ Նա արևելյան մասում կառուցում է նաև դահլիճ և նրան կից սենյակներ «թրաշ (տաշածոյ)

---

[50] Ս. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, Երևան, 1960, էջ 99։

քարի գեղեցկաձև յորինվածքով»: Ներսես եպիսկոպոսը բարեկարգում է վանքը և նոր շինություններ՝ արևմտյան կողմում խցեր և պատշգամբներ կառուցում: Սրա հաջորդը, Զաքարիա եպիսկոպոսը, կառուցում է առաջնորդարան և արևմտյան կողմում «ջերկար խցերն երկփեղկի հանդեպ միմյանց զգրունս»: Կիրակոս Աղուերձեցին նորոգում է տաճարի գմբեթը և Գաբրիել վարդապետի օգնությամբ կառուցում հյուսիսային պարիսպը և նրան կից ախոռը: Հովհաննես Տաթևացի Ղալամեանցը XVII դարի երկրորդ կեսում նորոգում է եկեղեցիների տանիքները, կառուցում գյուղատնտեսական և անասնապահական մի շարք շինություններ՝ կալ, հարդանոց, ախոռ, գոմ, շտեմարաններ:

XVIII դարի առաջին կեսում Մինաս Ճինաթաղեցին վերակառուցում է քանդված հյուսիսային պարսպապատը, նրան կից ախոռը և մինչև սեղանատուն բնակելի սենյակներ կառուցում: Նույն ժամանակաշրջանում Գասպար վարդապետը կառուցում է սեղանատունը, հացատունը և խոհանոցը: XVIII դարի երկրորդ կեսում Աբրահամ վարդապետը վերանորոգում է պարիսպները և վերակառուցում դպրոցի սենյակները արևելյան կողմում՝ «հարիւր տասն և մեկ կանգուն երկայնութեամբ հանդերձ տասն և վեց գեղեցկատիպ սենեկօք»: Հովակիմ արքեպիսկոպոսը XVIII դարի վերջում կառուցում է Աստվածածնի և ս. Գրիգոր եկեղեցիների մոտի բնակելի սենյակները, կից պատշգամբներով, երկու բուրգ՝ Աստվածածնի (մուտքի մոտ) և Գիրաքանց (XX դարում այն քանդվել է), պարիսպներից դուրս՝ ձիթահանքը: XIX դարի առաջին կեսում, Հայաստանը Ռուսաստանին միանալուց հետո, խաղաղ ժամանակաշրջանում վերանորոգվում են վանքի համարյա բոլոր շինությունները: 1896 թ. կառուցվում է Տաթևի նոր զանգակատունը, Պողոս-Պետրոս եկեղեցու արևմտյան ճակատին կից: 1931 թ. երկրաշարժից քանդվում են վաղ շրջանի բոլոր հուշարձանները՝ տաճարը, ս. Աստվածածնի եկեղեցին, գավիթ-սրահը: Համեմատաբար լավ են պահպանվում XVII—XVIII դարերի վերը նշված կառուցվածքները, որոնք ստանում են ճեղքվածքներ կամ քանդվում են նրանց որոշ մասերը:

Տաթևի վանքի համալիրի ողջ հորինվածքը, որը ամբողջացել է XVII—XVIII դարերի կառուցումների շնորհիվ, աչքի է ընկնում իր հարազատությամբ բնությանը, համապատասխանությամբ տեղանքին: Վանքը գտնվում է երեք կողմից ուղղաձիգ խոր ձորերով շրջապատված հրվանդանի վրա, որը մոտեցում ունի միայն հյուսիսից: XVII—XVIII դարերում բոլոր նոր շենքերը կառուցված են ձորերի պարագծով, ճշտորեն կրկնելով քարափների եզրագիծը, այնպես որ փայտե պահունակային պատշգամբները կախվում են ուղղակի անդունդի վրա:

IX—XIII դարերից պահպանված հուշարձանախումբը, որը կազմված է




Նկ. 8. Տաթևի վանք, գլխավոր հատակագիծ

իրար կից կառուցված երկու եկեղեցուց և սրահից, մնացել է համալիրի հարավային կողմում և հյուսիսից ու արևմուտքից ստացվել են ընդարձակ բակեր՝ տաճարին մոտենալու և մեծաքանակ բազմություն տեղավորելու համար։ Հետաքրքրական է, որ ուշ միջնադարում ոչ մի նոր կառուցվածք չեն կցել այդ հուշարձանախմբին, թողնելով ազատ և չաղավաղելով նրա նախնական կերպարը (միայն XIX դարի վերջին կառուցված զանգակատունն իր հսկայական չափերով և անմաշտաբ համաչափություններով խախտեց վանքի հիմնական հուշարձանախմբերի ծավալային հորինվածքը)։ XVII դարի կառուցվածքները գետնահար են, հարթ կտուրներով, չկա ոչ մի ուղղաձիգ ծավալ։ Ուշ միջնադարի շինարարները բավականին զգույշ և նրբանկատ են եղել՝ նրանց կառուցվածքները լոկ ֆոն են ծառայում ընդհանուր հորինվածքում, որում առաջվա պես գերիշխողը մնում է Պողոս-Պետրոսի վերասլաց գմբեթը։ Հետաքրքրական է և նոր մուտքի տեղադրությունը։ Մինչև XVII դարը վանքի հիմնական (գուցե և միակ) մուտքը հյուսիս-արևելյան անկյունից էր՝ ս. Աստվածածնի եկեղեցու տակի թաղակապ միջանցքով։ Սակայն այս մուտքը միանգամայն անտարբեր էր տեղադրված վանքի հիմնական կառուցվածքի՝ տաճարի և ընդհանրապես հուշարձանների նկատմամբ։ XVIII դարում, երբ վերակառուցվել է հյուսիսային պարիսպը և նրա երկու անկյուններում կառուցվել են բուրգերը, մուտք են բացել այս պարսպում։ Եվ նոր դարպասը գտնվում է ոչ թե հյուսիսային պարսպի մեջտեղում (որը սիմետրիկ կլիներ պարսպի և բուրգերի նկատմամբ), այլ կենտրոնից շեղված է դեպի արևմուտք՝ ուղիղ տաճարի գմբեթի առանցքով։ Նոր մուտքի թաղակապ միջանցքը մտնելիս, այցելուի առջև բացվում է տաճարի հյուսիսային ճակատը և այն պսակող գմբեթի սլացիկ թմբուկը ու հովանոցաձև վեղարը։ Ահա այսպիսի հնարքով XVII դարում շեշտել են Պողոս-Պետրոսի տաճարը, մոտեցումը դեպի վանքը կազմակերպել նոր՝ հյուսիս-հարավ առանցքով, նշանակետ դարձնելով գմբեթը։

Այս է պատճառը, որ XVII—XVIII դարերում Տաթևի վանքում կատարված շինարարական մեծ աշխատանքներից հետո, երբ ստեղծվել են բազմաթիվ և բազմապիսի կառուցվածքներ, անսամբլի հորինվածքը մնացել է միասնական, նորը և հինը դարձել են համահնչուն, իրար լրացնող, իսկ համալիրը, ամբողջովին վերցրած, մնացել է հարազատ բնությանը, ռելիեֆին։

* * *

Սյունիքի XVII դարի մենաստանների անսամբլների հորինվածքների վերլուծությունը ցույց է տալիս այն էական տարբերությունները, որոնք գոյություն ունեն նրանց և նախորդ շրջանի՝ X—XIV դարերի համալիրների ճարտարապետության միջև։

*Առաջին և կարևոր տարբերությունն այն է, որ Սյունիքի ուշ միջնադարի վանքերն ու անապատները կառուցված են համեմատաբար կարճատև ժամանակամիջոցում, ողջ հորինվածքի միասնական մտահղացումով։ Նախորդ շրջանի Հայաստանի ճարտարապետական անսամբլները ձևավորվել են դարերի ընթացքում։ Որպես օրենք, սկզբում կանգնեցվել է հիմնական կառուցվածքը՝ տաճարը կամ եկեղեցին, ապա որոշ ժամանակ անց ավելացվել գավիթ, սրահ կամ ժամատուն։ Անցել է ժամանակ, երևան են եկել նոր մեկենասներ, որոնք նոր տաճար են ավելացրել հնի կողքին, իր գավիթով։ Սրանց մոտ կամ կից կանգնեցվել են կրոնական և աշխարհիկ այլ կառուցվածքներ՝ սեղանատներ, գրատներ, զանգակատներ, մեմորիալ ճարտարապետական ձևեր և վերջապես այս բոլորը շրջապատվել են պարիսպներով։ Եկեղեցին կամ եկեղեցիները այս վանքերում հանդիսացել են հատակագծային հորինվածքի այն հիմնական տարրերը, որոնք հետագայում թելադրել են ամեն մի նոր կառուցվող շենքի դիրքը համալիրի տարածական լուծման մեջ[51]։ Սյունիքի ուշ միջնադարի համալիրները, ընդհակառակը, ստեղծվել են բոլոր շինությունների միաժամանակ կառուցումով, կրոնական, աշխարհիկ շենքերի, բնակելի, տնտեսական, պաշտպանական կառուցվածքների օրգանական միասնությամբ։*

*Երկրորդ, Սյունիքի XVII դարի վանքերն ու անապատներն ունեն միայն մեկ եկեղեցի, այն դեպքում, երբ Հայաստանի միջնադարյան վանքերի ճնշող մեծամասնությունը ունի մեկից ավելի պաշտամունքային կառուցվածք։ X—XIV դարերի վանքերում որպես ընդհանուր կանոն, յուրահատուկ է կառուցվածքների կուտակումը, համալիրները վեր են ածվում տարբեր ծավալների մի ընդհանուր զանգվածի[52]։ Սյունիքի ուշ միջնադարի անսամբլներում եկեղեցին հիմնականում ազատ է կանգնած, նա իր դիրքով և չափերով ողջ կառուցապատման հատակագծային տարածական հորինվածքի գերիշխող տարրն է, մյուս բոլոր կառուցվածքները անսամբլում նրա նկատմամբ ունեն ենթակա դեր[53]։*

*Շինարարական կյանքի կարճատև ժամանակամիջոցը՝ մեկ դարից էլ պակաս, նյութական դժվարությունները հնարավորություն չեն տվել այնպիսի աշխատատար և թանկ կառուցվածքներ, ինչպիսին եկեղեցիներն են, մեկից ավելի շինել ոչ միայն Սյունիքի նոր վանքերում, այլև Գնդեվանքում և Տաթևի վանքում (իսկ անապատներին, ինչպես տեսանք, հատուկ է ընդամենը մեկ*

---

51 *«Ակնարկ հայ ճարտարապետության պատմության», Երևան, 1969, էջ 225։*

52 *Նույն տեղում, էջ 218։*

53 *Սյունիքի XVII դարի կրոնական համալիրների ընդհանուր հորինվածքն (պաշտամունքային շենք՝ շրջապատված բնակելի, տնտեսական, աշխարհիկ այլ շենքերով) ունեն բյուզանդական Հունաստանի միջնադարի վանքերից մի քանիսը՝ Բեոթիայում, Մզեթիա և Դափնի վանքերը։*

*պաշտամունքային կառուցվածք ունենալը)։ Արարատյան դաշտի վանքերում դրությունն այլ է. XVII դարի համալիր Խոր-Վիրապը երկու եկեղեցի ունի, իսկ հինավուրց Ամենափրկիչ Հավուց-Թառում XVIII դարում նոր եկեղեցի են կառուցել։*

*Երրորդ, Սյունիքի XVII դարի համալիրներն աչքի են ընկնում պաշտպանական կառուցվածքների պարտադիր մասնակցությամբ ողջ հորինվածքում, որտեղ նրանք կարևոր դեր են խաղում։ Վանքերն ու անապատները փաստորեն մի-մի ամրոցներ են և պաշտամունքային ու պաշտպանական համալիրների այս զուգակցումը ստեղծել է վանք-ամրոց յուրօրինակ հորինվածքի ավարտուն ձևը։ Եթե համեմատելու համար վերցնենք Հաղպատը (ուր X—XIV դարերի այն սակավաթիվ վանքերից է, որի պաշտպանական կառուցվածքները ստեղծվել են այդ նույն դարերում), ապա կտեսնենք, որ բուրգերով ուժեղացված պարիսպները սոսկ շրջապատում են համալիրը ելնելով առաջին հերթին տեղանքի գծագրությունից, քան հիմնական հուշարձանների հետ միասնական հորինվածք ստեղծելու ձգտումից։ Հաղպատում պարսպապատերի հորինվածքը չի ելնում անսամբլի ողջ հորինվածքից, եթե այդ պաշտպանական գոտին մեզ հասած չլիներ, ապա Հաղպատը կշարունակեր մնալ որպես միջնադարյան ամենաարտահայտիչ և գունագեղ ճարտարապետական անսամբլներից մեկը։ Իսկ Սյունիքի ուշ շրջանի համալիրներում ընդհակառակն է՝ պաշտպանական կառուցվածքներն այնքան միասնական են մյուս շինությունների հետ և այնքան կարևոր դեր են խաղում ողջ հորինվածքում, որ նրանց վերացումով կդադարեր գոյություն ունենալ տվյալ համալիրի ճարտարապետական անսամբլը։*

*Այս կարևոր առանձնահատկություններից բացի, որը բնորոշ է Սյունիքի համալիրներին, վերջիններս ունեն մի այլ հատկանշական կողմ ևս, որը, սակայն, հատուկ է ուշ միջնադարի հայ ճարտարապետական համալիրներին ընդհանրապես։ Դա մենաստանում բնակելի շինությունների առկայությունն է, որոնք իրենց տեսակարար կշռով կարևոր տեղ են գրավում ողջ հորինվածքում։ Ավելի վաղ՝ X—XIV դարերի համալիրներից չկա մեկը, որի բնակելի սենյակները կամ խցերը հասած լինեն մեզ։ Մեր կարծիքով, այդ դարերում միաբանությունը բնակվել է ոչ թե մենաստանի սահմաններում, այլ նրանցից դուրս՝ գյուղում, ընդհանրապես վանքին կից բնակավայրում։ Նման երևույթ հանդիպում է և XVII դարում՝ Առաքել Դավրիժեցու մոտ որոշակիորեն նշվում է, որ միաբանները սեփական տներ ունեին վանքին կից բնակավայրերում[54]։ Սակայն XVII դարից սկսած բնակելի սենյակները կառուցել են*

[54] «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 272։

մենաստանների մեջ։ Այս վերաբերում է ոչ միայն այն համալիրներին, որոնք ստեղծվեցին այդ դարում, այլև ավելի հին վանքերին, որոնք վերանորոգվեցին և լրացվեցին բնակելի, օժանդակ շինություններով (Գնդեվանք, Տաթևի վանք, Գեղարդ, Հավուց-Թառ)։ XVII դարում ողջ անսամբլի արտահայտչական կողմը հետին պլան է մղված՝ առաջնային է գլխավոր հատակագծի ֆունկցիոնալ տեսակետից ճիշտ կազմակերպումը, ռացիոնալիզմը թե ողջ կոմպլեքսի, և թե նրա առանձին էլեմենտների հատակագծային-տարածական լուծման մեջ։

## Գլուխ երկրորդ

## ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ

XV—XVI դդ. պատերազմների ու ավերածությունների հետևանքով Հայաստանում ստեղծվեց տնտեսական ծանր դրություն, կանգ առավ շինարարությունը, դադարեցին առևտրական կապերը հարևան երկրների հետ, քայքայվեց գյուղատնտեսությունը, արհեստները։ Եվ երբ XVII դարում ստեղծվեց համեմատաբար բարենպաստ իրավիճակ ու Հայաստանում հրատապ խնդիր դարձավ համարյա յուրաքանչյուր գյուղում եկեղեցի կառուցելը, այդ ժամանակ առաջին հերթին դիմեցին պաշտամունքային կառուցվածքների պարզ տիպերին՝ միանավ թաղածածկ դահլիճի և եռանավ բազիլիկայի հորինվածքներին։

Միջնադարում, VII դարից հետո, երբ ճարտարապետական հիմնական տիպը կենտրոնագմբեթ կառուցվածքներն էին, թաղածածկ դահլիճներ ու եռանավ բազիլիկաներ այլևս չէին հանդիպում՝ որպես վաղուց անցած էտապ։ Սակայն, երբ «...արաբական արշավանքներից հետո կողոպտված ու քայքայված երկիրը նոր էր վերականգնում իր տնտեսությունը, ճարտարապետները նորից անդրադարձան պարզագույն տիպերին, թեկուզ հենց այն պատճառով, որ նրանց կառուցումը կապված չէր ոչ առանձին դժվարությունների և ոչ էլ նյութական խոշոր ծախսերի հետ»[1]։

Այս նույն երևույթը կրկնվեց Սյունիքում XVII դարում։ Թե գյուղամիջյա և թե վանքային համալիրների մեծ մասի եկեղեցիները կառուցվեցին վաղ միջնադարում հայ ճարտարապետությանը քաջ հայտնի այդ հորինվածքներով։

### ԹԱՂԱԾԱԾԿ ԴԱՀԼԻՃՆԵՐ

XVII դարում Սյունիքում թաղածածկ դահլիճի հորինվածքով են կառուց-

[1] Ս. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, էջ 133։

*ված Հալիձորի բերդի, Բեխի անապատի, Չվարավանքի, Կարմրավանքի (Մեղրի) եկեղեցիները։*

*Հալիձորի բերդի եկեղեցին ուղղանկյուն, արևելյան մասում աբսիդով և վերջինիս երկու կողմերում ավանդատներով կառուցվածք է, ծածկված կիսաշրջանաձև թաղով, առանց թաղակիր կամարների։ Մուտքերը երկուսն են՝ տեղավորված հյուսիսային և հարավային պատերում։ Լուսամուտները չորսն են, ընդ որում, հարավային պատի արևմտյան լուսամուտը հետագայում վերածվել է դռան՝ եկեղեցուն կից երկհարկանի շինությունների երկրորդ հարկից աղոթասրահի արևմտյան մասում շինված փայտե պատշգամբը մտնելու համար։*

*Աղոթասրահի պատի մեջ թողնված է 2 մ տրամագծով կլոր անցք, որի վրա բարձրացել է եկեղեցու զանգակատունը։ Այժմ տեղում պահպանվել է զանգակատան սյունաշարի խարիսխները։ Մեծ բացվածք ունեցող այս «երդիկը» լրացուցիչ լուսավորություն է ստեղծում աղոթասրահի համար, որն անհրաժեշտ էր մանավանդ կից շինությունների կառուցումից հետո եկեղեցու լուսամուտները ծածկելու հետևանքով։*

*Հալիձորի բերդի եկեղեցին տարբերվում է այդ ժամանակաշրջանի մյուս համալիրների եկեղեցիներից պատերի զգալի հաստությամբ՝ 1,60 մ։ Սա բացատրվում է ծածկի թաղի զգալի թռիչքով (6 մետրից ավելի) և թաղակիր կամարների ու որմնամույթերի բացակայությամբ։ Ինտերյերում աղոթասրահը թողնում է բավական ընդարձակ դահլիճի տպավորություն, որովհետև երկարության համեմատ լայնությունը մեծ է՝ հարաբերությունը կազմում է 1:1,54։ Այդ տպավորությանը նպաստում է և դահլիճի զգալի բարձրությունը՝ հատակից մինչև թաղի տակ 7,20 մ։*

*Բերդից 27 մ հեռու, արևմտյան կողմում կանգուն է Հալիձորի մյուս եկեղեցին՝ նույնպես թաղածածկ դահլիճ։ Հուշարձանը թե՛ հորինվածքով և թե՛ չափերով շատ մոտ է Հալիձորի բերդի եկեղեցուն։ Սակայն ունենալով հիմնականում միևնույն հորինվածքը, այս եկեղեցին բերդի եկեղեցուց տարբերվում է մի շարք հատակագծային և կոնստրուկտիվ առանձնահատկություններով։ Այստեղ աղոթասրահի գլանաձև թաղը ուժեղացված է թաղակիր կամարով, որը հանգչում է հյուսիսային և հարավային պատերի մեջտեղում տեղադրված հաստահեղույս որմնամույթերին կից որմնասյուների վրա։ Որմնամույթերից դեպի դահլիճի արևելյան և արևմտյան պատերն ընկած են կամարներ։ Միակ մուտքը տեղավորված է հարավային կողմում, հուշարձանի հարավ-արևմտյան անկյան մոտ։*

*Ուշադրություն է գրավում հյուսիսային ավանդատան դռան բարավորը, որն ավելի հին հուշարձանի քիվի բեկոր է և ունի բավական բարդ պրոֆիլով՝ գլանիկներով և ատամիկներով կորված։*



1 0 1 2 3 4 5

*Նկ. 9ա. Տանձափարախ, համալիրի ընդլայնական հատակագիծը*



1 0 1 2 3 4 5

*Նկ. 9բ. Տանձափարախ, եկեղեցու հատակագիծը.*

*Տանձափարախի եկեղեցին ուշագրավ է իր հատակագծային լուծման և ինտերյերի ծավալային մշակման հետաքրքիր առանձնահատկություններով։ Սա ուղղանկյուն, արևմուտքից արևելք ձգված կառուցվածք է, թաղածածկ, արևելյան մասում աբսիդի երկու կողմերում զույգ ավանդատներով։ Ինտերյերում երկայնական պատերը մասնատված են զույգ որմնամույթերով, որոնք զգալի՝ 1,50 մ չափով դուրս են գալիս պատերի հարթությունից և մխրճվում աղոթասրահի ներքին տարածության մեջ։ Մույթերի միջև՝ հյուսիսից հարավ*

ձգված են երկու թաղակիր կամար, որոնք ուժեղացնում են շեշտված սլաքաձև կտրվածքով թաղը։ Աղոթասրահի հիմնական՝ մույթերի միջև ընկած մասն ունի ձգված համաչափություններ, երկարության և լայնության հարաբերությունն է՝ 1:2,2։

Ամենահետաքրքրականը միջմույթային (արևելք-արևմուտք ուղղությամբ) տարածությունների ծածկի լուծումն է։ Եթե արևմտյան զույգ մույթերի և եկեղեցու արևմտյան պատի միջև ձգվում է 1,50 մ լայնությամբ թաղ, որի առանցքն ուղղահայաց է հիմնական թաղի առանցքին (այնպես, ինչպես Հալիձորի երկրորդ եկեղեցում), ապա մույթերի միջև և արևելյան մույթերի ու աղոթասրահի արևելյան պատի միջև ընկած տարածությունը ծածկված է թաղով, որը զուգահեռ է հիմնական թաղին ճիշտ այնպես, ինչպես եռանավ բազիլիկաներում։ Նմանությունն ուժեղանում է մանավանդ այս ուղղություններով աղոթասրահի կողմից գցված կամարների գոյությամբ, որը նման է եռանավ բազիլիկաների մեծ և փոքր նավերը բաժանող կամարաշարին։ Փաստորեն կտրվածքներում Բեխի եկեղեցին իրենից ներկայացնում է եռանավ բազիլիկա, որի մույթերը միացված են երկայնական պատերին և վերածված հզոր որմնամույթերի։

Տանձափարախը միանավ դահլիճի և եռանավ բազիլիկայի ճարտարապետական հորինվածքների զուգակցման մի եզակի օրինակ է Սյունիքի XVII դարի ճարտարապետության մեջ և, ինչպես կտեսնենք հետագայում, կարևոր մի հուշարձան է հարավային Սյունիքում այդ դարում այնքան տարածված որմնամույթերով թաղածածկ դահլիճի առաջացման պրոցեսում։ Այս անցումը կատարվել է երկու աստիճանով՝ եռանավ բազիլիկայի մույթերի միացումը երկայնական պատերին (Տանձափարախ) և ապա փոքր նավերի՝ մեծ նավի թաղին զուգահեռ թաղերի փոխարինումը որմնամույթերի և պատերի միջև գցված, հիմնական թաղի առանցքին ուղղահայաց թաղերով (Ջվարավանք, Կարմրավանք և այլն)։

Լիճքի Ջվարավանքը թաղածածկ ուղղանկյուն դահլիճ է, երկթեք ծածկով և արևելյան մասում աբսիդի երկու կողմերում զույգ ավանդատներով։

Ինտերյերում աղոթասրահի երկայնական պատերից դուրս են գալիս երկու զույգ հզոր մույթեր, որոնց միջև և դեպի եկեղեցու արևմտյան ու բեմի պատը գցված են կամարներ։ Սրանք ավելի շուտ թաղեր են հանդիսանում, շնորհիվ իրենց զգալի լայնության՝ 1,50 մ։ Մույթերի միջև՝ եկեղեցու երկայնական առանցքին ուղղահայաց ընկած են զույգ թաղակիր կամարներ, որոնք ձուլվում են մույթերին աղոթասրահի կողմից կից որմնասյուներին։ Մույթերը և թաղակիր կամարները հուշարձանի ինտերյերը բաժանում են երեք մասի, որոնցից երկուսը հավասար են միմյանց, իսկ երրորդը՝ արևելյանը կարճ է։ Մույթերի միջև երկայնական պատերին կից ստացվում են թաղածածկ խորշեր, որոնք

*զգալի մեծացնում են աղոթասրահի ինտերյերը՝ խորշի գագաթը գտնվում է 3,70 մ բարձրության վրա։*

*Կարմրավանքի եկեղեցին ավելի փոքր է (9,45×14,50)։ Աբսիդի երկու կողմերում գտնվող ավանդատները լայնացված են ի հաշիվ եկեղեցու հյուսիսային և հարավային պատերի։ Միակ դուռը հարավ-արևմտյան անկյունում է՝ հարավային պատի մեջ բացված։ Լուսամուտները (աղոթասրահում թվով չորսը) երկայնական պատերում են։ Ի տարբերություն համանման մյուս հուշարձանների՝ արևմտյան ճակատում լուսամուտ չկա՝ թեքադիր տեղանքի պատճառով արևմտյան պատը լրիվ թաղված է հողի մեջ։*

*Ինտերյերում, դահլիճի հյուսիսային և հարավային պատերում, հատակից մոտ 4 մ բարձր պահպանվել են թաղի կառուցման համար օգտագործված փայտե տախտակամածի գերանների բները՝ 20×15 սմ չափի անցքեր։ Պատերի շարվածքի տեխնիկան, քարի մշակումը, կոնստրուկցիաները նույնն են, ինչ և Ջվարավանքում։*

*Սյունիքի XVII դարի հուշարձաններին հատուկ է թաքստոցի իրականացումը տանիքի տակ՝ թաղի և կտուրի միջև։ Բայց այս տիպի թաքստոցներ կառուցվել են միայն բազիլիկաներում։ Ուսումնասիրվող դահլիճում հանդիպում ենք թաքստոցի մեկ դեպքի՝ Կարմրավանքում, որը, սակայն, իրականացված է բեմի հատակի տակ։ Այստեղ, ամբողջ մակերեսով կա մի թաղածածկ տարածություն, որը հատակագծում կրկնում է բեմի կոնֆիգուրացիան։ Մուտքը բեմի աստիճանների տակից է և դրսից կարող է փակվել ու քողարկվել մեկ ամբողջական քարով։ Աբսիդի արևմտյան կողմում թողնված է օդափոխության անցք, որը վերևում դուրս է գալիս բեմի հատակի երեսը և միանգամայն աննկատ է։*

*Կարմրավանքի ու Ջվարավանքի ճարտարապետական հորինվածքն ունեն Մեղրու շրջանի Ագարակ, Թոս, Մալև, Ափկես գյուղատեղերի եկեղեցիները, որոնք տարբերվում են միմյանցից միայն չափերով։*

*Մեղրու շրջանի ուսումնասիրվող դահլիճները կառուցված են պարզ, անպաճույճ՝ համարյա առանց որևէ դեկորատիվ հարդարանքի։ Միջոցների աղքատությունը ստիպել է կառուցողներին ուշադրություն դարձնել միայն շինության ուտիլիտար, ֆունկցիոնալ կողմի վրա։*

*Եկեղեցիներն արտաքինից ուղղանկյուն ծավալ են ներկայացնում, երկթեք ծածկով, կառուցված կիսամշակ բազալտից։ Պատերի հարթությունների միապաղաղ ֆոնը խախտվում է միայն նեղ լուսամուտների ճեղքերով։ Մուտքերը զուրկ են դեկորատիվ միջոցներից և կառուցված են մաքուր տաշած քարերից։ Համեմատաբար խոր արտաքին ուսմնակամարը ստեղծում է լույս ու ստվերի խաղ և դրանով միայն ընդգծում կառուցվածքի մուտքը։ Միակ դեկորատիվ էլեմենտները քարե խոյի գլուխներն են, որոնք հագցված են կառուցվածքների արևմտյան ճակատում (Մեղրի, Վահրավար, Տաշտուն)։*






Նկ. 10ա. Կարմրավանք, ընդերկայնական կտրվածքը։






Նկ. 10բ. Կարմրավանք, Հատակագիծը

Որմնամույթերով դահլիճներն իրենց չափերով չեն զիջում, նույնիսկ որոշ դեպքերում գերազանցում են XVII դարի Սյունիքի եռանավ բազիլիկաներին։ Օրինակ, Ջվարավանքի, Ագարակի եկեղեցիների ներսի լայնությունը (համապատասխանաբար 8,60 և 8,75 մ) հավասար է Մեղրու փոքր թաղի և Մալևի անապատի եռանավ բազիլիկաների լայնությանը, իսկ Մեղրու և Տաշտունի գմբեթավոր բազիլիկաներից մեծ են թե՛ լայնությամբ և թե՛ երկարությամբ։ Համեմատական վերլուծության համար հարմար է վերցնել Ագարակի և Մալևի եկեղեցիները, որովհետև այս երկուսի դահլիճի ներսի չափերը համարյա համընկնում են։ Սա խոսում է այն մասին, որ նույն չափի տարածությունը եթե եռանավ բազիլիկայի դեպքում ծածկվում է առանձին կանգնած մույթերի և երեք թաղի օգնությամբ, ապա որմնամույթերով դահլիճների դեպքում միայն որմնամույթերի ու միաթռիչք թաղի միջոցով։ Երկրորդ դեպքում մենք ունենք ճարտարապետական-կոնստրուկտիվ ավելի հաջող լուծում։ Սեյսմակայունության տեսակետից էլ այս տիպն ունի մեծ առավելություն, որովհետև բացակայում են սեյսմիկ տեսակետից ամենաթույլ հանգույցները՝ առանձին կանգնած հենակետերը։ Իսկ որմնամույթերն իրենց հերթին ընդերկայնական հյուսիսային և հարավային համեմատաբար թույլ պատերին տալիս են լրացուցիչ կոշտություն և միաժամանակ զգալի բեռնաթափում են վերջիններին, որովհետև գլխավոր թաղի ծանրությունը և թաղի հրող ուժը միջմույթային թաղերի միջոցով հիմնականում հանձնվում են որմնամույթերին։ Այս հանգամանքը թույլ է տալիս արտաքին պատերն իրականացնել ավելի բարակ, քան եռանավ բազիլիկաներում։

Համեմատությունը ցույց է տալիս, որ նույն չափերն ունեցող երկու տարբեր տիպի հուշարձաններում՝ եռանավ բազիլիկայում և որմնամույթերով դահլիճում, երկրորդի դեպքում պատերի շարվածքը ստացվում է 15%-ով պակաս։ Շարվածքի 1/6-ի չափով տնտեսումը և պատերի կոնստրուկցիայի համապատասխան թեթևացումը զգալի առավելություն է՝ կոնստրուկտիվ և էկոնոմիկական տեսակետից։

Ուտիլիտար-ֆունկցիոնալ տեսակետից նույնպես որմնամույթերով դահլիճի հորինվածքը գերադասելի է։ Օրինակ՝ Ագարակի եկեղեցու ներքին մակերեսի՝ 106 մ²-ից լիարժեք է (այն մակերեսը, որից երևում է բեմի սեղանը) 74,0 մ², այսինքն մոտ 70 տոկոսը, իսկ Մալևի եռանավ բազիլիկայի 110 մ²-ից միայն 58 մ² (մոտ 53 տոկոսը)։

Ճարտարապետական-գեղարվեստական տեսակետից մեկ միասնական ներքին տարածությունը, հարստացված որմնամույթերով ու որմնախորշերով, ավելի արտահայտիչ է և ազդեցիկ, քան երկու շարք մույթերով ջլատված եռանավ բազիլիկաների ինտերյերը։

Հայ ճարտարապետության հարուստ գանձարանում որմնամույթերով դահլիճի ստեղծման համար բավականաչափ նախատիպեր կային։ VII դա-

րում հանդիպում ենք որմնամույթերով դահլիճի օրինակի, բայց ոչ թե պաշտամունքային, այլ աշխարհիկ ճարտարապետության մեջ՝ դա Զվարթնոցի կաթողիկոսական պալատի դահլիճն է։

Հայ ճարտարապետները արդեն VI դարի երկրորդ կեսում և VII դարի սկզբում կարողանում էին ծածկել տաճարների մեծ թռիչքները քարե թաղերով, խուսափելով միջանկյալ առանձին կանգնած հենակետերից։ Այդ ժամանակ է, որ Հայաստանում երևան է գալիս միաթռիչք թաղով եկեղեցու նոր տիպ, ավարտված գմբեթով՝ «գմբեթավոր դահլիճները»։ Միանգամայն նոր հատակագծային-տարածական հորինվածքով իրականացված այս հուշարձաններից են Պտղնիի, Արուճի տաճարները։

Եթե համեմատելու լինենք գմբեթավոր դահլիճների և որմնամույթերով թաղածածկ եկեղեցիների հատակագծային լուծումները, կտեսնենք, որ այս երկուսը հար և նման են միմյանց։

Ինչպիսին է առաջին տիպի կառուցվածքի հորինվածքը։ Այս տիպի եկեղեցին մեծ դահլիճ է երկու զույգ հզոր մույթերով, որոնք դուրս են գալիս երկայնական պատերի հաստությունից։ Մույթերի միջև ձգվում են կամարներ և թաղեր (հյուսիսային և հարավային պատերի երկարությամբ), որոնք անկյունային տրոմպներով գմբեթատակ քառակուսու հետ միասին ծառայում են որպես հիմք գմբեթի թմբուկի համար։ Մույթերից դեպի արևելյան ու արևմտյան պատերի լայն որմնասյուները ձգվում են գլանաձև թաղեր։ Դահլիճի մույթերով առաջացած երեք թռիչքները ծածկվում են կիսաշրջանաձև թաղերով, արևելքից հորինվածքն ավարտվում է բեմի աբսիդով, որի երկու կողմերում կան ավանդատներ։ Շողակաթում վերջիններս ունեն ուղղանկյուն հատակագիծ։

Որմնամույթերով թաղածածկ եկեղեցին հատակագծում նույնպես հյուսիսային և հարավային պատերից դուրս եկող երկու հզոր զույգ մույթերով դահլիճ է։ Ընդերկայնական ուղղությամբ մույթից մույթ և մույթերից դեպի արևելյան ու արևմտյան պատերը ձգվում են կիսագլանաձև թաղեր։ Մույթերով երեք մասի բաժանված ներքին տարածությունը ծածկվում է թաղով, որը ուժեղացվում է թաղակիր կամարներով։ Արևելյան մասում գտնվում է բեմի աբսիդը, երկու կողմերում ուղղանկյուն հատակագիծ ունեցող ավանդատներով։

Եթե անտեսենք գմբեթավոր դահլիճի գմբեթից բխող կոմպոզիցիոն առանձնահատկությունները (մույթերի միջև եղած հավասար հեռավորությունները), դժվար չէ տեսնել, որ գմբեթավոր դահլիճի և որմնամույթերով դահլիճի հատակագծային և որոշ չափով ներքին տարածական լուծումները համարյա համընկնում են։

Այսպիսով, XVII դարում հարավային Սյունիքում վերցնելով գմբեթավոր

սրահի հորինվածքը (հատակագծային լուծումը լրիվ, իսկ ծավալայինը՝ մասամբ առանց գմբեթի), թաղածածկ դահլիճի էվոլյուցիայով (Հալիձոր, Բեխ), ստացան թաղածածկ դահլիճի մի նոր ենթատիպ՝ որմնամույթերով դահլիճ։ Եվ պաշտամունքային կառուցվածքներ այս հորինվածքով հանդիպում են Սովետական Հայաստանի տերիտորիայում միայն Սյունիքում, իսկ իր ավարտուն ձևով՝ Մեղրու շրջանում։

## ԵՌԱՆԱՎ ԲԱԶԻԼԻԿԱՆԵՐ

Հայաստանի XVII դարի ճարտարապետության հետաքրքրական առանձնահատկությունը եռանավ բազիլիկաների մասսայական կառուցումն է։ Միայն Սյունիքում՝ Վայոց ձորում և Զանգեզուրում XVII դարում և XVIII դարի առաջին տարիներին կառուցվել է մոտ չորս տասնյակ եռանավ բազիլիկա։

Այստեղ ուշագրավն այն է, որ եռանավ բազիլիկան, լինելով Հայաստանում քրիստոնեության ընդունման ժամանակաշրջանում առաջին և հիմնական տիպը՝ պաշտամունքային կառուցվածքների համար, մինչև VII դարը իր տեղը զիջեց նոր հորինվածքներին՝ գմբեթավոր բազիլիկաներին, գմբեթավոր սրահներին, կենտրոնագմբեթ կառուցվածքներին։ VII դարից սկսած բազիլիկայի դասական հորինվածքը՝ երկթեք ծածկով թաղակապ կառուցվածք, ներսում երկու շարք կամարներով երեք նավի բաժանված, այլևս չի կիրառվում Հայաստանում շուրջ հազար տարի։ Միայն XVII դարում, ճարտարապետական և շինարարական կյանքի նոր վերելքի տարիներին են Հայաստանում դիմում հայ ճարտարապետության համար վաղուց անցած էտապ հանդիսացող եռանավ բազիլիկայի հորինվածքին։ Եթե համեմատենք Հայաստանում քրիստոնեության ընդունման առաջին տարիները XVII դարի Հայաստանի իրավիճակի հետ, կտեսնենք, որ առաջին հայացքից ոչ մի ընդհանրություն չունեցող այս ժամանակաշրջանները շինարարական-ճարտարապետական կյանքի բնագավառում ունեն մի շարք ընդհանուր կետեր։ IV դարում, երբ երիտասարդ քրիստոնեական պետությունում՝ Հայաստանում, օրվա հրատապ խնդիրն էր կարճ ժամանակամիջոցում կործանված բազմաթիվ հեթանոսական մեհյանների փոխարեն ժողովրդի համար անհրաժեշտ քանակությամբ նոր կրոնի սրբավայրեր՝ քրիստոնեական տաճարներ կառուցելը, հայ ճարտարապետները դիմեցին թաղածածկ դահլիճի և եռանավ բազիլիկայի հորինվածքներին։ Սակայն թաղածածկ դահլիճի թաղի թռիչքի չափի սահմանափակության պատճառով հնարավոր չէր այդ հորինվածքով զգալի ներքին տարածություն ստանալ՝ մեծ թվով հավատացյալներ տեղավորելու համար։ Այս պահանջը բավարարում էր եռանավ բազիլիկայի հորինվածքը, որի հիմնական կոնստրուկտիվ տարրերը՝ թաղը, կամարը,

*մույթը վաղուց ծանոթ էին հայ կառուցողներին: Այս է պատճառը, որ Հայաստանի խոշոր կրոնական կենտրոններում, մայրաքաղաքներում քրիստոնեական տաճարները կառուցվեցին եռանավ բազիլիկայի հորինվածքով: XIV—XVI դարերում պատերազմները և անթիվ ավերածությունները կործանեցին Հայաստանի շատ կրոնական կենտրոններ, վանքեր և առանձին պաշտամունքային կառուցվածքներ: XVII դարում, համեմատական խաղաղության տարիներին անհրաժեշտ էր ոչ միայն վերականգնել ավերված հուշարձանները, այլև կառուցել նոր վանքեր և բազմաթիվ եկեղեցիներ՝ բնակչության տեղաշարժերի հետևանքով առաջացած նոր բնակավայրերի և այն գյուղերի համար, որոնց պաշտամունքային կառուցվածքները հնարավոր չէր վերականգնել[2]: Ինչպես և տասներեք դար առաջ, կարճ ժամանակամիջոցում բազմաթիվ եկեղեցիներ կառուցելու համար դիմեցին թաղածածկ դահլիճին և հիմնականում, եռանավ բազիլիկայի տիպին: Պետք է նշել, որ Հայաստանի միակ քրիստոնեական հարևան երկրում՝ Վրաստանում նման երևույթ տեղի չունեցավ: XV—XVIII դարում բազիլիկաների դասական տիպը չի հանդիպում նաև ուղղափառ եկեղեցիներում (Ռուսաստան, Ռումինիա, Սերբիա, Բուլղարիա):*

*Մի շարք հետազոտողներ՝ տարակուսանքով նշելով XVII դարում Հայաստանում եռանավ բազիլիկայի «վերածննդի» փաստը, շեշտում են, որ այս հորինվածքը վաղուց (հազար տարուց ավելի) մոռացված էր հայ ճարտարապետության մեջ[3]: Սակայն դա ճիշտ չէ: Եռանավ բազիլիկայի դասական տիպը չէր մոռացվել և այն օգտագործվել էր հայ ճարտարապետության օրգանական մասը կազմող Կիլիկիայի ճարտարապետության մեջ XI—XIV դարերում: Եռանավ բազիլիկա է XII դարի սկզբում կառուցված Անարզաբայի Զորավարանց եկեղեցին, XII դարի վերջին և XIII դարի սկզբին կառուցված Կոռիկոսի պարիսպներից դուրս գտնվող եկեղեցին: Պետք է նկատի ունենալ, որ մինչև XV դարի կեսը հայոց կրոնական կենտրոնը Կիլիկիայում էր գտնվում և կաթողիկոսական աթոռանիստը Սիսն էր: Հայաստանը Կիլիկիայի հետ կապված լինելով մշակութային-կրոնական կապերով, շարունակեց այդ կապերը պահպանել հետագայում ևս Սսի կաթողիկոսության հետ, երբ արդեն Կիլիկիայի անկախ հայկական պետությունը գոյություն չուներ: Ինչպես հետո կտեսնենք,*

*2 Այրարատում XVII—XIX դարերում փոքր գմբեթավոր եկեղեցիներին կցել են բազիլիկատիպ աղոթասրահներ (Եղվարդ, Երևան, Աշտարակ): Սյունիքի ուշ միջնադարի բազիլիկաները ոչ թե փոխարինում էին հին շենքին, կամ լրացնում եղածը, այլ նոր պահանջների հիման վրա կառուցված նոր շենքեր էին:*

*Սյունիքում XVII դարում բազիլիկաներ կառուցվեցին այն բնակավայրերում, որոնք եկեղեցի չունեին կամ եղածը արդեն շատ փոքր էր, աճած բնակչության համար (օրինակ Ալայազ), և խոշոր վանքերին կից գյուղերում (Գնդեվազ, Տաթև): Եռանավ բազիլիկաների կառուցումը համընդհանուր երևույթ էր Սյունիքում:*

3 *А. Л. Якобсон*, Очерк истории зодчества Армении V-XVII веков, М.-Л., 1950.

Սյունիքի XVII դարի եռանավ բազիլիկաների հորինվածքը շատ մոտ է Կիլիկիայի այդ շրջանի համանման կառուցվածքներին։ XVII դարում Սյունիքի համալիրներում եռանավ բազիլիկայի հորինվածքով են կառուցված Շատին վանքի, Կնեվանքի, Տաթևի Մեծ անապատի, Շնհերի Կուսանաց, Հալիձորի Հարանց, Մալևի անապատների եկեղեցիները։ Նշելով Սյունիքում՝ Վայոց ձորում և Զանգեզուրում եռանավ բազիլիկաների տարածված լինելը, Յակոբսոնը տարակուսանք է հայտնում այս փաստի նկատմամբ, նշելով, որ «...Հայաստանի արևելյան շրջաններում հին հայկական բազիլիկաներ ընդհանրապես հայտնի չեն»։ Այնինչ հենց այս շրջանում է գտնվում հայ ճարտարապետության վաղ շրջանի հետաքրքիր և ինքնատիպ հուշարձաններից մեկը՝ Ծիծեռնավանքի եռանավ բազիլիկան։ Ծիծեռնավանքը գտնվում է Գորիսի շրջանի Խնածախ գյուղից երեք կմ հյուսիս-արևելք։ Բազիլիկայի ուղղանկյուն, ձգված դահլիճը չորս զույգ մույթերով կամարաշարքերով բաժանվում է երեք նավի։ Աբսիդը և կից երկու ավանդատները արևելքից ունեն ընդհանուր պատ և բազիլիկայի եռանավ մասի հետ օրգանական ամբողջություն են կազմում։

Հին Հայաստանի բազիլիկաների ամենավաղ օրինակների՝ Քասաղի, Տեկորի, Եղվարդի, Դվինի հուշարձանների աբսիդները դուրս են գալիս արևելյան պատի հարթությունից, ավանդատներ չկան, եղածներն էլ հետագայի հավելվածներ են։ XVII դարի եռանավ բազիլիկաների հատակագծային հորինվածքը նման է ոչ թե այս՝ ամենավաղ շրջանի կառուցվածքներին, այլ Աշտարակի և Ծիծեռնավանքի բազիլիկաներին, որոնք ունեն ուղղանկյուն հատակագիծ և ավանդատները, աբսիդը ու դահլիճը գտնվում են ընդհանուր ծավալային հորինվածքի մեջ։

Այսպիսով ակնհայտ է դառնում, որ Սյունիքի XVII դարի ճարտարապետների համար եռանավ բազիլիկան անծանոթ ու խորթ ճարտարապետական հորինվածք չէր և նրանք աչքի առջև ունեին այդ տիպի վաղ կառուցվածքներից մեկը՝ Ծիծեռնավանքը, որը մինչև այսօր էլ կանգուն է և շահավետ տարբերվում է վաղ միջնադարի մյուս բոլոր բազիլիկաներից համեմատաբար լավ վիճակով։

Սակայն XVII դարի եռանավ բազիլիկաները ունեն շատ էական տարբերություններ IV—VII դարերի կառուցվածքների համեմատ։ XVII դարում բազիլիկաների ներքին կառուցվածքը երեք նավի է բաժանվում երկու զույգ մույթերի միջոցով, իսկ մի քանի դեպքում կիրառված է նույնիսկ մեկ զույգ մույթ (Կնեվանք, Շնհեր)։ Մույթերի այսպիսի նվազագույն քանակը բնորոշ չի հայկական ճարտարապետության վաղ շրջանի հուշարձաններին (XVII դարի բազիլիկաներին ավելի մոտ կանգնած Ծիծեռնավանքի և Աշտարակի հուշարձանները համապատասխանաբար ունեն չորս և երեք զույգ մույթ)։ XVII դարի բազիլիկաների աղոթասրահները (և կառուցվածքներն ընդհանրապես) ավելի քիչ են ձգված, չունեն դեկորատիվ քանդակներ, խոյակներ,

պարակալներ, չեն հանդիպում սյունասրահներ, շքամուտքեր, ճակտոններ, որմնախարիսխներ։ Սյունիքի XVII դարի անսամբլների եռանավ բազիլիկաները իրենց համաչափություններով, ներքին ծավալային լուծմամբ առնչվում են հայկական Կիլիկիայի նմանատիպ հուշարձաններին։ Համեմատության համար վերցնենք Կիլիկիայի Անարզաբայի եկեղեցին։ Սա երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկա է, արևելյան մասում կիսաշրջանաձև աբսիդով և զույգ ավանդատներով։ Աբսիդը և կից սենյակն արևելքից ունեն մեկ ընդհանուր պատ և ողջ ծավալի հետ միասնական հորինվածք են կազմում։ Նավերը թաղակապ են, ծածկը երկթեք։ Ձևավորումը համեստ է, ինտերյերում չկան դեկորատիվ էլեմենտներ։ Աղոթասրահը համաչափություններով մոտենում է քառակուսուն։ Այս բոլորը հատուկ է և XVII դարի եռանավ բազիլիկաներին (միայն Անարզաբայի եկեղեցին արևելյան ճակատում ունի զույգ որմնախորշեր, որոնք XVII դարում չեն հանդիպում)։

Սյունիքի ճարտարապետական անսամբլներում երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկաներ են Շատին վանքի, Տաթևի Մեծ անապատի, Հալիձորի Հարանց և Մալևի անապատների եկեղեցիները։

Տաթևի Մեծ անապատի եկեղեցին կառուցված է տեղական մուգ-կապտավուն սրբատաշ բազալտից և լավ է պահպանված։ Աղոթասրահը, աբսիդը և ավանդատները պարփակված են միասնական ուղղանկյուն ծավալի մեջ և ծածկվում են երկթեք տանիքով։ Դահլիճը զույգ մույթերով երկու կամարաշարով բաժանվում է մեկ մեծ և երկու փոքր նավերի։

Նավերը ծածկված են կիսաշրջանաձև թաղերով, որոնք ուժեղացված են թաղակիր կամարներով։ Գլխավոր թաղի կամարները հանգչում են կամարաշարի T-աձև մույթերի դեպի գլխավոր նավը ելնող ուղղանկյուն որմնասյուների իմպոստների վրա, իսկ փոքր նավերի թաղակիր կամարները՝ մույթերի և երկայնական պատերի վրա եղած կալունակների վրա։ Կամարաշարքերը արևելյան և արևմտյան կողմերում հանգչում են աբսիդի և եկեղեցու արևմըտյան պատին կից որմնասյուների վրա։ Երեք կամարների թռիչքները միմյանց հավասար են։

Աբսիդը կիսաշրջանաձև է և պատի մեջ ունի որմնախորշեր, թվով հինգը։ Աբսիդի երկու կողմերում տեղադրված ավանդատները ունեն ուղղանկյուն հատակագիծ և ծածկված են կիսաշրջանաձև թաղով։

Հուշարձանն ունի երեք մուտք՝ արևմտյան պատում, ընդերկայնական առանցքի ուղղությամբ և հարավային ու հյուսիսային պատերում՝ տեղադըրված դահլիճի երկայնական պատերի մեջտեղում։

Լուսավորությունն իրականացվում է կամարակապ, դեպի ներս գզալի լայնացող լուսամուտների միջոցով, որոնք երկայնական պատերում տեղադըրված են կամարաշարի կամարների առանցքի ուղղությամբ։ Նման լուսամուտ-

*ներ ունեն աբսիդը և ավանդատները (մեկական)։ Այս առումով հետաքրքրական է արևմտյան պատը։ Այստեղ մուտքի վերևի լուսամուտից բացի, դրան կողքին՝ միջին թաղի մեջ բացվող, կա մեծ (0,95 մ լայնությամբ) կամարակապ մի լուսամուտ։ Արևմտյան ճակատում այսպիսի ասիմետրիկ տեղադրված լուսամուտ հանդիպում է XVII դարի բազիլիկաներից միայն Հալիձորի Հարանց անապատի եկեղեցում։*

*Տաթևի Մեծ անապատի եկեղեցու պատերը զուրկ են զարդաքանդակներից։ Կառուցվածքի ծավալը որոշ չափով աշխուժանում է դահլիճի մեջտեղում՝ մեծ նավի թաղի մեջ բացված երդիկի վրա կանգնեցված զանգակատան ռոտոնդայով։*

*Բազալտե հարթ պատերը, առանց որևէ դեկորատիվ շեշտերի, թողնում են բավականին խիստ տպավորություն։ Սակայն կառուցողներն աշխատել են բազիլիկային գեղարվեստական արտահայտչականություն տալ հատակագծային և տարածական հորինվածքների համաչափությունների ներդաշնակությամբ։*

*Ինչպես XVII դարի անսամբլների քաղաքացիական շենքերում, կառուցվածքի հիմնական չափերը որոշակի հարաբերության մեջ են գտնվում նրա լայնության հետ (ներսի)։*

*Տաթևի Մեծ անապատի բազիլիկայի ներսի լայնության (12,24 մ) մեկ քսաներորդական մասը ծառայում է որպես մոդուլ, և կառուցվածքի չափերի հիմքում ընկած է պարզ թվերի հարաբերությունը։ Այսպես, բազիլիկայի դահլիճի լայնությունը հարաբերում է երկարությանը (մոդուլներով արտահայտված) ինչպես 20:30։ Մեծ նավի լայնությունը հարաբերում է դահլիճի լայնությանը՝ ինչպես 9:20, փոքր նավինը՝ 4:20, ավանդատան երկարությունը՝ 6:20, կամարաշարի մույթերի բարձրությունը հատակից մինչև իմպոստի վերևը՝ 5:20։*

*Միմյանց հետ որոշակի մոդուլային հարաբերության մեջ են գտնվում նաև շենքի առանձին մասերի չափերը՝ փոքր և մեծ նավերի լայնությունները՝ 4:9, մեծ նավի և որմնամույթի լայնությունները՝ 1,5:9, ավանդատան և դահլիճի երկարությունները՝ 6:30, որմնամույթի և փոքր նավի լայնությունները՝ 1,5:4, գլխավոր նավի լայնությունը և պատերի հաստությունը՝ 2,25:9, գլխավոր նավի և մուտքի լայնությունները՝ 3:9։*

*Ի տարբերություն վաղ միջնադարի բազիլիկաների, որտեղ մոդուլային համակարգը տարածվում է կառուցվածքի համարյա բոլոր չափերի վրա[4], Տաթևի Մեծ անապատում այն ընդգրկում է միայն մի քանի չափ։ Բայց, չնայած դրան, կարելի է ասել, որ այստեղ ամբողջի և առանձին մասերի չափերի*

[4] Ա. Սահինյան, *Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը։*




Նկ. 11ա. Տաթևի Մեծ անապատի Աստվածածին եկեղեցին, ընդլայնական կտրվածքը։




Նկ. 11բ. Հատակագիծը։

փոխադարձ կախվածությունը եղել է կառուցողների ուշադրության կենտրոնում և հատակագծային կառուցվածքի հիմքում ընկած պարզ թվերի հարաբերությունը պատահական չէ։ Այս երևում է ոչ միայն համալիրի սեղանատան համաչափություններում, այլ, ինչպես հետո կտեսնենք, նույնիսկ միաբանության խցերի հատակագծային և ծավալային հորինվածքում։ Ամբողջի և առանձին մասերի ներդաշնակ հարաբերությունները այնքան մեծ դեր են խաղացել Տաթևի Մեծ անապատի ողջ անսամբլի և նրա առանձին կառուցվածքների չափերի մեջ, որ մեկ դար հետո, երբ բազիլիկային կցել են սրահ-գավիթը, ապա վերջինիս լայնությունը (երկարությունը հավասար է եկեղեցու լայնությանը, իսկ բարձրությունը՝ բազիլիկայի ընդհանուր բարձրությանը) նույնպես պարզ հարաբերության մեջ են դրել դահլիճի լայնության չափի հետ՝ 1:2, իսկ գավթի լայնությունը և երկարությունը հարաբերում են ինչպես 3:5։

Տաթևի Մեծ անապատի բազիլիկան ունի հիմնականում Հալիձորի Հարանց անապատի եկեղեցու հորինվածքը, որի պատճառը, ինչպես նշվեց, բացատրվում է Տաթևի Մեծ անապատի որպես Հարանց անապատի ժառանգորդ լինելով։ Սակայն այս երկու հուշարձանները տարբերվում են չափերով, կոնստրուկտիվ ձևերով, որոշ մանրամասներով, համաչափություններով։ Այսպես, Հալիձորում կամարաշարի մույթերը ոչ թե T-անման են, այլ խաչաձև, կամարների թռիչքները անհավասար են՝ արևելյան կամարներն ավելի կարճ են։ Փոքր նավերի ծածկի թաղերի թաղակիր կամարները մի կողմից հանգչում են դեպի փոքր նավերն ուղղված, մույթերին կից որմնասյուների վերևի իմպոստների վրա, իսկ մյուս կողմից՝ երկայնական պատերին կից կալունակների վրա։ Հալիձորի բազիլիկան 1658 թ. երկրաշարժից հետո ենթարկվել է վերանորոգման, որի ժամանակ վերակառուցվել են կամարաշարքի կամարներից մի քանիսը։ Հարավային կամարաշարքի արևմտյան կամարը կարճացել է արևմտյան պատին կից որմնամույթի չափը մեծացնելու հետևանքով։ Նույն պատճառով փոքրացվել են և կամարաշարքերի միջին կամարները։ Սակայն կամարների բարձրությունները պահված են նույնը։

Հյուսիսային ավանդատան պատի մեջ, նույնպես հետագայում, դուռ է բացված դեպի բազիլիկայի հյուսիս-արևելյան կողմում կից կառուցված թաղակապ սենյակը, որը դրսի հետ չի հաղորդակցվում։ Սա եզակի դեպք է Սյունիքի XVII դարի հուշարձաններում։

Մալևի Կուսանաց անապատի եռանավ բազիլիկան ունի նույն հորինվածքը՝ երկու զույգ մույթերով կամարաշարքեր, ուղղանկյուն հատակագիծ, երկթեք ծածկ։ Սակայն տեղանքի թեքության պատճառով արևմտյան պատը կիսով չափ խրված է հողի մեջ, որի հետևանքով այս պատում, եկեղեցու երկայնական առանցքով մուտք չի բացված։ Դռներ կան միայն երկայնական պատերում, մեկական։ Սրանով Մալևի բազիլիկան տարբերվում է Սյունիքի





Նկ. 12ա. Հարանց անապատ, ընդլայնական կտրվածքը։






Նկ. 12բ. Հատակագիծը։

կոմպլեքսների մյուս եռանավ բազիլիկաներից, որոնք ունեն յուրաքանչյուրը երեք մուտք։ Մույթերը T-անման են։ Փոքր նավերի թաղերի թաղակիր կամարները ձուլվում են երկայնական պատերի և մույթերի հարթությունների հետ։ Չունեն խմպոստներ և կամարաշարքի կամարները։ Մալևի բազիլիկայում չորս մույթերի միջև եղած հեռավորությունը, ընդլայնական և ընդերկայնական ուղղություններով նույնն են, այսինքն մույթամիջի կամարների թռիչքներն իրար հավասար են։ Ստացվում է գմբեթատակ քառակուսի և առանց որևէ դժվարության կարելի էր այդ բազիլիկան ավարտել որպես գմբեթավոր բազիլիկա (հավանաբար եկեղեցու շինարարությունը սկսել են այս նկատառումով, բայց հետագայում ինչ-ինչ պատճառներով հրաժարվել են)։

Շատին վանքի եռանավ բազիլիկան, ունենալով նույն հատակագծային-տարածական հորինվածքը, վերը նշված հուշարձաններից տարբերվում է դեկորատիվ հարդարանքի առկայությամբ, որին նպաստել է վանքի տնտեսական բարվոք վիճակը։ Սրբատաշ բազալտից կառուցված Շատինի բազիլիկան տարբերվում է XVII դարի մյուս բազիլիկաներից նաև իր համաչափություններով։ Շատինում ճակատը բավականին թեք է՝ եթե Տաթևի անապատում ճակատի բարձրությունը հարաբերում է շենքի լայնությանն ինչպես 1:3 (i=1,5), ապա Շատինում այն հավասար է 1:4 (i=1,9)։ Բազիլիկայի երկթեք տանիքի համեմատաբար մեծ թեքությունը պատճառաբանված է միջին և փոքր նավերի բարձրությունների զգալի տարբերությամբ։ Սրա հետևանքով մեծ և փոքր նավերի թաղերի միջև, երկթեք ծածկի տակ թունելանման թաքստոցներ են թողնված, որոնք միջանցքի նման ձգվում են շենքի ամբողջ երկարությամբ՝ արևելքից-արևմուտք։ Նրանք կարևոր կոնստրուկտիվ դեր են խաղում՝ ազատում են այդ հանգույցներում ստացվող բուտոբետոնի ավելորդ զանգվածից և բեռնաթափում ծածկի թաղերն ու կամարները։

Տաթևի Մեծ անապատում նման թաքստոցներ չկան, որովհետև փոքր նավերը հնարավորին չափ բարձր են արել՝ այդ տեղում ստացվող լիցքի զանգվածը նվազագույնի հասցնելով։

Արժե մանրամասն խոսել Շատինի բազիլիկայի թաքստոցների մասին, որովհետև լինելով բնորոշ XVII դարի հուշարձանների համար, միաժամանակ ունեն մի շարք հետաքրքրական առանձնահատկություններ։ Նրանց մուտքերը տարբեր տեղերից են՝ հյուսիսայինը ձախ ավանդատան պատում գտնվող խորշից է, դեպի հարավայինը մուտք կա աբսիդի հինգ խորշերից մեկից՝ աբսիդի լուսամուտից ձախ տեղադրված։ Այս խորշը արտաքուստ ոչնչով չի տարբերվում մնացածներից և ունի նույն չափերը։ Սակայն խորշի վերևում կա անցք, որը տանում է աբսիդի և հարավային ավանդատան արանքում եղած բուտոբետոնի զանգվածի մեջ իրականացված ուղղաձիգ անցքը։ Սա պարագծով ունի եզրակոսներ և նույն չափերն ունեցող քարե շարժական սա-






Նկ. 13ա. Շատին վանքի Սիոն եկեղեցին, ընդլայնական կտրվածքը։






Նկ. 13բ. Հատակագիծը։

լով հորանցքի կողմից կարող է փակվել՝ միանգամայն աննկատ դարձնելով թաքստոցի մուտքը։

Անցքն ունի ուղղանկյուն հատակագիծ (1,0×1,4) և 3,75 մ բարձրություն։ Պատերի հարթությունից դուրս են գալիս քարե նլուստներ, որոնք իբրև աստիճաններ են ծառայում։ Վերևում հորանցքը լայնանում է երկու կողմերի հարթակների շնորհիվ և ստացվում է մի փոքրիկ սենյակ, որը գտնվում է գմբեթարդի ու ավանդատան թաղի արանքում։ Սենյակի արևելյան պատի միջից բացվում է թունելանման թաքստոցի դուռը։ Այս դատարկ տարածությունները կոնստրուկտիվ նշանակությունից բացի ունեն և ուտիլիտար, գործնական նշանակություն. նրանք լրացուցիչ պահեստներ, հիմնականում դաղտնի թաքստոցներ են վանքերի համար, թշնամիների և ավազակների հաճախակի արշավանքների ժամանակ վանական ունեցվածքը պահելու, նույնիսկ մարդկանց պատսպարելու նպատակով։ Նման թաքստոցներ ունեն Մալևի, Շնհերի Կուսանաց անապատի, Մեղրու, Լեռնաձորի բազիլիկաները։

Ի տարբերություն Սյունիքի XVII դարի մյուս համալիրների եկեղեցիների, Տաթևում ուշադրություն է դարձվել արտաքին ճակատների և ինտերյերի դեկորատիվ մշակման վրա։ Արտաքին ճակատներում այդ համեմատաբար թույլ է արտահայտված։ Պատերը լուծված են զուսպ հարթություններով։ Արևմտյան գլխավոր ճակատում՝ դռան վերևում, պատի մեջ հագցված են երկու խաչքարեր՝ (մեկը մարմարյա), իսկ նույն առանցքի վրա գտնվող միջին նավի լուսամուտը ընդգծված է երեսակալով. այս բոլորով շեշտվում է ճակատի կենտրոնական առանցքը։ Արևելյան ճակատի լուսամուտները նույնպես ունեն երեսակալներ, ավելի բարդ պրոֆիլով։ Այս դեկորատիվ տարրերը որոշ չափով աշխուժացնում են սրբատաշ բազալտից շարված պատերի հարթությունները։

Ինտերյերում աբսիդն ունեցել է որմնանկարներ, երեք տարբեր սյուժեներով, որոնց տակ համապատասխանաբար գրված է «Ոտնալուայ, Վերնատուն, Քարընկեց»։ Որմնանկարներից միայն վերջինն է նշմարվում՝ մանկան գլուխ, երկու կողմերում թևեր (հրեշտակների նման պատկերումը հատուկ է XVIII—XIX դ. հայկական որմնանկարչությանը)։ Որմնանկարները կատարված են տեմպերայով, աբսիդի խորշերից վեր։

XVII դարում երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկաների հորինվածքը համաչափություններով ավելի քիչ է ձգված, քան հայ ճարտարապետության վաղ շրջանի համանման հուշարձաններում։ Սակայն բազիլիկայի երկարության կրճատման տենդենցը XVII դարում իր ցայտուն արտահայտությունը գտավ մեկ զույգ մույթերով բազիլիկաներում։ Այս ենթատիպը նորույթ էր հայ ճարտարապետության մեջ, չունենալով իր նախորդները։ Առաջին հայացքից կարելի է կարծել, որ կամարաշարքի կամարների կրճա-




*Նկ. 14ա. Շնհերի Կուսանաց անապատ, համալիրի ընդլայնական կտրվածքը։*




*Նկ. 14բ. Շնհերի Կուսանաց անապատ, եկեղեցու հատակագիծը։*

տումը սոսկ մեխանիկական երևույթ էր։ Սակայն այն բերում է բազիլիկայի կառուցվածքի համաչափությունների այնպիսի փոփոխության, որը միանգամայն նոր որակ է ստեղծում։

Զույգ մույթերով եռանավ բազիլիկաներ XVII դարի համալիրներում հանդիպում են Կնեվանքում և Շնհերի Կուսանաց անապատում։ Երկուսն էլ ունեն նույն հորինվածքը, համարյա նույն համաչափությունները և չափերը։ Սակայն առաջինը վատ է պահպանվել՝ քանդված են պատերի մի մասը և ծածկը։ Շնհերի հուշարձանն ամբողջովին կանգուն է և անաղարտ պահպանված։ Բացի այդ վերջինս ունի և շինարարական արձանագրություն, որով պարզվում է կառուցման ճիշտ ժամանակը և ճարտարապետը։

Շնհերի անապատի բազիլիկան ուղղանկյուն հատակագծով, դահլիճը, զույգ ավանդատները և աբսիդը մեկ ընդհանուր ծավալի մեջ ներառված կառուցվածք է, երկթեք տանիքով ծածկված։ Ներքին տարածությունը չլատվում է երեք նավի երկկամար երկու կամարաշարքերով։ Կամարները հանգչում են զույգ, խաչաձև կտրվածքով մույթերի խոյակների վրա։ Մեծ նավի միակ թաղակիր կամարը նստում է մույթերին կից որմնասյուներին, իսկ փոքր նավերի թաղակիր կամարները (մեկական)՝ մույթերին և երկայնական պատերին կից որմնասյուների խոյակների վրա։

Դասական եռանավ բազիլիկաների ինտերյերի հիմնական էմոցիոնալ ազդեցությունը կայանում է պաշտամունքային կառուցվածքի կարևորագույն մասի՝ բեմի առանցքի ընդգծումը բազմաթիվ զույգ կամարաշարքերի միջոցով, որոնց հեռանկարի կենտրոնում գտնվում է բեմի սեղանը։ Մույթերի և կամարների երկար շարքը հայացքը տանում է դեպի աբսիդը, ստեղծում շարժում դեպի առաջ և այս էֆեկտն առանձնապես ուժեղանում է բազիլիկաների հիմնական մուտքը ընդերկայնական առանցքով՝ արևմտյան պատում տեղադրելու հետևանքով։ Շնհերի բազիլիկայում նման ոչինչ գոյություն չունի՝ երկու կամարը շարք չեն ստեղծում և բազիլիկաներին բնորոշ՝ ընդերկայնական առանցքի շեշտում չի ստացվում։ Սրան խանգարում է նաև միակ մուտքի տեղադրությունը՝ այն բացված է հարավային պատի արևմտյան անկյունում։ Աղթամարահի հատակագիծը մոտ է քառակուսուն և ինտերյերում մեկ զույգ մույթերով բազիլիկաները ավելի շատ թողնում են թաղածածկ դահլիճի տպավորություն, նրանք ծավալային համաչափություններով ավելի մոտ են հարավային Սյունիքում XVII դարում տարածված որմնամույթերով դահլիճներին։

Այս տիպի բազիլիկաների առաջացման համար, մեր կարծիքով, որոշիչ եղել է միայն տնտեսական հարցը։ Թե՛ Կնեվանքը և թե՛ Շնհերի անապատները փոքր համալիրներ են, նվազագույն քանակի կառուցվածքներով՝ եկեղեցի, պարիսպ, բնակելի խցեր (Շնհերի սեղանատունն ուշ է կառուց-

վել)։ Այս բոլորը ցույց են տալիս վանքերի XVII դարում ունեցած տնտեսական հնարավորությունները։

Ինչպես նշվեց, Շնհերի և Կնեվանքի եկեղեցիների ներքին տարածությունը հատակագծում համարյա քառակուսու համաչափություն ունի՝ լայնության և երկարության հարաբերությունը կազմում է ընդամենը 1:1,1 (երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկաներում այն ամենաքիչը հավասար է 1:1,5)։ Սակայն Շնհերի եկեղեցին ներքին հորինվածքի մի շարք այլ համաչափություններով նման է մյուս բազիլիկաներին։ Այսպես, փոքր և մեծ նավի լայնությունների հարաբերությունը կազմում է 1:2 (Տաթևի, Մալևի, Շատինի բազիլիկաներում նույնպես 1:2), մեծ նավի լայնության և երկարության հարաբերությունը՝ 1:2,6 (Շատինում՝ 1:2,7, Տաթևում և Մալևում՝ 1:1,3), մեծ նավի բարձրության և երկարության հարաբերությունը՝ 1:1,7 (Տաթևում 1:1,55, Մալևում 1:1,65, Շատինում՝ 1:1,6)։

Կնեվանքի եկեղեցու կենտրոնական մուտքը արևմուտքից է։ Այն շեշտված է երկու կողմերում սիմետրիկ տեղադրված խաչքարերով (ինչպես և Շնհերի եկեղեցում) և զույգ կալունակներով։ Վերջիններս զգալի դուրս գալով պատի հարթությունից, ուժեղ շեշտեր են հանդիսանում արևմտյան ճակատում և լույս ու ստվերով ընդգծում են արևմտյան մուտքը. դռան նման շեշտումը կալունակներով հանդիպում է Սյունիքի վաղ շրջանի այլ հուշարձաններում (Տեղի, Վերիշենի միանավ բազիլիկաներում և Ծիծեռնավանքում)։

Ուշ միջնադարի Սյունիքի կոմպլեքսների եռանավ բազիլիկաներն իրենց հորինվածքով, համաչափություններով, կառուցապատման տեխնիկայով նման են բնակավայրերում առանձին կանգնած համանման կառուցվածքներին։ Անգեղակոթի, Բռնակոթի (Սիսիանի շրջան), Քարահունջի (Գորիսի շրջան), Լեռնաձորի (Ղափանի շրջան), Գնդեվազի (Վայոց ձոր) բազիլիկաների ուսումնասիրությունը պարզորոշ ցույց է տալիս այդ ընդհանրությունը։

Երկու զույգ մույթերով երեք նավի բաժանված այս կառուցվածքները, ընդհանուր երկթեք տանիքով ծածկված իրենց հատակագծային-տարածական հորինվածքով, արտահայտչական ձևերով չեն տարբերվում համալիրների եկեղեցիներից։ Համարյա բոլորն էլ ունեն T-աձև մույթեր, մուտքերն հնարավորության դեպքում բացվում են թե երկայնական՝ հյուսիսային և հարավային պատերում, և թե արևմտյան պատում, բեմի առանցքով։ Մույթերը, որմնամույթերը, կամարները իրականացված են սրբատաշ քարից (բազալտ), պատերը, թաղերը՝ կիսամշակ բազալտից։ Հատակագծային համաչափությունները տատանվում են 1:1,33 (Գնդեվազ) մինչև 1:1,47 (Անգեղակոթ Բռնակոթ)։ Հուշարձանների ընդհանուր շարքում այս վերջին երկուսը տարբերվում են ոչ միայն հորինվածքի ձգվածությամբ ընդերկայնական առանցքի շուրջը, այլև ավանդատների ձևով։ Եթե մյուս բոլոր բազիլիկաները (համա-








*Նկ. 15. Անհերմոնի վանքի ս. Գրիգոր եկեղեցին, ա. ընդլայնական կտրվածքը բ. Հատակագիծը։*

*չիրներում և առանձին կառուցված) ունեն ուղղանկյուն հատակագծով ավանդատներ, ապա Անգեղակոթի և Բռնակոթի եկեղեցիների ավանդատները արևելքում վերջանում են աբսիդով։ Նման հորինվածք չի հանդիպում ընդհանրապես XVII դարի Հայաստանի եռանավ բազիլիկաներում։*

*Կնեվանքի և Տաթևի մեկ զույգ մույթերով եռանավ բազիլիկաների հորինվածքը XVII դարում տարածված է եղել Վայոց ձորում՝ Հոստուն, Ջուլ, Ախտա գյուղատեղերում գտնվող նույն դարին պատկանող եկեղեցիներն ունեն ճիշտ նույն հորինվածքը։*

*Սյունիքի եռանավ բազիլիկաների այս ձևերը հանդիպում են և Հայաստանի այլ նահանգներում, օրինակ Այրարատում, Շիրակում։ Կարբիի, Գառնիի, Երևանի երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկաները իրենց հորինվածքով չեն տարբերվում Սյունիքի կառուցվածքներից, Այրարատում հանդիպում են և մեկ զույգ մույթով բազիլիկաներ (Երևանի Զորավոր)։ Փաստորեն միակ տարբերությունը շինանյութն է՝ եթե Սյունիքում բազալտ է, ապա Այրարատում՝ տուֆաքար։*

*XVII դարի եռանավ բազիլիկաները ունենալով որոշ տարբերություններ (հիմնականում համաչափություններում) Հայաստանի վաղ միջնադարի բազիլիկաների համեմատությամբ, միևնույն ժամանակ հիմնական հարցերում՝ հատակագծային և ծավալային հորինվածքներով, կառուցվածքի արտահայտչականության ստացման միջոցներով սերտ առնչվում են նրանց հետ։ Այդ հարազատությունը հնավանդ ձևերին ավելի ցայտուն երևում է վերջին հարցում՝ երկու դեպքում էլ կառուցվածքի գեղարվեստական արտահայտչականությունը ստացվում է ոչ թե դեկորով, այլ ողջ կառուցվածքի և նրա առանձին մասերի հարմոնիկ համաչափություններով, ծավալների միասնական լակոնիկ լուծմամբ, ներքին հորինվածքի և արտաքին ծավալային լուծման համապատասխանությամբ։ Եվ չի կարելի համաձայնվել այն հետազոտողների հետ, որոնք գտնում են, որ ոչ մի ընդհանրություն չկա IV—VII և XVII—XVIII դարերի Հայաստանի բազիլիկաների միջև*[5]*։*

*XVII դարի բազիլիկաները մեծ հետաքրքրություն են ներկայացնում պատմական և ճարտարապետական առումով։ Նրանք կարող են օգնել վաղ շրջանի եռանավ բազիլիկաների հատակագծային-ծավալային հորինվածքի որոշ հարցերի լուսաբանմանը։ Միաժամանակ տեսանք, որ XVII դարի կառուցվածքները հնավանդ ձևերի մեխանիկական կրկնությունը չէին։ Սյունիքի համալիրների այդ հուշարձանները, իրենց հերթին, եռանավ բազիլիկայի հորինվածքի հետագա զարգացման օրինակներ են և նույնպես մեծ արժեք են ներկայացնում հայ ճարտարապետության պաշտամունքային հուշարձանների տիպերի պատմության լրիվ պատկերը ստանալու համար։*

[5] *А. Л. Якобсон*, Очерк истории зодчества Армении V-XVII веков, стр. 151., *Н. Г. Буниатов, Ю. С Яралов*, Архитектура Армении, стр. 126.

Սյունիքի XVII դ. ճարտարապետության առանձնահատկություններից մեկն այն է, որ հուշարձանների ճնշող մեծամասնությունը կառուցված է առանց գմբեթի՝ որպես թաղածածկ դահլիճներ կամ եռանավ բազիլիկաներ։

Այս երևույթն ունի մի շարք պատճառներ։ Առաջին և ամենակարևորը տնտեսական պատճառն է։ XVII դ. երբ երկիրը, օգտվելով կարճատև խաղաղությունից, վերականգնում էր քայքայված տնտեսությունը, վերակառուցում ավերված աշխարհիկ, ճարտարապետական և պաշտամունքային կառույցվածքները, նպատակահարմար էր կիրառել համեմատաբար պարզ հորինվածքներ։

Երկրորդ պատճառը շինանյութերի խնդիրն էր։ Սյունիքում ինչպես X—XIV դդ. այնպես էլ XVII դարում հիմնական շինանյութը բազալտն էր, որպես տեղում ամենաշատ տարածված և ամենամատչելի քար։ Կիսամշակ բազալտե քարերից են կառուցված Սյունիքի XVII դարի համարյա բոլոր եկեղեցիները։ Իսկ եկեղեցու գմբեթներն իրականացնել տաշված բազալտից՝ նշանակում էր զգալի միջոցների ներդրում, տեխնիկական դժվարություններ և շինարարության տևողության երկարում։ Երրորդ պատճառը՝ շինարարական արվեստի որոշ տրադիցիաների, վարպետության կորուստն էր Հայաստանում, որը նույնպես հետևանք էր շինարարական կյանքի երկու դար տևած ընդմիջման։

Ահա թե ինչու XVII դարի հայ ճարտարապետները խուսափում էին գմբեթավոր կառույցվածքներից, մի տիպից, որն ամենատարածվածն էր հայ ճարտարապետության նախորդ շրջանում՝ VII—XIV դդ.։ Ամբողջ Սյունիքում հանդիպում ենք միայն երեք գմբեթավոր եկեղեցու, այն էլ Մեղրիում (Եղեգնաձորի շրջանի Արկազի ս. Խաչ գմբեթավոր բազիլիկան հիմնովին վերակառուցվել է ավելի ուշ՝ XIX դարում)։ Այս հուշարձաններից երկուսի՝ Մեղրու վանքի և Մեծ թաղի եկեղեցիների գմբեթները իրականացված են աղյուսից։ Կառուցելով բազիլիկաների հիմնական ուղղանկյուն ծավալը տեղական բազալտից, շինարարներն այս ծավալի վրա դրել են աղյուսաշեն գմբեթներ, որոնց կառուցումն ավելի դյուրին է, էժան և արագ, քան բազալտի օգտագործման դեպքում։ Այս երեք եկեղեցիներից հատակագծային-ծավալային լուծմամբ առանձնանում է Մեղրու Մեծ թաղի եկեղեցին։ Մյուս երկուսը՝ Մեղրու վանքի ու Տաշտունի եկեղեցիներն ունեն համարյա նույն չափերը և հորինվածքը՝ ուղղանկյուն ծավալ, երկթեք ծածկով, որի վրա ուղղակի բարձրանում է գմբեթը (Տաշտունի եկեղեցու գմբեթը քանդվել է 30-ական թվականներին)։

Ներսում, արևմուտքից արևելք ձգված դահլիճը բաժանվում է 3 նավի՝ երկու զույգ մույթերով, որոնք իրենց ուղղանկյուն կտրվածքով և դասավորու-




*Նկ. 16ա. Մեղրու վանքի ս. Հովհաննես եկեղեցին, ընդլայնական կտրվածքը։*



1 0 1 2 3 4

*Նկ. 16բ. Հատակագիծը։*

թյամբ սովորական եռանավ բազիլիկայի մույթեր են և բոլորովին նման չեն գմբեթավոր կառուցվածքի մույթերի։ Միջին նավն ավելի բարձր է և ընդերկայնական պատերը բարձրանում են մույթերից դեպի դահլիճի հյուսիսային ու հարավային պատերը ձգվող կամարների վրա։

Տաշտոնի և Մեղրու վանքի եկեղեցիներում երեք նավերն էլ մեջտեղում հատվում են աղոթասրահի առանցքին ուղղահայաց թաղով, որն ունի նույն բարձրությունը, ինչ միջին նավը։ Թաղի պատերը հենվում են մույթերից դեպի հյուսիսային և հարավային պատերն ընկած կամարների վրա։ Փաստորեն հատակագծում ստացվում է խաչաձև գմբեթավոր եկեղեցու հորինվածքը, որը, սակայն, հուշարձանի ծավալային լուծման մեջ բոլորովին չի արտահայտվում։

Այս հուշարձաններում գմբեթատակ քառակուսին տեղադրված է ճիշտ դահլիճի կենտրոնում (մույթերից դեպի արևելյան և արևմտյան պատերն ընկած կամարների թռիչքները հավասար են ), որի հետևանքով դրսից՝ հյուսիսային և հարավային կողմերից նայելիս, գմբեթը թվում է տեղադրված դեպի արևմուտք։

Մեղրու վանքի գմբեթը բարձրանում է գմբեթատակ քառակուսուց առագաստային անցման միջոցով ստացված քարե օղակից, որն ուղղակի դուրս է գալիս տանիքի երկթեք ծածկի միջից։ Թմբուկը ներսից գլանաձև է, դրսից բազմանկյուն՝ 12 նիստով։ Գմբեթը թե ներսից և թե դրսից գնդաձև է։ Դժվար է ասել, այն դրսից բրգաձև ծածկ ունեցել է թե ոչ, որովհետև այսպիսի ծածկի հետքեր չեն պահպանվել։ Մեղրու վանքում բազիլիկայի ուղղանկյուն ծավալի հետ գմբեթը օրգանապես չի կապվում, ճարտարապետական միասնական հորինվածք չի ստեղծում։ Կառուցվածքի գմբեթավորման այսպիսի եղանակի ոչ օրգանական բնույթն ավելի է ակնհայտ Տաշտոնի եկեղեցու օրինակով, որտեղ գմբեթը քանդված է և արտաքուստ ոչնչով հնարավոր չէ եզրակացնել, թե այդպիսին գոյություն է ունեցել։ Տաշտոնի և Մեղրու նշված հուշարձաններում գմբեթի անհրաժեշտությունը չի բխում կառուցվածքների տարածական հորինվածքներից։ Այս երկու հուշարձանների արտաքին տեսքն անհետաքրքիր է՝ կիսամշակ բազալտե քարերից կառուցված ուղղանկյուն խուլ ծավալներ, լուսամուտների փոքր ճեղքերով, դռան պարզունակ բացվածքով ու երկթեք ծածկով։ Մեղրու վանքի ինտերյերը մշակված է աղյուսի դեկորատիվ որմնակամարներով։ Խորշերը բեմի աբսիդում երկշարք են, ընդ որում վերևի շարքը բեմի հատակից մոտ 3 մ բարձրության վրա է գտնվում և հետևաբար ունի զուտ դեկորատիվ բնույթ։ Խորշերի, որմնակամարների սլաքաձևությունը խիստ շեշտված է։

Մեղրու Մեծ թաղի ս. Աստվածածնի գմբեթավոր բազիլիկան առանձնանում է առաջին հերթին իր բացարձակ չափերով և ավելի է ձգված արևելք-արևմուտք ուղղությամբ։ Հատակագծային հորինվածքը նույնն է, բայց կա

տարբերություն համաչափությունների մեջ, որը և զգալի ազդում է հուշարձանի ընդհանուր կերպարի վրա։ Միջին նավը կողքի նավերի համեմատ բավականին լայն է՝ նրանց հարաբերությունը կազմում է 1:4,5 (մյուս երկու հուշարձաններում՝ 1:1,9)։ Գմբեթատակ քառակուսին իրականացված է ոչ թե դահլիճի մեջտեղում, այլ արդեն տեղաշարժված է դեպի արևելք, որը ստացվել է արևելյան կամարների երկարությունը կրճատելով։ Միջմույթային կամարները կազմում են գմբեթատակ քառակուսին, որի անկյունների առագաստները ծառայում են ներսից գլանաձև, դրսից ութանիստ թմբուկին անցնելու համար։ T-աձև մույթերը կառուցված են տաշած բազալտի խոշոր քարերից։ Մույթերը և ներսի պատերը հետագայում սվաղվել են։

Եկեղեցին ունի միատեսակ և նույն չափի երկու մուտք՝ արևմուտքից և հարավից (մյուս երկուսը ունեն մեկական մուտք՝ Տաշտոնում հարավային պատում, Մեղրու վանքում՝ արևմտյան)։

Բոլոր երեք եկեղեցիներում կամարները երկկենտրոն են, չեշտված սլաքաձև, կառուցված մաքուր տաշված բազալտե քարերից։ Միջմույթային կամարները հանգչում են իմպոստների վրա, իսկ դեպի արևելյան և արևմըտյան պատերը գնացող կամարները և փոքր նավերի թաղակիր կամարները ձուլվում են պատի հարթության կամ որմնամույթերի հետ։

Թաղերը կորվածքում երկկենտրոն են, շարված ճեղքված, երկարավուն բազալտի քարերից։

Հարավային պատը ստորին մասում կառուցված է ավելի լայն՝ 1,61 մ։ Հատակից 0,55—1,5 մ բարձրության վրա պատը նեղանում է՝ դառնալով 1,33 մ (մյուս պատերի լայնությունը հավասար)։ Նեղացումը կատարված է ներսից, որի հետևանքով հարավային կողմի նավը ստացվել է ավելի լայն, քան հյուսիսայինը։

Հուշարձանը հատակագծում անկանոն ուղղանկյուն է՝ հյուսիսային պատը երկար է հարավայինից։ Սա հատակագծի սխալ նշահարման հետևանք է։

Եկեղեցու կողքի նավերի արևելյան և արևմտյան հատվածները թաղածածկ են։ Արևելյան մասում, ծածկի տակ, մեծ նավի և փոքր նավերի թաղերի արանքում ստացվող տարածության մեջ թողնված է թունելանման խորշ, մինչև գմբեթատակ քառակուսին ձգվող։

Մեծ թաղի եկեղեցու աղյուսե թմբուկը, որը դրսից ութանիստ է, իսկ ներսում գլանաձև՝ դրված է քարե օղակի վրա և ստացվում է գմբեթատակ քառակուսուց՝ առագաստային անցման միջոցով։ Գմբեթը ներսից սֆերիկ է, իսկ դրսից ունի բրգաձև, նույնպես ութանիստ ծածկ։ Գմբեթի կիսագնդի և վեղարի միջև եղած ծավալը սնամեջ է և դրսից կան անցքեր դեպի այս տարածությունը։ Հավանաբար, բրգաձև ծածկի աղյուսե նիստերը կառուցված են կոշտության կողերի վրա։ Եկեղեցու թմբուկի լուսամուտները ավելի խոշոր են, կիսաշրջանաձև կամարով և բացված են թմբուկի ներքևի մասում։




Նկ. 17ա. Մեղրու ս. Աստվածածին եկեղեցին, ընդերկայնական կտրվածքը։




Նկ. 17բ. Հատակագիծը։

Այս հուշարձանում զգացվում է գմբեթի և բազիլիկայի ուղղանկյուն ծավալի միասնական հորինվածք ստեղծելու ձգտումը, որի հյուսիսային և հարավային պատերի հարթություններում ստեղծված են ճակտոններ։ Բայց ճակտոնները արևմտյան և արևելյան պատեր չունեն՝ ծածկից վեր չեն բարձրանում, ինչպես ընդունված է խաչաձև գմբեթավոր կառուցվածքներում։

Գմբեթը տեղադրված է ընդհանուր ծավալի համարյա մեջտեղում։ Այս նպատակով բազիլիկայի արևելյան կամարների թռիչքը զգալի փոքր է մյուս երկու ընդերկայնական կամարներից, որոնք իրար հավասար են։

Եթե համեմատենք գմբեթի և ամբողջ հուշարձանի բարձրությունների հարաբերությունը հայ ճարտարապետության գմբեթավոր բազիլիկաների դասական ներկայացուցիչներից մեկի՝ էջմիածնի Գայանե եկեղեցու համապատասխան հարաբերության հետ (Մեղրիում գմբեթը հարաբերում է ընդհանուր բարձրությանը ինչպես 1:2, իսկ էջմիածնում՝ 1:2,5), կտեսնենք, որ Մեղրու եկեղեցում հորինվածքի գերիշխողը գմբեթն է և ամբողջ կառուցվածքը ծառայում է պատվանդան գմբեթի համար։

Թվում է, որ իր բարձրությամբ դահլիճի բարձրությանը հավասար այս ծավալը պետք է ճնշող տպավորություն թողնի, մանավանդ գմբեթի տրամագիծը հարաբերում է շենքի լայնությանը ինչպես 1:1,8 (Գայանեինը՝ 1:2,4)։ Բայց այս խոշոր ծավալը տեղում միանգամայն հակառակ ազդեցություն է թողնում դիտողի վրա՝ գմբեթը ոչ թե ճնշում է հուշարձանի հիմնական ծավալին, այլ պոկվում է նրանից, վեր է խոյանում։ Այսպիսի տպավորությունն արդյունք է առաջին հերթին գմբեթի շինանյութի։ Կոնստրուկտիվ և էկոնոմիկական խնդիրներից ելնելով թմբուկը և գմբեթը կառուցված են աղյուսից։ Այս շինանյութը, թեթևացնելով կոնստրուկցիան, միաժամանակ խոշոր էսթետիկական նշանակություն ունի հուշարձանի ընդհանուր կերպարի գեղարվեստական մշակման գործում։

Աղյուսի բաց-դեղնակարմրավուն գույնը հակադրության մեջ մտնելով հուշարձանի գորշակապտավուն բազալտից կառուցված ուղղանկյուն ծավալի հետ, ստեղծում է թեթևություն, կենսուրախության տպավորություն, թվում է, թե գմբեթը կախված է օդում։ Թմբուկի թեթևացման, նրա ծավալին սլացիկ տեսք տալու համար նիստերը մշակված են ուղղաձիգ համաչափություններով, իրար մեջ ներգծված որմնախորշերով։ Իսկ նիստերն իրենց հերթին վերևում վերջանում են սրածայր ճակտոններով, որոնց գագաթներից սկսվում են գմբեթի բրգաձև սրածայր ծավալի կողերը։

Հուշարձանի հարավային կողմից, ճակտոնի երկթեք ծածկի վրա կառուցված է փոքրիկ զանգակատուն։ Սա քառանկյուն, աղյուսաշեն ռոտոնդա է, որը պսակված է քառանիստ վեղարով։ Պետք է նշել, որ Մեղրու Մեծ թաղի եկեղեցին կառուցված է բնակավայրի բարձրադիր մասում՝ Մեղրու հյուսիսային ծայրում և հուշարձանն ավանից դիտվում է իր հարավային ճակատով։

*Այդ պատճառով էլ զանգակատունը կառուցված է հարավային կողմում, մի բան, որ համարյա չի հանդիպում նույն ժամանակաշրջանի հուշարձաններում՝ ընդհանրապես զանգակատները կառուցվում են եկեղեցիների արևմտյան մասում։ Մեղրու եկեղեցու զանգակատան դեկորատիվ բնույթը հաստատում է և այն հանգամանքը, որ զանգը կախվել է գմբեթից, որի համար թմբուկի վերևում թողնված են փայտե հեծաններ։*

*Տվյալ դեպքում զանգակատունը միջանկյալ ծավալի դեր է խաղում՝ ստեղծում է աստիճանական անցում բազիլիկայի ուղղանկյուն ծավալից դեպի թմբուկի ուղղաձիգ ծավալը, վերջինիս համար միաժամանակ որպես մաչտապ ծառայելով։*

*Եկեղեցու բազալտե պատերը հիմնականում հարդարանքից զուրկ են։ Միակ դեկորատիվ էլեմենտը խոյի գլուխն է, որը հագցված է հարավային ճակատի պատում՝ արևմտյան լուսամուտի մոտ։ Պատերի գորշականապտավուն հարթությունները աշխուժացված են լուսամուտների բացվածքները շրջապատող քարերի գույնով՝ բացվածքն ունի դեղնավուն ավազաքարից «շրջանակ»՝ երկու քար կողքերում, մեկը ներքևում, իսկ վերևինի՝ բարավորի քարի մեջ փորված է լուսամուտի կամարը։ Մուտքերի մշակումը համեստ է, առանց դեկորի, այս դարի հուշարձանների համար «տիպային» սխեմայով՝ ուղղանկյուն բացվածք, ներգծված կամարակապ խորշերի մեջ։*

*Հիմնական մուտքը արևմուտքից է, որտեղ պահպանվել են գավթի մնացորդներ։ Հարավից եկեղեցու հատակը տեղանքի խիստ թեքության պատճառով գետնից 2,5 մ բարձր է։ Բայց այս կողմում հուշարձանին կից կառուցված են նկուղային սենյակներ, որոնց կտուրը ծառայում է եկեղեցու համար որպես բակ։ Սա հնարավորություն է տվել հուշարձանի երկրորդ մուտքը բացել հարավային պատում։ Այս մուտքի ֆունկցիոնալ խիստ անհրաժեշտությունը չկար, բայց, որովհետև բնակավայրի նկատմամբ ունեցած դիրքի պատճառով հարավային ճակատը դարձել էր գլխավոր, ապա կոնստրուկտիվ-շինարարական այս լրացուցիչ միջոցներով հարավային կողմում նույնպես մուտք են բացել։*

*Եկեղեցին ներսից սվաղված է։ Բեմի պատը, մույթերը, ավանդատները զարդարված են XIX դարի որմնանկարներով։*

*Մեղրիից բացի, XVII դարում եկեղեցու հիմնական ծավալը և գմբեթը տարբեր շինանյութերից (քար և աղյուս) կառուցված հուշարձաններ կան Ագուլիսում, Երնջակում։ Այսպես, 1670 թ. Ագուլիսի Վերին թաղի ս. Քրիստափոր եկեղեցին, որը կառուցված է եղել աղյուսից, փլվելուց հետո հիմնովին վերանորոգվում է, ընդ որում, աղյուսից շինվում է միայն գմբեթը[6]։*

---

[6] *«Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 96—97։*

Մեղրու Մեծ թաղի գմբեթավոր բազիլիկան թվագրված չէ։ Բայց Երնջակ գավառում կան XVII դարում կառուցված հուշարձաններ, որոնք ունեն նույն ճարտարապետական հորինվածքը՝ գմբեթավոր բազիլիկա, որի թմբուկը և գմբեթը կառուցված են աղյուսից։ Այսպիսի հուշարձաններից առաջին հերթին պետք է նշել Երնջակի Շոռոթ գյուղի ս. Հակոբ եկեղեցին։ Ինչպես նկարագրում է Ալիշանը՝ «Գլխավոր եկեղեցի Շոռոթու է ս. Յակոբ յաւանամիջի անդ. մեծ և հոյակապ, քարաշէն, սագաձև, չորիք սուար սեամբք և աղիւսակերտ կաթողիկէիւ, երիւք դրամբք և երկու ավանդատամբք. ի վերայ դրան միոյ ի նոցանէ արձանագրեալ է համառօտ արձանս, թուականաւ 1642 ամի»[7]։

Շոռոթի եկեղեցու արտաքին ծավալային լուծումը տարբեր է Մեղրու եկեղեցուց։ Շոռոթում միջին նավը և սրան ուղղահայաց տրանսեպտը, որոնց կիսաշրջանային թաղերը ծածկված են երկթեք կտուրներով, կազմում են կառուցվածքի վերին խաչաձև ծավալը։ Վերջինս բարձրանում է հիմնական՝ Հայաստանի XVII դարի հուշարձանների համար ավանդական ուղղանկյուն ծավալից, որի կենտրոնից իր հերթին վեր է խոյանում աղյուսաշեն թմբուկը և գմբեթը։

Ամենակարևորը Շոռոթի և Մեղրու Մեծ թաղի եկեղեցիների թմբուկների նմանությունն է, նույնիսկ կարելի է ասել նույնությունը՝ երկու եկեղեցիների թմբուկներն ու գմբեթներն ունեն նույն համաչափությունները։ Հուշարձանների ութանիստ թմբուկները մշակված են միատեսակ՝ յուրաքանչյուր նիստը զարդարված է աղյուսի նույն ձևավոր շարվածքով իրականացված ուղղանկյուն բարձր որմնախորշով, որի մեջ ներգծված է սլաքաձև կամարով ավարտվող մի երկրորդ որմնախորշ։ Գմբեթի հորինվածքի նույնությունը հիմք է տալիս ասելու, որ XVII դարում Արևիքը, Երնջակը, Գողթնը ունեցել են կրոնական, շինարարական-ճարտարապետական սերտ կապեր և նույնիսկ նույն վարպետները մասնակցել են միմյանց հարևան գավառների պաշտամունքային շենքերի կառուցմանը։ Քանի որ Շոռոթի գմբեթավոր բազիլիկայի արտաքին ծավալային լուծումը ավելի զարգացած ճարտարապետական ձև է, ապա կարելի է ասել, որ Մեղրու եկեղեցիները ավելի վաղ են կառուցվել, քան Երնջակի հուշարձանը, այսինքն XVII դարի առաջին կեսում։

## ԳԱՎԻԹՆԵՐ, ՍՐԱՀՆԵՐ, ՄԵՄՈՐԻԱԼ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ, ԶԱՆԳԱԿԱՏՆԵՐ

Սյունիքի XVII դարի վանքերի անսամբլներում տարածված են եկեղեցիների արևմտյան կամ հարավային ճակատներին կից կառուցվող գավիթները և բաց սրահները։ Գավիթներ կան Բեխի, Հալիձորի Հարանց, Տաթևի Մեծ

[7] Ալիշան, Սիսական, էջ 355։

անապատներում, Տաթևի վանքում. Շնհերի Կուսանաց անապատում, Մեղրու վանքում։

Գավիթները հայ ճարտարապետության մեջ հայտնի են X դարից սկսած։ X—XIII դարերի գավիթները լինելով աշխարհիկ և կրոնական բնույթի ժողովների ու հավաքույթների տեղ, «...միաժամանակ ծառայում էին որպես ֆեոդալական վերնախավի տոհմային դամբարաններ և ըստ էության հանդիսանում են X—XIII դարերի հայկական մեմորիալ ճարտարապետության հուշարձաններ»[3]։

Այդ դարերում Սյունիքում բոլոր խոշոր վանքերն ունեցել են գավիթներ, ընդ որում Գնդեվանքի գավիթը հայ ճարտարապետության այդ տիպի կառուցվածքներից ամենահին թվագրված հուշարձանն է՝ ըստ Ստեփանոս Օրբելյանի այն շինվել է 999 թ.։

XVII դարում Սյունիքի գավիթները, փոխված ֆունկցիոնալ պահանջներին համապատասխան, դադարեցին ժողովատեղի լինելուց։ Այս հանգամանքն իր ազդեցությունն ունեցավ գավիթների մեծության վրա՝ եթե X—XIII դդ. նրանք մոնումենտալ կառուցվածքներ էին, չափերով չզիջելով համալիրների տաճարներին ու նույնիսկ վերջիններին գերազանցելով, ապա XVII դ. գավիթները փաստորեն վերածվում են եկեղեցիների նախամուտքերի և իրենց համեստ չափերով և բաց կամարաշարով ավելի նման են սյունասրահների։ Բայց XVII դարում նույնպես գավիթները շարունակում են պահպանել մեմորիալ նշանակությունը՝ այնտեղ են թաղվում վանքերի և անապատների առաջնորդները (Տաթևի Մեծ անապատ, Հալիձորի Հարանց անապատ)։

XVII դարի Սյունիքի համալիրների գավիթները եկեղեցիների հետ միաժամանակ չեն կառուցված։ Սա պարզ է դառնում պահպանված շինարարական արձանագրություններից և եկեղեցու ու գավթի պատերի մեջ կոնստրուկտիվ կապի բացակայությամբ։

Շնհերի անապատի գավիթը կառուցված է եկեղեցու հարավային պատին կից։ Այն ուղղանկյուն, արևելքից արևմուտք ձգված ոչ մեծ շինություն է, որի ծածկի կիսաշրջանաձև թաղը հյուսիսային կողմից հենվում է եկեղեցու հարավային պատին։ Մուտքերը երկուսն են՝ հարավից և արևմուտքից։

Հալիձորի Հարանց անապատի մեծ գավիթը եկեղեցու արևմտյան կողմում է և կառուցված է համալիրի արևմտյան պարսպապատի հետ միաժամանակ։ Թաղակիր կամարով կիսաշրջանաձև թաղը, որն ուղղահայաց է եկեղեցու առանցքին, արևելքից հենվում է եկեղեցու արևմտյան ճակատին, իսկ արևմտյան կողմից՝ մեծ, 5,17 մ թռիչքով կամարի վրա, որը ձգված է գավթի հարավային պատից մինչև պարսպապատին կից որմնամույթը (պարիսպը

---

[3] Ս. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, էջ 160։

միաժամանակ գավթի համար ծառայում է որպես արևմտյան պատ և, որովհետև թեք է եկեղեցու արևմտյան ճակատի նկատմամբ, գավթի հատակագիծը ստացվում է սեղանաձև): Հյուսիսից կա կամարակապ մեծ բացվածք՝ գավթի հիմնական մուտքը, որը գտնվում է եկեղեցու հյուսիսային պատի հետ նույն հարթության վրա: Իսկ հարավից գավթի պատը՝ մեջտեղում ուղղանկյուն լուսամուտով, հետ է դրված հուշարձանի հարավային պատից:

Հալիձորի Հարանց անապատում հետաքրքրական է երկրորդ գավթի առկայությունը: Հյուսիսային կողմից, եկեղեցու պատին կից, մուտքի դիմաց կառուցված է ուղղանկյուն ոչ մեծ շինություն, որը մեր կարծիքով, եղել է սկզբնական գավիթը, իսկ արևմուտքից պարիսպը կառուցելուց հետո եկեղեցու և պարսպապատի միջև մնացած տարածությունը ծածկելով ստացվել է վերը նշված մեծ գավիթը: Հյուսիսային կառուցվածքը ունի մուտք դեպի դուրս՝ եկեղեցու դռան դիմաց տեղադրված, և ծածկված է հյուսիսից-հարավ ձգվող կիսաշրջանաձև թաղով: Հալիձորի անապատի վանահայրերը թաղված են արևմտյան գավթում, այնպես որ հյուսիսային այս կառուցվածքը որպես մատուռ կամ դամբարան չէր կարող ծառայել:

Հալիձորի բերդի եկեղեցին չունի գավիթ կամ սրահ՝ նման այդ տիպի կառուցվածքների միջնադարում տարածված հորինվածքներին: Այստեղ, եկեղեցու հյուսիսային և հարավային կողմերին կից երկհարկ շինությունների առաջին հարկերը փաստորեն գավիթներ են և եկեղեցու երկու մուտքերը բացվում են նրանց մեջ: Հարավային գավիթը կամ ավելի ճիշտ նախամուտքը, երկարավուն, արևելքից-արևմուտք ձգված թաղածածկ սենյակ է, որը հաղորդակցվում է զուգահեռ և կից կառուցված մի այլ ուղղանկյուն սենյակի հետ: Արևելյան կողմը քանդված է և դժվար է ասել, թե ինչպիսին է եղել մուտքը: Հետաքրքիր է ծածկի կոնստրուկցիան՝ եթե նախամուտքի արևելյան հատվածը ծածկվում է կիսաշրջանաձև թաղով, ապա արևմտյան թաղն ունի քառորդ շրջանի կտրվածք և իր գագաթով հենվում է եկեղեցու հարավային պատին:

Հյուսիսային գավիթն ունի ավելի բարդ՝ Г-աձև հատակագիծ և մուտքը բացվում է ուղղանկյուն, թաղակապ սենյակի մեջ: Եկեղեցու հյուսիսային պատին կից է երկար մի միջանցք, ծածկված քառորդ շրջանի կտրվածք ունեցող թաղով: Միջանցքին ուղղահայաց է կիսաշրջանաձև թաղով ծածկված սրահը, որը հյուսիսից ավարտվում է ամբողջ լայնությամբ կամարակապ բացվածքով: Սրահին արևելքից կից է բնակելի նշանակություն ունեցող ուղղանկյուն սենյակ բուխարիով, պատերի մեջ խորշերով և դեպի արևելք նայող լուսամուտով:

Սրահը, նախագավիթը, միջանցքը, հաղորդակցվելով միմյանց հետ, ստեղծում են անկյունաձև հատակագծով ներքին մի տարածություն, որի մեջտեղում, ծածկերի հատման կետում, բարձրանում է հաստահեղույս,

հիմքի մոտ քառակուսի կտրվածքով մի հզոր մույթ: Մույթի վրա նստում են սրահի և նախագավթի կիսաշրջանաձև թաղերը, բացվածքի կամարը ու միջանցքի քառորդ շրջանի կտրվածք ունեցող թաղը:

Շինարարները այս բարդ հանգույցը լուծել են պարզ և սրամիտ ձևով՝ մույթը վերևում ավարտվում է սնկաձև, որը հնարավորություն է տվել տարբեր ծածկերի կոնստրուկցիաների համար ընդհանուր հենակետ ստեղծելը:

Շատին վանքի, Բեխի անապատի, Տաթևի Մեծ անապատի, Մեղրու վանքի գավիթները իրենց հատակագծային և տարածական հորինվածքով շատ նման են միմյանց և կազմում են առանձին՝ գավիթ-սրահների ենթախումբը:

Գավիթ-սրահները նորություն չէին հայկական ճարտարապետության մեջ: Նրանք հանդիպում են XII—XIII դարերում քաղկեդոնիկ վանքերում՝ Քոբայրում, Անիի Տիգրան Հոնենց եկեղեցում, Սեդվի և Կիրանց վանքերում (Լոռի)[9]: Անիում այն բաց սյունասրահ է, Քոբայրում՝ ուղղանկյուն շինություն, որտեղ սյունասրահը միայն մեկ անկյունն է զբաղեցնում, իսկ Սեդվիի գավիթը՝ ոչ մեծ ուղղանկյուն սրահը, XVII դարում տարածված զանգակատուն-գավիթների նախատիպն է[10]:

Սակայն Սյունիքի XVII դարի գավիթ-սրահները տարբերվում են վերը նշված հուշարձաններից: Սյունիքում գավիթները կառուցված են եկեղեցիների արևմտյան ճակատին կից, նրա ամբողջ երկարությամբ[11]:

Բացի Տաթևի Մեծ անապատից, մյուս համալիրներում գավիթ-սրահները այժմ կիսաքանդ են: Սակայն պահպանված մասերը հնարավորություն են տալիս վերականգնելու նրանց սկզբնական կերպարը:

Շատին վանքի գավիթն ուղղանկյուն կառուցվածք է, հետագայում կցված եկեղեցու արևմտյան ճակատին: Պահպանվել է սյունասրահի հյուսիսային մասը և հարավային երկու մույթերը՝ 2 մ բարձրությամբ: Գավթի արևմտյան ճակատը իրենից ներկայացնում է կամարաշարք՝ երեք բացվածքներով, որոնցից միջինը ավելի լայն է, քան կողքի երկուսը: Հյուսիսային և հարավային ճակատները նույնպես բաց են՝ ավարտվում են ամբողջ լայնությամբ ձգվող կամարակապ բացվածքներով: Գավթի գլխավոր ճակատի չորս մույթերին համապատասխան, եկեղեցու արևմտյան ճակատին կից կա որմնամույթեր: Մույթերի և որմնամույթերի միջև կցված են կամարներ, որոնցով գավիթը բաժանվում է ընդլայնական թաղերով ծածկված երեք հատվածի:

[9] *С. Х. Мнацаканян*, Архитектура армянских притворов, Ереван, 1952, стр. 17.

[10] *Նույն տեղում, էջ 99—100:*

[11] *Ուշ միջնադարի Սյունիքի գավիթ-սրահների ակունքները գտնվում են IX—XI դարերի կոմպլեքս Որոտնավանքում: Այստեղ, գմբեթավոր եկեղեցու արևմտյան ճակատին կից կառուցված սրահն ունի նույն հորինվածքը, ինչ Շատինի, Բեխի, Մեղրու, գավիթ-սրահները: Տաթևի վանքը նույնպես ունեցել է սյունասրահ:*

Միջինը ավելի բարձր է՝ պահպանվել է կողքի հատվածների տանիքից վեր բարձրացող պատի մի մասը։

Շատին վանքի գավիթ-սրահը նույն հատակագծային լուծումն ունի ինչ Մուղնու և էջմիածնի Շողակաթ եկեղեցիների գավիթները։ Սակայն եթե այս երկու հուշարձանում գավթի միջին հատվածի վրա բարձրանում է զանգակատան ռոտոնդան, ապա Շատինում զանգակատուն չի եղել։ Շատին վանքում միջին հատվածը, ի տարբերություն Մուղնու և էջմիածնի հուշարձանների, ոչ թե քառակուսի է և գմբեթով ավարտված, այլ ուղղանկյուն և ծածկված կիսաշրջանաձև թաղով։ Շատին վանքի եկեղեցին ունեցել է իր փոքրիկ զանգակատունը՝ երկթեք տանիքի վրա կառուցված (պահպանվել են ռոտոնդայի սյուների խարիսխները)։

Ճիշտ նույն հորինվածքն ունի Մեղրու վանքի գավիթը։ Միայն այստեղ բացվածքների կամարները սլաքաձև են։

Բեխի անապատի գավիթը ամենավատ պահպանվածն է։ Մնացել են միայն եկեղեցու արևմտյան ճակատին կից երեք որմնակամարները, մույթերը և գավթի հյուսիսային և հարավային պատերի փլատակները։ Սակայն ակներև է, որ գավիթն ունեցել է երեք կամարակապ բացվածքով գլխավոր ճակատ և ծածկվել թաղով։ Միայն ի տարբերություն նախորդ հուշարձանների՝ կողքի ճակատները խուլ են, և կամարակապ երեք բացվածքները միմյանց հավասար են եղել։ Հավանաբար, Բեխի գավիթն ունեցել է նույն ծավալային հորինվածքը ինչ Գայանեի սրահը էջմիածնում։

Տաթևի Մեծ անապատի գավիթ-սրահը ունենալով համարյա նույն հատակագծային հորինվածքը, Շատինի, Բեխի, Մեղրու համանման կառուցվածքներից խիստ տարբերվում է ծավալային լուծումով։ Տաթևի անապատում գավիթը նույնպես եռակամար բաց սրահ է, ավելի մեծ միջին բացվածքով, կից կառուցված եկեղեցու արևմտյան ճակատի ամբողջ երկարությամբ։ Սակայն այստեղ, ի տարբերություն մյուս հուշարձանների, գավիթը իր բարձրությամբ հավասար է եկեղեցու բարձրությանը և վերջինիս երկթեք ծածկի շարունակությամբ ստացվում է գավթի ծածկը։ Այնպես որ գավիթը դառնում է հուշարձանի ծավալային հորինվածքի օրգանական մասը և գավթի եռակամար ճակատը՝ հուշարձանի գլխավոր ճակատը։

Տաթևի Մեծ անապատի գավթի այս հորինվածքը իր ակունքներն ունի Սյունիքի IX—XI դ. ճարտարապետության մեջ։ Տաթևին շատ մոտ է գտնվում միջնադարյան հայկական ճարտարապետության ուշագրավ մի հուշարձան՝ Բղենո Նորավանքը։ XI դարում այս հուշարձանում եկեղեցուն արևմուտքից կցել են սյունասրահ, որն ավարտվել է կառուցվածքի ամբողջ լայնությունն ընդգրկող ճակտոնապատով։ Սյունասրահը, երեք կամարաղեղներով (որոնցից կողքի երկուսը խուլ են, իսկ միջինը՝ ավելի մեծ, հիմնական մուտքն է), ունեցել է

երկթեք ծածկ, եկեղեցու երկթեք ծածկի բարձրությամբ[12]։ Ահա նույն հորինվածքը կրկնվել է Տաթևի Մեծ անապատում, միայն այստեղ կողքի կամարները ոչ թե խուլ են, այլ բացվածքներ են։ Բղենո Նորավանքի սյունասրահը կառուցվել է մեմորիալ նպատակի համար[13]։ Նույն բանը, փաստորեն, տեղի ունի Տաթևի Մեծ անապատում։ Այստեղ գավիթ-սրահի անհրաժեշտությունը չի բխում ոչ համալիրի ընդհանուր հատակագծից և ոչ էլ եկեղեցուն հանդիսավոր մուտք տալու գաղափարից։ Անապատում եկեղեցու արևմտյան կողմը շատ անհարմար է կից գավիթ կառուցելու համար՝ ճակատը բավականին մոտ է անսամբլի արևմտյան պարսպապատի երկարությամբ ձգվող խցերի շարքին։ Իսկ գավիթի կառուցումով այդ հեռավորությունը դարձել է ընդամենը 1,30 մ, այսինքն՝ սրահի հանդիսավոր մեծ բացվածքները գործնական ոչ մի նշանակություն չունեն և մոտեցումը դեպի սրահը և միակ հարմար մուտքը ոչ թե այս կողմից է, այլ հարավային ճակատի մեջ բացվող դռնից։ Այսպիսի տեղադրումը զրկում է սրահի գլխավոր ճակատը դիտելու, ընկալելու հնարավորությունից, որովհետև դրա համար հարմար ոչ մի կետ չկա, լինի դա համալիրի ներսում, թե պարիսպներից դուրս։ Իսկ ի՞նչն էր այսպիսի գավիթ կառուցելու պատճառը, եթե նա չպետք է ծառայեր իր հիմնական նպատակին։ Մեր կարծիքով, այս գավիթը հիմնականում ունեցել է մեմորիալ նշանակություն և դրա ապացույցն են այնտեղ եղած տապանաքարերը։ Գավիթը կառուցված է բազալտե մաքուր տաշած քարերից, որով շարված են և եկեղեցու պատերը։ Այս պատճառով էլ գավիթը, թեև կառուցված է 80 տարի հետո՝ XVIII դարում, ոչ միայն ծավալային ամբողջություն է կազմում եկեղեցու հետ, այլև նրա հետ գտնվում է գունային և տոնային ներդաշնակության մեջ։

XVII դարի մենաստաններում հատուկ մեմորիալ կառուցվածքներ համարյա չեն ստեղծվել, որովհետև ինչպես տեսանք, այդ նպատակին ծառայում էին գավիթները։ Բացառություն է Տաթևի Մեծ անապատի եկեղեցու հյուսիսային պատին կից կառուցված դամբարանը։ Այն քառակուսի հատակագծով, փոքր գմբեթածածկ մի շինություն է, որը արևմտյան կողմի դռնով հաղորդակցվում է բակի հետ։ Անցումը պատերից դեպի գմբեթն իրականացվում է առագաստների միջոցով։ Գմբեթի վերևում կա երդիկ, որի վրա բարձրանում է վեցասյուն, բրգաձև ծածկով փոքրիկ սյունաշար։

Եկեղեցու մուտքին կից մատուռ-դամբարան կառուցելու օրինակ Սյունիքում հանդիպում է Տաթևի վանքում, որտեղ հարավային մուտքի առջև, դեռ հնում, ավելացվել է ոչ մեծ մի մատուռ։ Սակայն այստեղ մատուռն արևելյան կողմում ավարտվում է աբսիդով, որը բացակայում է Տաթևի Մեծ անապա-

[12] Ս. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, էջ 156։
[13] Նույն տեղում, էջ 155։

տում։ Հետևաբար Անապատի համանման այս կառուցվածքը եղել է միայն դամբարան և որպես մատուռ չի ծառայել։

Դամբարանի ծավալը դրսից ունի մոտավորապես խորանարդի համաչափություններ։ Պատերը հարթ են, զուրկ որևէ դեկորատիվ հարդարանքից։ Լուսամուտների ճեղքերը և դռան ուղղանկյուն, առանց որևէ տրամատի բացվածքն ավելի են ընդգծում կառուցվածքի արտաքին տեսքի խստությունը։

Սյունիքի XVII դարի ճարտարապետական անսամբլներում ուրիշ մեմորիալ կառուցվածքներ չեն հանդիպում։ Այս առումով, նախորդ դարերի համեմատությամբ XVII դարն ավելի աղքատ է, որովհետև IX—XIV դարերում, հենց Սյունիքում մենք հանդիպում ենք բազմաթիվ և բազմազան մեմորիալ կառուցվածքների՝ սյուների, հուշասյուների (Որոտնավանք, Աղուդի, Տաթևի), խաչքարերի, երկհարկանի դամբարան-եկեղեցիների (Ցաղացքար, Վահանավանք, Տաթև)։

XVII դարում եկեղեցիներին կից առանձին կանգնած զանգակատներ կառուցելը տարածված երևույթ էր Արևմտյան Հայաստանում, Այրարատում, Վասպուրականում։ Դրանք քառակուսի հատակագծով սյունասրահներ էին, մուտքերին կից, որոնց վրա բարձրանում էր զանգակատան ռոտոնդան (Էջմիածնի Մայր, Հոփփսիմեի, Ախթամարի տաճարներ)։ Իսկ նորակառույց եկեղեցիների զանգակատները տեղադրված էին արևմտյան մասում կցված սրահների մեջտեղում (Մուղնի, Շողակաթ)։ Սակայն այլ է վիճակը Սյունիքում, XVII դարում։ Այստեղ վերը նշված հորինվածքներով զանգակատներ չեն հանդիպում (Տաթևի վանքի զանգակատունը կառուցված է XIX դարի վերջին։)

Սյունիքի XVII դարի անսամբլներում զանգակատները ուղղակի դրված են երկթեք տանիքի վրա և իրենց չափերով, տեղադրությամբ, համաչափություններով օրգանական ոչ մի կապ չունեն եկեղեցու հիմնական ուղղանկյուն ծավալի հետ։

Զանգակատները հիմնականում տեղադրված են աղոթասրահի մեջտեղում, միջին նավի ծածկի թաղի մեջ թողնված շրջանաձև երդիկի վրա։ Քարե օղակի վրա նստող ռոտոնդաները Հալիձորի բերդում, Տաթևի վանքում, Շնհերի Կուսանաց անապատում ունեն չորս, Տաթևի Մեծ անապատում ութ սյուն և կախված սյուների քանակից, ռոտոնդայի բրգաձև ծածկերը լինում են քառանիստ և ութանիստ։

Նշված հուշարձաններում զանգակատներն իրականացված են քարից՝ բազալտից, որով և կառուցված է ամբողջ հուշարձանը։ Սյուներն ունեն տարբեր կտրվածքներ՝ ութանիստ (Հալիձորի բերդ), կլոր (Տաթևի վանք)։ Տաթևի անապատում այն ավելի բարդ ձև ունի՝ շրջանի և ուղղանկյան հատումով ստացվող։ Զանգակատների բարձրությունը (ընդհանուր) տատանվում է

*1, 6 մ (Շնհերի Կուսանաց անապատ) մինչև 3,9 մ (Տաթևի Մեծ անապատ)։ Զանգակատների նման հորինվածքը՝ սյուներով ռոտոնդա, բրգաձև ծածկով ավարտվող, իր ակունքներն ունի XII—XIV դարերի հուշարձաններում՝ այսպիսին են Հոռոմոսի, Հաղարծնի, Սաղմոսավանքի, Հաղպատի, Գանձասարի ժամատների կենտրոնական հատվածների երդիկների վրա բարձրացող ծավալները։*

*X—XIV և XVII—XVIII դարերի համալիրների գավիթների, սրահների, զանգակատների համեմատական վերլուծությունը ցույց է տալիս, որ ուշ միջնադարի այդ ճարտարապետական տիպերը և՛ չափերով, և՛ կոնստրուկցիաներով ու արտահայտչականությամբ զգալի զիջում են նախորդ շրջանի համանման կառուցվածքներին։*

## Գլուխ երրորդ

# ԱՇԽԱՐՀԻԿ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ

### ԲՆԱԿԵԼԻ ՇԵՆՔԵՐ

*Հայաստանի վանքերն իրենց մեծաթիվ միաբանությունների համար, բնականաբար, պետք է ունենային անհրաժեշտ քանակությամբ բնակելի սենյակներ և կոմունալ կառուցվածքներ։ X—XIV դարերից վանքային համալիրներում, ցավոք, չեն պահպանվել քիչ թե շատ կանգուն բնակելի շենքեր և դրանց ճարտարապետության մասին դժվար է այժմ լրիվ պատկերացում կազմել։ Այս պատճառով մեծ արժեք են ներկայացնում ուշ միջնադարի՝ XVII—XVIII դարերի Սյունիքի վանքերի ու անապատների պահպանված բնակելի սենյակները, որոնց հատակագծային և տարածական հորինվածքի որոշ ձևերը ցույց են տալիս վերջիններիս ավանդական լինելը։ Հայ ճարտարապետության ստեղծագործող և պրպտող միտքը, անընդհատ մշակելով կրոնական, աշխարհիկ կառուցվածքների նորանոր հորինվածքներ, միաժամանակ ունի և ավանդական ձևերին հավատարիմ մնալու հատկություն, օգտագործելով, նույնիսկ կրկնելով (անշուշտ վերամշակված) արդեն հաջողված հորինվածքներն ու ձևերը։ Այս առումով առանձին հետաքրքրություն են ներկայացնում Անիի բնակելի կառուցվածքները, քանի որ նրանց հետ միջնադարյան վանքային բնակելի սենյակները ունեն մի շարք ընդհանուր գծեր։*

*1912 թ. պեղումներից բացված Անիի բնակելի տները, որոնք պատկանում են քաղաքի գոյության վերջին շրջանին, ցույց են տալիս թե՛ կառուցապատման խիտ, անկանոն բնույթը և թե՛ տների հատակագծերի առանձնահատկությունները։ Դեպի փողոց շատ սահմանափակ թվով դռներ են բացվում, ընդամենը չորսը, որոնցից յուրաքանչյուրը միջանցքով ելք է ստեղծում մի շարք սենյակների համար[1]։ Սենյակների տակ կան նկուղներ, որոնք օգտագործվում են իբրև պահեստներ։ Բոլոր բնակարանների համար ընդհա-*

[1] *Н. Я. Марр.* Ани, Ереван, 1939, стр. 194.

*նուր, բնորոշ տարրեր են հանդիսանում թոնիրը, բուխարին և պատերի մեջ խորշերը՝ «պատրհանները»[2]։*

*Ուշ միջնադարի Հայաստանի կրոնական համալիրների բնակելի կառուցվածքները նույնպես ունեն բուխարիներ և «պատրհաններ», իսկ Տաթևի վանքի բնակելի սենյակների տակ կան նույնպես նկուղներ, որոնք եղել են մթերապահեստներ, գուցե և թարքատցներ։ Սակայն հետաքրքիրը ոչ թե առանձին տարրերի կրկնությունն է ուշ միջնադարում, այլ Անիի բնակելի շենքերի հատակագծային հորինվածքի հիմնական սկզբունքի կիրառումը, թեկուզ որոշ չափով ձևափոխված։ Դա մի շարք սենյակների խմբավորումն է ընդհանուր միջանցքի շուրջը և դեպի դուրս ընդհանուր մուտքի կազմակերպումը։ Նման հորինվածքի մենք հանդիպում ենք և XVII—XVIII դարերում Հայաստանում՝ Այրարատում և Սյունիքում։*

*Նշված հորինվածքն ունեն Գեղարդի և Ամենափրկիչ Հավուց-թառի XVII դարի բնակելի կառուցվածքները։ Յուրաքանչյուր բնակելի բջիջ բաղկացած է թաղակապ, դեպի բակը բացվող սրահից, որի ներսում դռներ են բացվում դեպի սրահի երկու կողմում դասավորված բնակելի սենյակները։*

*Այս նույն հորինվածքը հանդիպում է և Սյունիքի հինավուրց այն վանքերում, որոնց բնակելի շենքերը կառուցվել են XVII դարում՝ Գնդեվանքում և Տաթևի վանքում (վերջինում միայն մեկ մասնաշենք, մյուս բնակարանների հորինվածքն ուրիշ է)։*

*Գնդեվանքում բնակելի համալիրը տեղադրված է հարավային պարսպի երկարությամբ։ Սենյակները մի հարկանի են, թաղածածկ, և դասավորված են ամբողջ լայնությամբ բաց կամարներով դեպի բակ դուրս եկող սրահների շուրջը։ Կա երեք այսպիսի խումբ։*

*Միջին խմբի սրահը հետագայում փակվել է պատով և վեր է ածվել սենյակի։ Բնակելի սենյակները խմբավորված են սրահների շուրջը երկուական։ Սենյակների ներսում պատերի մեջ կան խորշեր՝ «պատրհաններ», և մեկական բուխարի։ Բնակարաններին հատուկ այս երկու տարրերի առկայությունը հիմք ընդունելով տեսնում ենք, որ համալիրի հարավ-արևմտյան անկյան երկու սենյակները՝ սեղանաձև հատակագծով, բնակելի չեն, այլ նախատեսված են տնտեսական նպատակների համար։ Բնակելի են միայն կառուցապատման միջին մասի սենյակները, թվով չորսը։ Սրանցից երեքը միմյանց հավասար են, չորրորդը մի քիչ մեծ է։ Մակերեսները՝ 9,5—13,5 մ², թույլ են տալիս ենթադրելու, որ այս բնակելի սենյակները նախատեսված են մեկից ավելի՝ 2—3 հոգու համար։*

*Գնդեվանքի բնակելի համալիրի հետաքրքրական առանձնահատկությունն այն է, որ այստեղ սենյակների լուսամուտները բացվում են ոչ թե դեպի բակ,*

[2] *Նույն տեղում, էջ 195—196։*




Նկ. 18. Գնդեվանք, բնակելի սենյակների հատակագիծն ու կտրվածքը:

այլ դեպի դուրս: Սա պետք է բացատրել կոմնորոշման հանգամանքով՝ բակ բացվելու դեպքում լուսամուտները պետք է նայեին դեպի հյուսիս, մի բան, որն անթույլատրելի է Հայաստանի պայմաններում: Իսկ հարավային պարսպի զգալի բարձրությունը՝ գետնից մոտ 10 մետր, թույլ է տալիս տեղադրել նման բացվածքներ, որովհետև պաշտպանական տեսակետից լուսամուտները գտնըվում են անվտանգ բարձրության վրա:

Տաթևի վանքի բնակելի կառուցվածքները գլխավոր հատակագծում տեղադրված են բակի արևմտյան և հարավային կողմերում: Արևմտյան բնակելի մասնաշենքը կից է արտաքին պարսպին: Սենյակները, ինչպես և Գնդեվանքում, խմբավորված են երկու սրահների շուրջը, որոնք կամարակապ լայն բացվածքով դուրս են գալիս դեպի վանքի բակը: Հյուսիսային սրահի երկու կողմերում գտնվում են բնակելի միհարկանի թաղածածկ սենյակներ, թվով չորսը, որոնց ընդհանուր բարձրությունը հավասար է սրահի բարձրու-

թյանը։ Սենյակների մուտքը սրահի միջից է։ Նրանցից երկուսը լուսավորվում են դեպի բաց նայող մեծ, ուղղանկյուն բացվածքներով լուսամուտներից, իսկ մյուսները՝ երդիկներից։

Ուշ միջնադարում, բացի վերը նշված հորինվածքից, բնակելի կառուցվածքներն իրականացված են մի այլ սկզբունքով ևս։ Դա պարսպապատերին կից, նրանց երկայնքով կառուցված բնակելի շինություններն են, հաճախ երկհարկանի, որոնք առանձին ելք ունեն դեպի բակ։ Այս հորինվածքը տարածված է եղել թե Վասպուրականում, թե Ատրպատականում և Արևելյան Հայաստանում[3]։ Առանձին մուտքով միատեսակ սենյակների շարք ունեն ս. Թադեի վանքը Ատրպատականում, ս. Թովմայի վանքը Վասպուրականում, ս. Ստեփանոս Նախավկայի վանքը։ Տաթևի վանքի բնակելի մյուս շինությունները մասամբ պատկանում են այս տիպին, Տաթևում կանգուն է սեղանատանը հյուսիսից կից երկհարկանի բնակելի սենյակների մի խումբ՝ դասավորված հնգակողմ նախասրահի շուրջը։ Սենյակների վերին հարկը ծածկված է թաղով, իսկ միջհարկային ծածկերը փայտից են եղել՝ պահպանվել են պատերի մեջ գերանների բների հետքերը։

Այդ սենյակներից առաջինում պահպանվել է Զաքարիա վարդապետի 1671 թ. շինարարական արձանագրությունը։ Սենյակն ամբողջ լայնությամբ բացվում է դեպի ձորը և, ըստ երևույթին, արձանագրության մեջ հիշատակվող պատշգամբն է, որը հետագայում վերակառուցվելով դարձել է սենյակ։

Վանքի անսամբլի հարավ-արևմտյան անկյունում գտնվում է բնակելի ամենամեծ խումբը՝ վանահոր աթոռանիստը, որի արևելյան, բակ նայող ճակատը երեսպատված է մաքուր տաշած քարերից։ Մասնաշենքը բաղկացած է ինը սենյակներից, որոնց մեծ մասը երկհարկանի են։ Մեկ հարկանի են միայն հարավային ամենամեծ սենյակները։ Ծածկը գլանաձև թաղով է, ներսում պատերը և թաղը սվաղված են։ Հյուսիսային ծայրի սենյակներից մեկը նույնպես ամբողջ լայնությամբ բացվում է անդնդախոր ձորի վրա և եղել է այս բնակելի խմբի պատշգամբը։

Չնայած Տաթևի վանքի բնակելի կառուցվածքների բազմազանությանը, նրանք ունեն ընդհանուր շատ հատկանիշներ, ինչպես օրինակ պատրհանները, բուխարիները։ Ներսում բոլոր սենյակները սվաղված են, իսկ դռների կողերը և կամարները շարվում են մաքուր տաշված քարերից։ Երկհարկանի բնակարանների վերին հարկը բարձրացել են, հավանաբար, փայտե սանդուղքներով՝ չկան քարե աստիճանների որևէ հետքեր։ Առաջին հարկի սենյակներից շատերը հատակի տակ ունեն թաղակապ նկուղներ։ Սենյակների մուտքերը կամ թաղածածկ սրահներից է, կամ միջանցքներից, որոնց շուրջը նրանք

[3] Նման հորինվածք ունեն նաև բյուզանդական մի շարք միջնադարյան վանքերի բնակելի կառուցվածքները։




Նկ. 19. Տաթևի վանք, բնակելի սենյակների հատակագիծը։

*խմբավորված են։ Սենյակները իրենց չափերով ավելի մեծ են, քան Գնդեվանքում, և նախատեսված են 4—5 և ավելի հոգու համար։ Տեղանքը (բնակելի սենյակների մեծամասնությունը կառուցված են խոր ձորի անմիջապես եզրին) թույլ է տվել ունենալ բաց սրահներ և նույնիսկ փայտե պահունակային պատշգամբ՝ ձորի վրա կախված։ Այս տիպի պատշգամբներ XVII դարի համալիրներում հանդիպում է միայն Տաթևում։*

*Տաթևի Մեծ անապատի բնակելի սենյակները իրենց ճարտարապետությամբ տարբերվում են Գնդեվանքի և Տաթևի վանքի բնակարաններից։ Այստեղ արդեն չկան մեծ սենյակներ՝ մի քանի հոգու համար նախատեսված, յուրաքանչյուր միաբանի հատկացվում է մեկ խուց։ Այս է պատճառը, որ Տաթևի Մեծ անապատում պարիսպների երկարությամբ, բակի կողմից, կառուցված են տասնյակ խցեր, փոքր մակերեսներով և կոմպակտ հատակագծերով։ Սենյակները տեղադրված են արևմտյան, հյուսիսային և արևելյան պարիսպների երկարությամբ։ Խցերի մի ուրիշ խումբ՝ Г-աձև հատակագծով, գտնվում է ընդհանուր բակի միջում։ Հյուսիսային շարքն այժմ կիսաքանդ է, լցված հողով, փլատակ է և արևելյան պարիսպներին կից սենյակների մասը։ Ըստ Ջալալյանի վկայության, անապատում եղել է «...վաթսուն և չորս կամարա-*

*չեն սենյակի միաբանից...»*[4], *համարյա նույնքան է եղել XVII դարում Մեծ անապատի միաբանների թիվը՝ այն 1668 թ. ուներ «...հ.(70) կրոնավոր մարդ»*[5]:

*Այստեղ հանդիպում ենք տիպարային կառուցապատման միջնադարյան օրինակի, որն ունի մի շարք հետաքրքրական առանձնահատկություններ: Յուրաքանչյուր բնակելի սենյակների խմբի համար մշակված է առանձին տիպային բջիջ: Արևմտյան շարքը տարբերվում է արևելյանից չափերով, սենյակի մակերեսով, բարձրությամբ, սակայն ճակատային լուծումները նման են: Իսկ Г-աձև մասնաշենքը տարբերվում է մյուս խմբերից թե՛ հատակագծով և թե՛ ճակատների մշակմամբ: Տիպարային բնակարանը կազմըված է երկու մասից՝ բուն սենյակից և սենյակի լայնությունն ունեցող թաղածածկ սրահից, որը կամարակապ լայն բացվածքով դուրս է գալիս դեպի ներքին բակը: Սենյակի դուռը սրահի խորքից է, աջ անկյունից: Սենյակները ուղղանկյուն են (2,16×2,87 մ): Մուտքի դիմաց, հանդիպակաց պատի աջ անկյունում գտնվում է բուխարին, որը կիսաշրջանաձև փորված է պատի հաստության մեջ: Նույն պատի մեջտեղում, թաղի անմիջապես տակից բացվում է սենյակի լուսամուտներից մեկը: Պատերի մեջ կան խորշեր՝ «պատրհաններ», տարբեր մեծության: Մուտքի պատում, դռնից ձախ, կա մի լուսամուտ ևս, որը բացվում է դեպի սրահը և չափերով հավասար է առաջինին: Սենյակը թաղածածկ է, միջին մասում բարձրությունը կազմում է 2,80 մ: Սենյակի և սրահի ծածկի գլանաձև թաղերը ձգվում են բնակարանի ընդերկայնական առանցքով: Սրահը (2,16×1,92 մ) դրսից ունի սրբատաշ բազալտի քարերից շարված սլաքաձև կամար: Բնակարանի այս տիպը կրկնվում է Г-աձև մասնաշենքի արևմտյան և արևելյան թևերում, հինգական հատ: Անկյունում հատակագիծը բարդանում է, ստացվում են երկու ուղղանկյուն մեծ սենյակներ, որոնցից արևմտյանը մուտք ունի բաց սրահից, իսկ հյուսիս-արևելյանը՝ հնգակողմ միջանկյալ մի սենյակից, որի դուռը տեղադրված է խմբի երկու թևերի հատման անկյունում:*

*Բնակելի բջջի համաչափությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ այստեղ բնակարանի չափերի հիմքում ընկած է պարզ թվերի հարաբերությունը և որպես չափի միավոր՝ մոդուլ, վերցված է 0,71 մ: Այսպես, սենյակի լայնությունը և երկարությունը հարաբերում են միմյանց ինչպես 3:4, լայնությունը և բնակարանի ընդհանուր երկարությունը՝ (սրահի և սենյակի) 3:8, լայնության և բնակարանի բարձրության՝ 3:4:*

*Բնակելի սենյակների արևելյան շարքի համար ընտրված է այլ հորինվածք: Բնակարանները սրահ չունեն: Արևելքից բոլորի համար ընդհանուր*

---

[4] Ս. Ջալալեան, *Ճանապարհորդութիւն...* Բ, էջ 305:

[5] *«Զաքարիա Ագուլեցու օրագրությունը»*, էջ 75:










*20 ա. Տաթևի Մեծ անապատ, խցերի Г-աձև խմբի տիպարային բջջի հատակագիծը, կտրվածքն ու ճակատը։*














*20բ. Արևմտյան և արևելյան խցերի տիպարային բջջի հատակագծերն ու ճակատները։*

պատ է ծառայում պարիսպը: Մուտքերն արևմտյան կողմից են, արտաքին բակից: Տիպարային սենյակը (1,82×2,85 մ) լուսավորվում է բակի կողմից՝ արևմուտքից, մեկ լուսամուտով: Ծածկված է գլանաձև թաղով, որը ձգվում է բնակարանի երկայնական առանցքով:

Հյուսիսային խմբի սենյակները այժմ հողածածկ են: Սակայն Անապատի հյուսիսային դարբասի ձախ կողմի երկու սենյակները, որոնք նույն շարքին են պատկանում, թույլ են տալիս պատկերացում կազմել ամբողջ շարքի մասին: Սենյակների հատակագիծը միայն չափերով է տարբերվում արևելյաններից: Հորինվածքը նույնն է՝ ուղղանկյուն հատակագիծ (2,8×2,3 մ), թաղածածկ, դուռը և միակ լուսամուտը բացված են բակ նայող հարավային պատում: Բնակարանների չորրորդ խումբը արևմտյան պարսպի երկարությամբ ձգված սենյակներն են, թվով 19-ը: Մուտքերի առջև նախասենյակ ունեն երկուսը (հետագայում կցված): Ուղղանկյուն են (2,10×2,30 մ), մուտքը և լուսամուտը արևելյան պատում են:

Համալիրի գլխավոր հատակագծում բնակելի սենյակները տեղադրված են հաշվի առնելով բացառապես կողմնորոշման գործոնը: Կից լինելով արտաքին պարիսպներին, սենյակները լուսավորվում են բակի կողմից և չունեն ոչ մի բացվածք դեպի դուրս (պարիսպները կոնստրուկտիվ և ռազմական տեսակետներից չթուլացնելու համար): Երեք պարիսպներին (հյուսիսային, արևմտյան և հարավային) կից սենյակները կողմնորոշված են համապատասխանաբար դեպի հարավ, արևելք և արևմուտք, այսինքն դեպի ամենաբարենպաստ կողմերը, իսկ հարավային պարսպին կից կառուցված են կոմունալ շինությունները (սեղանատուն, խոհանոց, մթերանոց), որովհետև նրանք իրենց բացվածքներով ուղղված են դեպի հյուսիս: Միայն Γ-աձև խումբն ունի լուսամուտներ երկու կողմից՝ կառուցված լինելով բակի միջում, պաշտպանական գործոնը այս դեպքում դեր չի խաղում:

Նույն սենյակների կրկնությունից ստացվող բնակարաններ են եղել և Տաթևի վանքում՝ «...սենեակք միաբանից անկանին ի հիւսիս, համակ ի կոփածոյ քարանց թուով քսան և ութն, և ի ներքոյ սենեկաց երկու մեծամեծ քարուկիր նկուղք...»[6]: Այժմ պահպանվել են միայն նկուղները, իսկ բնակելի վերնահարկը լրիվ քանդված է: Բայց նկուղները հնարավորություն են տալիս վերականգնելու սենյակների որոշ չափերը: Այսպես, նկուղների գլանաձև թաղը ուժեղացված է միմյանցից 2 մ հեռավորության վրա դրված թաղակիր կամարներով, որոնք վերևում, թաղի տակ, ունեն 0,70 մ բարձրություն: Այս ստացվում է կրկնակի քարե կամարների օգնությամբ և թելադրված է նրանով, որ վերին, բնակելի հարկաբաժնում, սենյակների միջին պատերը նստում են այդ թաղակիր կամարների վրա: Բնակելի սենյակները չափերով

[6] Ջալալեան, Ճանապարհորդութիւն... Բ, էջ 150:

կրկնել են նկուղի՝ թաղակիր կամարներով ստացված հատվածների չափերը (2,0×3,6 մ), քանակը նույնպես համընկնում է՝ 28։ Դռները բացվել են դեպի բակ, իսկ լուսավորությունը հավանաբար եղել է հարավից՝ պարսպի միջին լուսամուտներից (ներքնահարկի լուսամուտները նույնպես պարսպի միջից են)։

Շնհերի Կուսանաց անապատը ունեցել է միատեսակ խցերի շարք՝ թվով 40, կառուցված պարսպին կից[7]։ Սակայն այդ շինություններից այժմ ոչինչ չի պահպանվել, թեպետ նրանք կանգուն են եղել մինչև XIX դարի վերջը։

Այժմ գոյություն ունեցող սենյակները կառուցված են 1891 թ. որպես ծխական դպրոցի դասարաններ։

Հալիձորի բերդի և Հարանց անապատի բնակելի սենյակները չեն պահպանվել։ Կարծում ենք, որ այս երկու մենաստանների բնակելի շինությունները պետք է նման լինեն Տաթևի Մեծ անապատի համապատասխան կառուցվածքներին՝ միևնույն բջջի կրկնությամբ ստացվող բնակելի շարք, տեղադրված պարիսպներին կից (Հալիձորի բերդում, արևմտյան պարսպի մոտ նշմարվող շինությունների հետքերը, ըստ երևույթին, պատկանում են միաբանության խցերին)։

XVII դարի Սյունիքի վանքային համալիրների բնակելի կառուցվածքների համեմատությունը ցույց է տալիս, որ կան հիմնականում երկու տիպի բնակարաններ՝ վանքային և անապատային։ Առաջին խմբին պատկանող Տաթևի վանքի և Գնդեվանքի բնակարանները ընդարձակ սենյակներ են, նախատեսված մի քանի հոգու համար։ Հատակագծերը տարբեր են՝ կախված համալիրի գլխավոր հատակագծում ունեցած տեղադրությունից, շրջապատի կառուցապատումից, հորինվածքից (ընդհանուր սրահով կամ առանձին մուտքով)։ Բնակարանների շարքում առանձնանում է վանահոր բնակարանը՝ մեծ չափերով, արտաքին հարդարանքով (Տաթևի վանքում՝ սրբատաշ քարերից պատրաստված), ներսի հարմարություններով, բացվածքների մեծ չափերով և մշակմամբ (Գնդեվանք)։ Երկրորդ խմբին են պատկանում Տաթևի Մեծ անապատի, Շատին վանքի բնակարանները, որոնք ունեն էական շատ տարբերություններ (հատակագծային և ծավալային լուծման) առաջին խմբից։ Տարբերությունները արդյունք են մենաստանների (անապատների) կանոնադրության, կրոնավորների կենցաղի առանձնահատկությունների։ Միաբանության բոլոր անդամները գտնվում էին հավասար պայմանների մեջ, որը և իր արտահայտությունն է գտել նաև բնակարանների ճարտարապետության մեջ՝ միատեսակ, համարյա միևնույն չափերն ու հարմարությունները կրկնող բնակելի բջիջներ։ Ճգնավորական կենցաղը պահանջում

---

[7] Ե. Լալայան, *Զանգեզուրի գավառ*, «Ազգագրական հանդէս», հատ. Բ, Թիֆլիս, 1898, էջ 45։

*էր յուրաքանչյուրի համար առանձին խուց՝ անհատական աղոթքների, ապաշխարհանքի, ընթերցանության համար։ Այս պատճառով էլ անապատների խցերը ունեն նվազագույն չափեր՝ ապահովելով, փաստորեն, միաբանի միայն քնելը։ Ժուժկալ կենցաղը արտահայտվել է արտաքին ճակատների մշակման մեջ՝ պարզ, առանց որևէ դեկորատիվ հարդարանքի ու զարդաքանդակների։*

*Տարբերություններից բացի՝ վանքերի և մենաստանների բնակելի սենյակները ունեն և նմանություն՝ կոնստրուկցիաների, կողմնորոշման խնդիրների, որոշ մանրամասների մեջ։ Այսպես, բոլոր դեպքերում էլ սենյակները կառուցված են քարից, թաղածածկ (փայտե ծածկ չի հանդիպում), յուրաքանչյուր սենյակ ունի բուխարի, պատերի մեջ խորշեր։ Մեծ ուշադրություն է դարձվում կողմնորոշմանը՝ սենյակները նայում են դեպի հարավ, արևմուտք և արևելք, իսկ հյուսիսային կողմնորոշում ունեն օժանդակ սենյակները։*

## ՍԵՂԱՆԱՏՆԵՐ

*Սյունիքի XVII—XVIII դարերի ճարտարապետության աշխարհիկ կառուցվածքների շարքում աչքի են ընկնում սեղանատները, իրենց ֆունկցիոնալ, գեղարվեստական և մասամբ էլ կոնստրուկտիվ առանձնահատկությունների շնորհիվ։*

*Սեղանատները որպես միջնադարյան պալատական և վանքային համալիրների բաղկացուցիչ տարր երևան են գալիս դեռ վաղ միջնադարում։ Սակայն նրանք լայն տարածում գտան Հայաստանի XII—XIV դարերի վանքերում, երբ վերջիններում պաշտամունքային կառուցվածքներից բացի սկսեցին բազմաթիվ աշխարհիկ շինություններ կանգնեցնել։ Այդ դարերից պահպանվել են Հաղպատի, Կիրանց վանքի, Հաղարծնի, Թեղենյաց վանքի, Քոբայրի սեղանատները, որոնք բավականին մոնումենտալ կառուցվածքներ են և իրենց չափերով ոչ միայն չեն զիջում, այլև հաճախ գերազանցում են համալիրների եկեղեցիներին։ Այսպիսի մեծ չափերը բացատրվում է նրանով, որ այդ դարերում սեղանատները ոչ միայն հատկացված էին վանքի միաբանությանը, այլև ծառայում էին կից բնակավայրի հավատացյալներին ու բազմաթիվ ուխտավորներին հյուրասիրելու, մատաղը եփելու և բաժանելու համար։*

*XII—XIII դարերի սեղանատներն իրենց հատակագծային-ծավալային հորինվածքով բաժանվում են երկու տիպի՝ թաղածածկ դահլիճների և խաչվող կամարներով դահլիճների։*

*Առաջին տիպի լավագույն օրինակները Քոբայրի և Թեղենյաց վանքերի սեղանատներն են, որոնք ունեն միևնույն հորինվածքը և համարյա միևնույն*

չափերը։ Երկուսն էլ ընդարձակ թաղածածկ դահլիճներ են, չորս թաղակիր կամարներով (երկուսը կողքի պատերին կից), որոնք հենվում են որմնամույթերին։ Երկայնական պատերին կից, որմնամույթերի միջև և վերջիններից մինչև կողքի պատերը ձգվում են որմնակամարներ։ Սեղանատների լայնությունը հարաբերում է երկարությանն ինչպես 1:1,9։

Երկրորդ տիպին են պատկանում Հաղպատի և Հաղարծնի սեղանատները, որոնք իրենց կոնստրուկտիվ համարձակ ձևերով հայկական ճարտարապետության ինքնատիպ և արժեքավոր կառուցվածքներից են։ Սրանք հատակագծում ձգված ուղղանկյուն կառուցվածքներ են, մեջտեղում մեկ զույգ սյուներով, որոնք կարծես շենքը բաժանում են երկու մասի։ Սեղանատունը ծածկվում է երկու զույգ փոխադարձ խաչաձևվող սլաքաձև կամարներով, որոնք նստում են սյուների և որմնամույթերի վրա։

Սյունիքի XVII—XVIII դարերի կրոնական համալիրների բոլոր սեղանատները, առանց բացառության, պատկանում են թաղածածկ դահլիճի տիպին։ Այդ հորինվածքն ունեն Տաթևի Մեծ անապատի, Հալիձորի Հարանց անապատի, Գնդեվանքի, Տանձափարախի (բոլորը XVII դար), Տաթևի վանքի և Շնհերի Կուսանաց անապատի (երկուսն էլ XVIII դար) սեղանատները։ Սեղանատան համար թաղածածկ դահլիճի հորինվածքն ուշ միջնադարում ընդունված է եղել ոչ միայն Սյունիքում, այլև ողջ Հայաստանում։ Այդպիսին են նաև Գեղարդի, Էջմիածնի սեղանատները։ Սյունիքի ուշ միջնադարի սեղանատների մեծ մասը առանձին չեն կանգնած և գտնվում են պարսպապատերին կից կառուցված սենյակների շարքում, լինելով ընդհանուր կառուցապատման շարքային տարրը։ Սրանով նրանք տարբերվում են ավելի վաղ շրջանի՝ XII—XIII դարերի սեղանատներից, որոնք բոլորն էլ առանձին են կառուցված և իրենց դիրքով ու չափերով բավականին կարևոր դեր են խաղում անսամբլների ճարտարապետության ընդհանուր լուծման մեջ։ Մյուս տարբերությունը, որը կա այդ դարերի և ուշ միջնադարի թաղածածկ սեղանատների մեջ, դա հատակագծային հորինվածքի համաչափություններն են՝ ուշ միջնադարում սեղանատներն ավելի են ձգված։

Սյունիքի սեղանատներից ամենահետաքրքիրը Տաթևի Մեծ անապատի սեղանատունն է, որը դեռ անցյալ դարում գրավել է Անապատ այցելողների ուշադրությունը[8]։

Այն արևելքից-արևմուտք ձգված ուղղանկյուն շինություն է (ներսի չափերը՝ 5,62×24,63 մ), տեղադրված համալիրի հարավային պատին կից։ Սեղանատունը լավ է պահպանված։ Պատերը և թաղը կառուցված են տեղական

[8] Ջալալեան, *Ճանապարհորդութիւն...*, Բ, էջ 305։ Ե. Լալայան, *Սիսիան*, «Ազգագրական հանդես», 1898, № 1, էջ 149։

բազալտի կոպիտ մշակված քարերից, կրաշաղախով, միայն թաղակիր կամարները և որմնասյուներն են շարված մաքուր տաշված բազալտով։

Ծածկի թաղն ունի սլաքաձև կտրվածք և ուժեղացված է չորս թաղակիր կամարներով։ Կամարները հանգչում են պարզունակ քիվ ունեցող որմնասյուների վրա և ցլատում են ներքին տարածությունը հինգ համարյա հավասար հատվածի։

Սեղանատան վեց մուտքերից հինգը տեղադրված են հյուսիսային կողմում, իսկ խոհանոց տանող դուռը (որն ամենալայնն է՝ 1,15 մ) գտնվում է արևելյան պատում։

Սեղանատունը լուսավորվում է հյուսիսային և հարավային պատերում բացված դեպի ներս լայնացող ութ պատուհանների միջոցով։ Լրացուցիչ լուսավորության և օդափոխության համար ծածկում, թաղի մեջ թողնված են երդիկներ, թվով չորսը։

Ինչպես տեսնում ենք, սեղանատունը լուսավորված է բավականին լավ և առաջին հերթին անհասկանալի է թվում լրացուցիչ լուսավորության անկայությունը՝ վերևից, երդիկների միջոցով։ Սակայն այս փաստը բացատրվում է Տաթևի Մեծ անապատի կրոնական կյանքի առանձնահատկություններով։ Ըստ անապատի կանոնադրության՝ միաբանները պետք է ուտեին հետ միաժամանակ, պարտադիր, գիրք կարդային։ Հետևաբար սեղանատունը ճաշի ժամանակ վեր է ածվում նաև ընթերցարանի, որի պատճառով էլ պահանջվում էր սովորականից ուժեղ լուսավորություն։ Նույն երևույթը նկատվում է և մյուս մենաստաններում՝ Հաղբատում, Ծնհերի Կուսանաց անապատում։ Իսկ վանքերում, որտեղ սեղանատունը կատարում էր միայն մեկ՝ իրեն հատուկ ֆունկցիան, այսպիսի առատ լուսավորության չենք հանդիպում։ Օրինակ Տաթևի վանքի սեղանատունն ունի մեկ լուսամուտ և մեկ երդիկ՝ օդափոխության համար։

Տաթևի Մեծ անապատի սեղանատունը հետաքրքիր է նաև հյուսիսային, արևմտյան և հարավային պատերի երկարությամբ կառուցված քարե սեղաններով և պատերին կից, նույնպես քարե, նստարաններով։ Մաքուր տաշված քարերից (բազալտ) պատրաստված այս սեղանները ժամանակակից չեն շինությանը և կառուցված են հետագայում, գուցե XVIII դարում։ Սա ակնհայտ է դառնում, երբ տեսնում ենք հյուսիսային պատի արևմտյան հատվածում գտնվող երկու դռների շարվածքով փակ լինելը։ Դա արվել է ներսում, պատերի երկարությամբ ավելի շատ ազատ տարածություն ստանալու համար։ Տեղի այդպիսի խնայումը տվել է 42 մ ընդհանուր երկարությամբ սեղաններ, որը հնարավորություն է ստեղծել միաժամանակ ութսունից ավելի միաբան տեղավորելու նրանց շուրջը։

Տաթևի Մեծ անապատի սեղանատան ներքին տարածության համաչափու-




*Նկ. 21. Տաթևի Մեծ անապատ, սեղանատան հատակագիծն ու կտրվածքը։*

*թյունների վերլուծությունը ցույց է տալիս, որ գոյություն ունի շինության հիմնական չափերի հարաբերության կախվածությունը նրա լայնությունից։ Այսպես, սեղանատան լայնությունը (որմնասյուների միջև) հավասար է սեղանատան բարձրությանը (մինչև թաղակիր կամարի տակ) և որմնասյուների առանցքային հեռավորությանը։ Իսկ սեղանատան լայնությունը հարաբերում է ընդհանուր երկարությանը ինչպես 3:13*[9]*։*

*Մեծ անապատի սեղանատանը արևելքից կից է խոհանոցը, նույն լայնությամբ և 18,60 երկարությամբ։ Խոհանոցի այսպիսի խոշոր չափերը*

[9] *О. Халпахчьян*, Трапезные палаты Звартноца и Татеви Мец анапата. Архитектурное наследство, сб. 17, стр. 62.

բացատրվում է նրանով, որ այն միաժամանակ ծառայել է իբրև հնձան[10]։ Կառուցվածքի հյուսիս-արևելյան անկյունում տեղադրված է մեծ օջախը։ Խոհանոցը ունի սեղանատան բարձրությունը և ծածկված է գլանաձև թաղով՝ երկու թաղակիր կամարներով։ Լուսավորվում է արևելյան և հյուսիսային պատերում գտնվող մեկական լուսամուտներով և ծածկի թաղի մեջ բացված երեք երդիկներով։ Մուտքը դեպի վանքի բակը հարավային պատից է։ Նույն պատից մի այլ դուռ բացվում է դեպի խոհանոցին արևմուտքից կից մեծ մթերանոցը (թաղածածկ մեծ դահլիճ՝ 4,8×12,6 մ չափերով)։

Հալիձորի Հարանց անապատի սեղանատունն այժմ դրսից մինչև տանիքի երեսը ծածկված է հողի լիցքով, իսկ ներսից, մոտ կես մետր, հեղեղատների բերած տիղմով։ Դրսից հողով ծածկված են բոլոր լուսամուտները, որոնք տեղավորված են արևելյան և արևմտյան երկայնական պատերում։ Այժմ սեղանատունը աղոտ լուսավորվում է տանիքում պահպանված երդիկով և արևելյան պատի հյուսիսային ծայրում գտնվող, կիսով չափ հողում թաղված դռնով։ Սեղանատունը հյուսիսից հարավ ձգված ուղղանկյուն մի շինություն է՝ չեշտված սլաքաձև թաղով ծածկված, որը երեք թաղակիր կամարներով բաժանվում է 4 անհավասար մասի։ Ներքին տարածության չափերն են՝ լայնությունը թաղակիր կամարների միջև 5,40 մ, իսկ երկարությունը՝ 26,70 մ-ից 28,40 մ։ Այս տարբերությունը հետևանք է այն բանի, որ սեղանատան և եկեղեցու երկայնական առանցքների կազմած անկյունը ուղիղ չէ և արևմտյան պատը երկար է արևելյանից։ Հարավից սեղանատան համար բնական պատ է ծառայում բարձր ուղղաձիգ ժայռը, որի ստորոտում տեղադրված է Հարանց անապատի ամբողջ կոմպլեքսը։

Ներսում սեղանատունը պատերի ուղղաձիգ հատված չի ունեցել՝ թաղը սկսվում է անմիջապես հատակից։

Հալիձորի Հարանց անապատի և Տաթևի Մեծ անապատի սեղանատները. բացարձակ չափերով և հատակագծի համաչափություններով բավական նման են միմյանց և ամենախոշորներն են XVII դարի Սյունիքի համալիրների համանման կառուցվածքների մեջ։

XVII—XVIII դարերում սեղանատուն է ունեցել և Շատին վանքը՝ «Հեռի ի մենաստանէս տասն քայլիւ յարևելս կոյս է հոյակապ սեղանատուն զետեղեալ ի վերայ վեցից կամարաց որոյ երկայնութիւնն է քսան և հինգ քայլ և լայնութիւնն տասն, համակ ի կոփածոյ քարանց...»[11]։

Սեղանատնից այժմ ոչինչ չի պահպանվել, եկեղեցուց արևելք՝ մի քանի մետր հեռավորության վրա նշմարվում է միայն, որ այդտեղ երբևիցե շինություն է եղել։ Սակայն պատմիչի բերած այս սուղ տեղեկությունները հնարա-

[10] Ե. Լալայան, Սիսիան, «Ազգագրական հանդես» №1, էջ 149։

[11] Ս. Ջալալեան, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Բ, էջ 150։

վորություն են տալիս վերականգնել կառուցվածքի ընդհանուր տեսքը։ Հատակագծի չափերը կարելի է իմանալ որոշելով Զալալյանի չափի միավորի՝ ոտնաքայլի երկարությունը։ Դա հնարավոր է դառնում վանքի գավիթի չափերի մասին բերած նրա տեղեկությունների շնորհիվ՝ գավթի «...երկարութիւնն է տասն և ութն քայլ, և լայնութիւնն ութն»[12]։ Գավթի չափերն են 5,53×13,6 մ։ Ոտնաքայլի չափը ստացվում է 0,69-ից 0,75 մ, միջինը՝ 0,72 մետր։ Հետևաբար, սեղանատունը ունեցել է մոտավորապես 7 մետր լայնություն և 18 մ երկարություն։ Մեր կարծիքով սրանք արտաքին չափերն են, որովհետև 7 մետր երկարությամբ թաղի թռիչք չի հանդիպում այս դարի և ոչ մի կառուցվածքում։ Թաղն ունի վեց թաղակիր կամար, որոնք միմյանց համեմատաբար մոտ են տեղադրված՝ մոտ 2 մետր։

XVII դարին է պատկանում նաև Գնդեվանքի սեղանատունը, որը գտնվում է վանքի հարավային պարիսպներին կից, ներկառուցված բնակելի և օժանդակ սենյակների շարքում։ Այս դահլիճն ամենամեծն է եղած բոլոր շինությունների շարքում և ունի բավականին մեծ օջախ։ Հետևաբար այն զուգակցում է սեղանատան և խոհանոցի ֆունկցիաները։ Սեղանատանը կից է մի օժանդակ սենյակ, որը հատակում եղած քառակուսի անցքով կապ ունի նկուղային հարկում գտնվող մթերանոցի հետ։

Գնդեվանքի սեղանատունը հատակագծում ուղղանկյուն կառուցվածք է (4,11×7,62 մ), թաղածածկ, առանց թաղակիր կամարների։ Միակ մուտքը գտնվում է արևելյան պատի հյուսիսային անկյունում և բացվում է դեպի թաղածածկ սրահը։ Սեղանատունը ինտերյերում թողնում է բավական ընդարձակ դահլիճի տպավորություն, չնայած ոչ մեծ չափերին։ Դա արդյունք է լայնության և երկարության հարաբերության (երկու քառակուսուց մի քիչ փոքր) և սեղանատան զգալի բարձրության՝ մոտ հինգ մետր։ Ընդարձակության պատրանքը ուժեղանում է հյուսիսային և հարավային երկայնական պատերում ստեղծված մեծ որմնախորշերով։ Այս պատերի ամբողջ երկարությամբ ձգվում են զույգ որմնակամարներ, որոնք հանգչում են պատերի մեջտեղում տեղադրված, միակտուր բազալտից իրականացված որմնասյուների վրա։ Որմնակամարները հնարավորություն են տվել երկայնական պատերը ավելի նեղ կառուցել՝ հարավայինը միաժամանակ ծառայում է որպես վանքի պարիսպի պատ և առանց որմնախորշի ունի 1,27 մ լայնություն։

Սեղանատունը առատ լուսավորվում է հարավային պատի բավականին մեծ զույգ լուսամուտների միջոցով (0,85×1,08 մ)։ Ուղղանկյուն այս բացվածքները իրենց չափերով եզակի են XVII դարի համանման կառուցվածքներում։ Հյուսիսային պատում կա փոքր, կլոր լուսամուտ, որը, հավանաբար, օգտագործվել է միայն միջանցիկ օդափոխության նպատակով։

---

12 Նույն տեղում։




*Նկ. 22. Գնդեվանք, սեղանատան հատակագիծն ու կտրվածքը։*

*Տանձափարախի սեղանատունը տեղադրված է եկեղեցու հարավային կողմում, 1,7 մ հեռավորության վրա։ Սեղանատունը ուղղանկյուն թաղածածկ կառուցվածք է, որի երկայնական առանցքը զուգահեռ է եկեղեցու հիմնական առանցքին, իսկ արևմտյան ճակատը, որի առջև կան սրահի փլատակներ, մի գծի վրա է գտնվում եկեղեցու համապատասխան ճակատի հետ։ Սեղանատան ներսի չափերն են 4,1×8,33 մ, համաչափություններով՝ մոտ երկու քառակուսի։ Չկան թաղակիր կամարներ։ Դռները տեղադրված են արևելյան և արևմտյան պատերի հյուսիսային մասերում և հարավային պատում։ Լուսամուտները նույնպես երեքն են։ Սեղանատան հյուսիս-արևմտյան անկյունում տեղադրված է մեծ կրակարան։ Սա նշանակում է, որ, ինչպես Գնդեվանքում, սեղանատունն առանձին խոհանոց չի ունեցել։*

*Տաթևի վանքի սեղանատունը (XVIII դարի առաջին կես) հարակից օժանդակ սենյակներով, խոհանոցով, մթերանոցով տեղադրված է վանքի հարավ-արևելյան մասում, ձորի եզրին։ Այն մի հարկանի է, գլանաձև թաղով ծածկված, որը ուժեղացված է զույգ, թաղակիր կամարներով։ Հյուսիս-արևելքից հարավ-արևմուտք ձգվող այս դահլիճի (5,4×18,11 մ) մուտքը գտնվում է հարավ-արևելյան երկայնական պատի մեջտեղում և բացվում թաղածածկ*

մի սրահ, որտեղից կան դռներ դեպի խոհանոցը և մթերանոցը։ Պահպանված միակ լուսամուտը գտնվում է հարավ-արևմտյան պատում։ Հարավային մասում, պատի երկարությամբ պահպանվել են քարե նստարանները։ Խոհանոցը տեղադրված է սեղանատան մուտքի դիմաց և վերջինիս հետ կապվում է թաղակապ սրահով։ Քառանկյունի հատակագիծ ունի և ի տարբերություն մյուս շինությունների՝ ծածկված է խաչվող թաղերով և լուսավորվում է միայն վերևի կլոր երդիկով։ Խոհանոցի հյուսիսային անկյունում պատվանդանի վրա տեղադրված է քարե երկարավուն վառարան, որի թաղի միջում թողնված է ծխնելույզի անցքը։



Նկ. 23. Տաթևի վանք, սեղանատան հատակագիծը և կտրվածքը։

Հարավային անկյունում կա նկուղ՝ մթերքներ պահելու համար։ Խոհանոցին հարավից կից է ուղղանկյուն մի շինություն, որը ծառայել է որպես պահեստ։ Սեղանատան և խոհանոցի միջև, թաղածածկ սրահի հետևը գտնվում է մի այլ սենյակ, որի հարավային անկյունում դրվել են փայտե մեծ պահարաններ, սննդամթերքների համար։

Ճնհերի անապատի սեղանատունը (1720 թ.) տեղադրված է համալիրի հարավային մասում, եկեղեցու հատակի նիշից 3,6 մ ցածր, որի հետևանքով

սեղանատան կտուրը եկեղեցու համար ծառայում է որպես բակ՝ գավթից դուրը անմիջապես բացվում է դեպի տանիքը։

Ուղղանկյուն այս կառուցվածքը (3,78×12,61 մ) ձգվում է արևմուտքից արևելք՝ թեթևակի շեղումով և ծածկված է գլանաձև թաղով։ Մաքուր տաշված քարերից շարված են արևմտյան դուռը և զույգ թաղակիր կամարները, որոնք սեղանատան ներքին տարածությունը բաժանում են երեք հավասար մասի։ Մեկ դուռ ևս կա արևելյան պատում (այժմ փակված շարվածքով)։ Այս դուռը, հավանաբար, տարել է դեպի խոհանոցը, որից այժմ ոչինչ չի պահպանվել։

Սեղանատունը լուսավորվում է հարավային պատի երեք լուսամուտներով։ Մի ուրիշ, ավելի փոքր լուսամուտ բացված է արևմտյան դռան վրա։

Շնհերի Կուսանաց անապատի սեղանատան հատակագծի համաչափությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ այստեղ, ինչպես և Տաթևի Մեծ անապատի սեղանատան հատակագծում, կա կառուցվածքի հատակագծի հիմնական չափերի կախվածություն՝ նրա լայնությունից։ Հատակագծի հիմքում դրված է պարզ թվերի հարաբերությունը։ Այսպես, ներսի լայնությունը (պատերի միջև) հարաբերում է երկարությանը ինչպես 3:10, իսկ թաղակիր կամարների առանցքների միջև եղած հեռավորությունը՝ 6:7։ Լայնությունը հավասար է թաղակիր կամարներով սեղանատունը 3 մասի բաժանելուց առաջացած հատվածների երկարությանը՝ այսինքն ստացվում է երեք քառակուսի։

Բայց հետաքրքրականն այն է, որ հատակագծի հիմքում միաժամանակ դրված է մոդուլային համակարգը՝ որպես մոդուլ ծառայում է թաղակիր կամարի լայնությունը՝ 0,63 մ։ Այսպես, լայնությունը հավասար է ուղիղ 6 մոդուլի, երկարությունը՝ 20, թաղակիր կամարների առանցքների հեռավորությունը՝ 7, թաղակիր կամարների հեռավորությունը՝ 6 մոդուլ։

* * *

Նշված բոլոր սեղանատների կոմպոզիցիոն առանձնահատկությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ նրանք ունեն ֆունկցիոնալ, կոնստրուկտիվ և ճարտարապետական-գեղարվեստական շատ ընդհանուր հատկանիշներ։ XVII—XVIII դարերի Սյունիքի ճարտարապետական համալիրներում սեղանատները տեղադրվում են եկեղեցու մոտ, աչքի ընկնող տեղում։ Հալիձորի Հարանց անապատում և Բեխի անապատում նրանք նույնիսկ կից են հիմնական կառուցվածքին։ Իրենց չափերով սեղանատները համալիրների ամենախոշոր կառուցվածքներն են եկեղեցիներից հետո, իսկ որոշ դեպքերում երկարությամբ նույնիսկ գերազանցում են նրանց (Տաթևի Մեծ անապատում և Հարանց անապատում)։ Նրանք բոլորն էլ աչքի են ընկնում իրենց հորին-



Նկ. 24. Շնհերի Կուսանաց անապատ, սեղանատան հատակագիծն ու կտրվածքները։

վածքի հատակությամբ՝ ուղղանկյուն կառուցվածք, ծածկված գլանաձև թաղով, որը մեծ մասամբ ուժեղացված է թաղակիր կամարներով։ Հատակագծի համաչափությունները թաղակիր կամարներից զուրկ կառուցվածքներում (Գնդեվանք, Բեխի անապատ) կազմում է 1:1,6—2, իսկ թաղակիր կամարների առկայության դեպքում (Տաթևի Մեծ անապատ և Հարանց անապատ) այն կազմում է 1:4,4։ XVIII դարում կառուցված սեղանատները (Տաթևի վանք, Շնհերի անապատ), որոնք նույնպես ունեն թաղակիր կամարներ, ավելի քիչ են ձգված՝ 1:3։ Սեղանատների ուղղանկյուն հորինվածքը ֆունկցիոնալ տեսակետից ամենաշահեկանն է՝ կառուցվածքի մակերեսի առավելագույն օգտագործման տեսակետից (սեղանները դրվում են երկու կողմից երկայնական պատերի ուղղությամբ)։ Սեղանատների մուտքերը, երբ շրջապատի կառուցապատումը չի խանգարում, որպես օրենք, բացվում են երկայնական առանցքի ուղղությամբ՝ նեղ կողմից (Գնդեվանք, Տանձափարախ, Շնհեր)։ Դռների այսպիսի տեղադրումը պատճառաբանված է շարժման գրաֆիկով և թույլ է տալիս առավել նպատակահարմար, ռացիոնալ օգտագործել ներքին տարածությունը։ Լուսամուտները տեղադրված են երկայնական պատերում և հիմնականում բացվում են դեպի հարավ։ Այսպիսի կողմնորոշումը նույնիսկ բացվածքների փոքր չափերի դեպքում սեղանատան ինտերյերում ստեղծում է բավարար

լուսավորություն: Լրացուցիչ լուսավորություն ստացվում է և ծածկի թաղի մեջ թողնված երդիկների միջոցով (Տաթևի վանք, Հալիձոր, Տաթևի անապատ), որոնք, սակայն, հիմնականում ունեն օդափոխության նշանակություն:

Առանց բացառության, սեղանատները կառուցված են կոպիտ մշակված տեղական բազալտներից: Մաքուր տաշված քարերից շարված են միայն բացվածքներն ու թաղակիր կամարները: Չկան զարդաքանդակներ, տրամատներ և գեղարվեստական հարդարանքի այլ տարրեր: Ինտերյերում գեղարվեստական արտահայտչականություն ստեղծվում է թաղակիր կամարների և որմնասյուների ռիթմով: Կոնստրուկտիվ նշանակությունից բացի նրանք միևնույն ժամանակ ունեն և դեկորատիվ նշանակություն՝ սեղանատան հորիզոնական ձգված տարածությունը մասնատում են առանձին հատվածների, ավելի համաչափ կառուցվածքի լայնությանը: Սյունիքի սեղանատները աչքի են ընկնում իրենց անպաճույճ ճակատներով, պարզ միջոցներով ստացված արտահայտչականությամբ, կոնստրուկցիաների ճշմարտությամբ և XVII—XVIII դարերի հայ աշխարհիկ ճարտարապետության հետաքրքրական կառուցվածքներից են:

## ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ԿԱՌՈՒՅՎԱԾՔՆԵՐ

Սյունիքն իր աշխարհագրական դիրքով, անանցանելի լեռնաշղթաներով, խոր ձորերով մի բնական անառիկ ամրոց է: Բնության բարենպաստ պայմանները շատ հաճախ վճռական դեր են խաղացել պատմական Հայաստանի այս կարևոր նահանգի՝ օտար նվաճողների դեմ մղած պատերազմներում:

Անառիկ բնությանը դեռ վաղ միջնադարից ավելացվել են բազմաթիվ բերդեր և ամրոցներ, պաշտպանական կառուցվածքներ, որոնք հնարավորություն են տվել Սյունյաց իշխաններին միշտ հաջող պայքար մղել իրենց անկախության և ազատության համար:

Սյունյաց նշանավոր ամրոցներից կարելի է նշել Բաղաբերդը, Երնջակը, Սմբատաբերդը, Որոտնը, Պոռշաբերդը, որոնք հայտնի են դեռ վաղ միջնադարից: Բայց, ի տարբերություն պաշտամունքային կառուցվածքների, բերդերն ու ամրոցները թշնամիների կողմից ավերվել են, քանդվել, իսկ հետագայում մոտակա գյուղերի համար ծառայել պատրաստի մշակված քարի շտեմարան, որի հետևանքով հնագույն հայտնի ամրոցներից խղճուկ մնացորդներ են մեզ հասել[13]: Համեմատաբար լավ են պահպանվել ուշ միջնադարի կառուցվածքները:

Սյունիքի XVII—XVIII դարերի պաշտպանական կառուցվածքները կարելի է բաժանել երկու խմբի՝ վանք-ամրոցների և բերդերի: Առաջին խմբին են պատկանում Շատին վանքը, Տաթևի Մեծ անապատը, Հալիձորի

[13] Մ. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, էջ 195:

բերդը, Գնդեվանքը, Տաթևի վանքը, երկրորդից պահպանվել է միայն Մեղրու բերդը (Բաղաբերդը և Որոտնը, որոնք նույնպես զգալի դեր են խաղացել XVIII դարի առաջին քառորդի Սյունիքի ազգային-ազատագրական պայքարի ժամանակ, այդ տարիներին էական վերափոխման չեն ենթարկվել և պահպանել են իրենց նախնական կերպարը)։

Դեռ IX—XI դարերում միջնադարյան Հայաստանի վանքերը շրջապատվում էին պարիսպներով, որոնք, սակայն, որպես պաշտպանական կառուցվածքներ բավականին համեստ էին, և վանքերը ոչ մի հավակնություն չունեին ամրոցների դեր խաղալու։ Դրությունն արմատապես փոխվեց Հայաստանի անկախության ու պետականության կորստից հետո, երբ վանքերը սկսեցին իրենք մտածել սեփական անվտանգության ապահովման մասին։ Թե նոր կառուցվող և թե արդեն գոյություն ունեցող մենաստանները շրջապատվեցին այնպիսի պաշտպանական կառուցվածքներով, որոնք բնորոշ են ամրոցներին։ XII—XIII դարերում բուրգերով պարիսպներ կառուցվեցին մի շարք համալիրներում, որոնցից կարելի է նշել Հաղպատի, Առաքելոց վանքերը։

Պաշտամունքային և պաշտպանական կառուցվածքների համանման զուգակցման հանդիպում ենք նաև Սյունիքի համալիրներում՝ Մաքենացոց վանքում, Որոտնավանքում[14]։

Վանք-ամրոցների կառուցումը լայն տարածում ստացավ առանձնապես XVII դարում։ Հայաստանի վանքերի մեծ մասն այդ դարում շրջապատվեցին պաշտպանական կառուցվածքներով (Գնդեվանք, Տաթևի վանք, Նորավանք, Գեղարդ, Հառիճավանք)։ Բայց վանք-ամրոցը իր ճարտարապետական ավարտուն կերպարն ստացավ XVII դարում կառուցված նոր համալիրներում (Խոր-Վիրապ, Տաթևի Մեծ անապատ, Շատին վանք, Հալիձորի անապատ), որտեղ անսամբլը հենց սկզբից կառուցվում էր կրոնական և պաշտպանական տարրերի զուգակցման միասնական մտահղացումով։

XVII դարի վանք-ամրոցների ճարտարապետական ձևերի, կոնստրուկցիաների, գեղարվեստական կերպարի մեջ պարզորոշ նկատվում են գենետիկ կապը միջնադարյան հայկական ամրոցների հետ և միաժամանակ այն բոլոր տարբերությունները, որոնք արդյունք են այս յուրօրինակ զուգակցման առանձնահատկություններին և շինարարական պայմանների փոփոխմանը։ Միջնադարում վանք-ամրոցներ ոչ միայն Հայաստանում են հանդիպում, այլև Բալկանյան երկրներում։ Այնտեղ բերդերից բացի երկրի պաշտպանության գործին ծառայում էին և վանքերը, որոնք ոչ միայն կրոնական, մշակութային կենտրոններ էին, այլև հաճախ ունեին ամրոցներին հատուկ պաշտպանական կառուցվածքներ, աշտարակներ։ Հետաքրքրական է, որ, օրինակ՝ ինչ-

[14] Նույն տեղում, էջ 200։

պես Հայաստանում, այնպես էլ Ռումինիայում XVII դարում լայն տարածում է գտնում վանք-ամրոցների շինարարությունը։ Սա արդյունք է երկու ժողովուրդների իրավիճակի ընդհանրության, անկախության կորստի, որի հետևանքով վանք-ամրոցները կոչված էին «...բավարարելու երկրի պաշտպանության պահանջը այն ժամանակաշրջանում, երբ թուրքական կառավարությունը թույլ չէր տալիս ամրոցներ կառուցել[15]»։

Ուշ միջնադարում Վրաստանում նույնպես վանքերն ու խոշոր եկեղեցիներն ստացան իրենց պաշտպանական կառուցվածքները (բուրգերով ուժեղացված պարիսպներ), որոնք, սակայն, նախատեսված էին հիմնականում կրոնական կենտրոնի պաշտպանության համար։ XVI—XVIII դդ. իր անկախությունն ու կենտրոնական իշխանությունը պահպանած վրացական պետությունն ի վիճակի էր բազմաթիվ ամրոցներ կառուցել, որոնք և ապահովում էին երկրի անվտանգությունը թուրքական և պարսկական էքսպանսիայից։ Ամրոցներից հեռու բնակավայրերի բնակչության պաշտպանության համար XVIII դ. Վրաստանում ստեղծվեց մի յուրօրինակ ռազմական կառուցվածք՝ «ամրոց-ցանկապատը» (վրացերեն՝«գալավանի»)։ Սա պարսպապատ մի տարածություն էր, որտեղ թշնամու հանկարծակի հարձակման ժամանակ ապաստանում էին շրջակայքի բազմաթիվ գյուղերի ու ավանների բնակիչները[16]։

XVI—XVII դդ. պաշտպանական կառուցվածքների դեր էին կատարում և Ռուսաստանի շատ վանքեր։ Եթե սկզբնական շրջանում նրանք կառուցվում էին քաղաքներում կամ նրանց շրջակայքում, ապա ուշ միջնադարում վանքեր էին ստեղծվում Ռուսական պետության կողմից նվաճվող նոր հողերում (Պովոլժյե, Ուրալ), որոնք միաժամանակ և ամրոցների դեր էին խաղում։ Այս հետաքրքրական երևույթը իրավամբ կոչվում է «վանքային գաղութացում»[17]։

Վանքերը խոշոր ռազմական նշանակություն ունեին և կենտրոնական Ռուսաստանում՝ մանավանդ XVII դ. առաջին կեսում ռուս-շվեդական պատերազմի ժամանակ։ Այսպես, 1613 թ. Տիխվինյան վանքը ետ մղեց շվեդների հարձակումը։ Կիրիլ-Բելոզերյան վանքը նույնպես հաջողությամբ դիմագրավել է թշնամու գրոհին, XVI դ. 80-ական թվականներին ստեղծված իր պաշտպանական կառուցվածքների շնորհիվ։

Սակայն ամենախոշոր ռազմական իրադարձությունը, կապված Ռուսաստանի վանքերի հետ, Տրոիցյան-Սերգեևյան վանքի պաշտպանությունն է 1608—1610 թթ., երբ վերջինս դիմացավ թշնամու 16-ամսյա պաշարմանը։

Հարթավայրերում կառուցված ռուսական այս վանքերի համեմատ ուշ

---

15 „Всеобщая история архитектуры", т. 3. Л.-М.. 1961. стр. 492.

16 *П. П. Закарая*, Крепостные сооружения Картли, Тбилиси, 1968.

17 *М. Ильин*. Монастыри Московской Руси XVI века как оборонительные сооружения. „Исторический журнал", №7—8, стр. 76.

միջնադարի Հայաստանի վանքերն առավել անառիկ էին՝ շնորհիվ իրենց տեղադրության։

XVII դարի Սյունիքի վանք-ամրոցները տեղադրված են դժվարամատչելի, բարձրադիր վայրերում՝ լեռների զառիթափ լանջերին, հեռու բնակավայրերից և բանուկ ճանապարհներից։ Այս երևույթը բացատրվում է համալիրների բնույթով՝ անապատները (մենաստանները) պետք է հեռու կառուցվեին բնակավայրերից, ապահովելու միաբանության առանձնացումը արտաքին աշխարհից։ Սակայն տվյալ տեղը ընտրվում էր նկատի ունենալով դուտ պաշտպանության, մենաստանի անվտանգության գործոնը։ Այսպես, բարձր լեռան լանջին, գագաթից քիչ ցածր, խիտ անտառի մեջ թաքնված, կառուցված է Բեխի անապատը։ Նման տեղադրություն ունի և Հալիձորի Հարանց անապատը։ Ճատին վանքը կառուցված է Եղեգիսի ձորից շատ բարձր, դժվարամատչելի մի ամայի վայրում։ Անմատչելի տեղում է կառուցված Հալիձորի բերդը (Հալիձորի անապատը)։ Սակայն դա դեռ չի նշանակում, թե վանք-ամրոցների տեղաբաշխումը Սյունիքում ելնում էր ստրատեգիական նկատառումներից՝ ստեղծելու Հայաստանի այս մասում պաշտպանական կառուցվածքների ցանց։ Մենաստանները կառուցվում էին կամ ավելի վաղ՝ X—XIV դարերում գոյություն ունեցող կրոնական կենտրոնների տեղում (Ճատին վանք, Կնեվանք, Բեխի անապատ), կամ էլ հարևան խոշոր վանքերին (Տաթևի Մեծ անապատ)։ Հիմնականը վանք-ամրոցների պաշտպանական միջոցառումներում դա իրենց՝ մենաստանի անվտանգության ապահովումն էր։ Միայն Հալիձորի բերդը, շնորհիվ իր բացառիկ հարմար դիրքի, դարձավ XVIII դարի անկախ Ղափանի կենտրոն ու հիմնական ամրոցը և մեծ դեր խաղաց Դավիթ-Բեկի ազատագրական կռիվներում։

Հալիձորի բերդը տեղադրված է Ողջի գետի աջ ափի զառիթափ լեռնալանջի փոքրիկ գոգավորության վրա։ Այս բարձունքից իշխելով շրջապատի վրա, բերդը հսկողության տակ է պահում Ողջիի ձորը և նրանով անցնող այն կարևոր ճանապարհը, որը միացնում է Կապանը Բաղաբերդի և Տաշտունի լեռնանցքով՝ Մեղրի գավառի հետ։ Ճանապարհը՝ ձորից դեպի Հալիձորի բերդը տանող կածանները լավ դիտվում են բերդից և անհրաժեշտության դեպքում կարող են վերևից գնդակոծվել։ Իսկ հակառակ՝ հյուսիսային և արևմտյան կողմերից Հալիձորի բերդը պաշտպանվում է բնական արգելքով՝ խիստ զառիթափ և անտառապատ լեռնալանջով։

Բերդը շրջապատված է պարիսպներով։ Հատակագծում այն անկանոն քառանկյունի է, յուրաքանչյուր պարսպապատն ունի մոտ 50 մ երկարություն։ Հատակագծի անկանոն ձևը կախված է տեղանքից։ Պարիսպները հաստ չեն, նրանց լայնությունը մոտ մեկ մետր է։ Այսպիսի չափը XVIII դարի պաշտպանական կառուցվածքներում բացատրվում է նրանով, որ հրազենի

առկայության դեպքում հաստ պարիսպներն արդեն ավելորդ էին՝ քարան-ներով գրոհելու ժամանակաշրջանն անցել էր, իսկ հրանոթը դեռ լայն կիրառում չուներ լեռնային վայրերում մղվող պատերազմներում։ Արևելյան պարիսպը, որը կառուցված է տեղանքի ամենացածր մասում, միաժամանակ և հենապատ է ծառայում, որովհետև բերդի բակի արևելյան մասը լիցքի շնորհիվ բարձր է առացվել շրջապատից։ Այս պարիսպը դրսից ունի 3—3,5 մ բարձրություն, իսկ ներսից՝ կես մետր (ավելի ճիշտ այսքանն է պահպանվել թուրքերի կողմից բերդը գրավվելուց և ավերվելուց հետո)։

Ամրոցն ունի շրջանաձև հատակագծով (արտաքին տրամագիծը հինգ մետր է) մեկ բուրգ՝ հարավ-արևմտյան անկյունում։ Բուրգը տեղադրված է համալիրի համեմատաբար թույլ մասում, որովհետև եթե հյուսիսից և հարա-վից բերդը վերևից իշխում է շրջապատի վրա, ապա հարավ-արևմուտքից, ընդհակառակը, այն ցածր է գտնվում տեղանքի նկատմամբ և խոցելի է այդ կողմից։

Հալիձորի բերդը պարիսպներից և բուրգից բացի, այժմ պահպանված ուրիշ պաշտպանական կառուցվածքներ չունի։ Եկեղեցուն կից երկհարկանի շինությունները, որոնք նայում են դեպի արևելք՝ դեպի Ողջիի ձորը, հավանա-բար օգտագործվել են և ռազմական նպատակներով։ Ցավոք, հարավային խմբի արևելյան մասը լրիվ քանդված է և հնարավոր չի վերականգնել նրանց սկզբնական կերպարը, մանավանդ դեպի ձորը՝ թշնամու մոտեցման հիմնական կողմին նայող մասի հորինվածքը։ Հյուսիսից կից շինությունների երկրորդ հարկը երկար թաղածածկ սենյակ է, որը նեղ կողմով՝ ամբողջ լայնությամբ կամարակապ բացվածքով դուրս է գալիս առաջին հարկի հարթ կտուրը։ Այս հարթակը գտնվելով արևելյան պարսպից ինը մետր հեռու և վերջինից երեք մետր բարձր, փաստորեն, վեր է ածվում բերդի արևելյան մասի պաշտպանական սիստեմի երկրորդ աստիճանի (պարսպից հետո)։ Հավանաբար այսպիսի հարթակ եղել է և հարավային կողմում, երկրորդ հարկի զույգ սենյակների առջև։ Հարթակից վտանգի ժամանակ կարելի է կրակի տակ վերցնել պարիսպների մատույցները, կրկնապատկելով, ըստ բարձրության, պաշտպանական համակարգը։

Հետաքրքրական է և եկեղեցու հարթ կտուրի առկայությունը։ Եկեղեցին կառուցված է թեքադիր տեղանքի վրա՝ արևելքից նա բերդի բակից բարձր է մոտ 9 մ, իսկ հակառակ կողմից ընդամենը 1,5 մ՝ այսինքն արևմուտքից կտուրը միանգամայն մատչելի է վրան բարձրանալու համար։ Եկեղեցին սկզբնական շրջանում ունեցել է երկթեք կտուր, այդ դարի համանման կառուցվածքների համար ընդունված լանջի թեքությամբ։ Բայց հետո այն վերածվել է հարթ կտուրի, որի համար համապատասխանորեն բարձրացրել են պատերը։ Այս վերակառուցումը պարզ երևում է արևելյան ճակատի վրա




Նկ. 25ա. Հալիձորի բերդ, համալիրի կտրվածքը հյուսիսից հարավ։




Նկ. 25բ. Բուրգի հատակագիծն ու կտրվածքը։

պահպանված սկզբնական քիվի շնորհիվ։ Իսկ ի՞նչն էր այսպիսի վերակառուցման նպատակը, եթե նկատի ունենանք, որ XVII—XVIII դարերում հարթ կտուրով պաշտամունքային կառուցվածքների մենք չենք հանդիպում։ Մեր կարծիքով այն կատարվել է միմիայն պաշտպանական նկատառումներով։ Եկեղեցու կտուրը հավասարվել է երկու կողմից կառուցված երկհարկանի

շինությունների վերին հարկի կտուրներին և ստացվել է բարձրադիր մի հրապարակ՝ մոտ 200 $մ^2$ մակերեսով։ Գտնելով պարիսպների մերձակայքից արդեն զգալի բարձրության վրա, այս հարթակից կարելի է գնդակոծել ոչ միայն ամրոցի մատույցները, այլև ամբողջ ձորը, հսկողության տակ վերցնելով մի հսկայական տարածություն։ Փաստորեն ըստ բարձրության ըստացվում է եռաստիճան պաշտպանական սիստեմ՝ պարիսպներ և բակ՝ մատույցներից 4 մ բարձր, հարթակ՝ յոթ մետր բարձր և հրապարակ կտուրում՝ մատույցներից արդեն 12 մ բարձր։ Հրացանային կրակի եռապատկումը հիրավի ստեղծում է այնպիսի հարվածային ուժ, որը գումարվելով ամրոցի բացառիկ շահեկան (ռազմական տեսակետից) դիրքին, վերջինս դարձնում է անմատչելի։

Հալիձորի Կուսանաց անապատը դարձնելով ազատագրված Ղափանի կենտրոնը, Դավիթ-Բեկը, ըստ պատմիչի, այն ամրապնդել է և որոշ վերակառուցումներ արել, որովհետև անապատն ունեցել է միայն իր պաշտպանության համար նախատեսված բավականին համեստ կառուցվածքներ։ Պաշտպանության նման հաջող բազմաստիճան համակարգը և անառիկ դիրքը թույլ են տվել Դավիթ-Բեկին իր 350 զինակիցներով դիմադրելու թուրքական 70000-անոց բանակին[18]։ Եթե ընդունենք, որ թշնամու քանակը որոշ չափով գույշե և չափազանցված է պատմիչի կողմից, բայց, համենայն դեպս, ուժերի հարաբերության անհավասարությունն ակներև է՝ պաշարողները հարյուրապատիկ ավելի են։ Սակայն շնորհիվ ամրոցի պաշտպանական լավ հատկությունների «և զաւուրս վեց մարտ եդեալ միմեանս կռուէին, և ի կողմանցն հակառակաց յաւուրն հարիւր, կամ երկու հարիւր, և երբեմն նաև երեք, կամ չորս հարիւր անկանէին, և ի սոցանէ հազիւ մի ոք, կամ երկու վասն ամրութեան տեղւոյն»[19]։

Պատմիչը նկարագրում է թշնամու գրոհը, որն օգտագործել է և «մեծամեծ մեքենայս»։ Բայց բոլոր միջոցներն անարդյունք են եղել՝ բերդի փոքրաթիվ պաշտպանները կարողացել են ոչնչացնել այդ շարժական սանդուղքները նույնպես։ Ընդհանրապես Հալիձորի բերդի պաշտպանության տեսարանները մեծ հետաքրքրություն են ներկայացնում որպես XVIII դարում հայերի մղած ազատագրական պայքարի մարտերի հավաստի նկարագրություն։ Այն իր տեսակի մեջ եզակի է մեր պատմագրության մեջ։ Իսկ առանձին մանրամասնություններն արժեքավոր են՝ այդ ժամանակաշրջանի պաշտպանական կառուցվածքներն ուսումնասիրելու և նրանց ճարտարապետական որոշ առանձնահատկությունները բացատրելու համար։ Օրինակ, չի հիշատակվում հրետանու օգտագործման մասին։ Հայտնի է դառնում, որ չնայած հրազենի առկայությանը, ամրոցների պաշարման համար օգտագործել են դեռ վաղ

[18] Դաւիթ Բէգ, էջ 46—47։

[19] Նույն տեղում։

միջնադարից կիրառվող սանդուղքները՝ պարիսպներից ներս թափանցելու համար։ Իսկ պաշտպանվողները սրա դեմ պայքարել են ճիշտ այնպես, ինչպես հարյուրամյակներ առաջ «...զահագին մեծամեծ մեքենայս (ըստ կերպի մեծամեծ սանդղոց, թվով քսան և վեց) ընդ ինքեանց բարձեալ բերէին, գային մերձենային, և ի պարիսպ անդր յեցուցանէին, և բազմաթիւ յերիս խումբս բաժանեին, և յերից կողմանց զրոհ տուեալ ի մեքենայից անտի ի վերայ պարսպացն դիմէին։ Իսկ պահապանք պարսպացն ի վերուստ անտի հարեալ զնոսա, ի մեքենայիցն ի վայր թօթափէին...»[20]։

Շարժական սանդուղքների դեմ պայքարելը արևելյան և հյուսիսային պարիսպների վրա համեմատաբար հեշտ էր, քան հարավային կողմում, որովհետև առաջին երկու կողմից բերդի բակը զգալի բարձր էր, քան պարիսպներից դուրս գետինը։ Իսկ հարավից պարսպապատը բարձր է բակից մոտ չորս մետր և պաշտպանվողներին՝ պարսպի վերևում կռվելու և սանդուղքները շուռ տալու համար անհրաժեշտ էին տախտակամածներ։ Հալիձորի բերդը, ինչպես և շատ ուրիշ բերդեր Հայաստանում, ունեցել է գաղտնի անցք դեպի դուրս։ Այդպիսի անցքերը օգտագործվել են կամ ամրոցի ներսում ջրի աղբյուր չունենալու դեպքում դրսից ջուր հայթայթելու համար, կամ էլ պաշարող թշնամու վրա անսպասելի հարձակվելու համար։ Հալիձորում գաղտնի անցքը օգտագործվել է այս երկրորդ նպատակի համար, և անակնկալը թշնամու համար այնքան մեծ է եղել, որ մի քանի հարյուր զինվորներ կարողացել են խուճապի մատնել թշնամու զորքը[21]։

Սյունիքի համալիրներից պաշտպանական-ռազմական առումով աչքի է ընկնում նաև Շատին վանքը։ Վանքի հիմնական մոտեցումը հարավային կողմից (Եղեգիսի ձորից) է, որի պատճառով այս կողմի պարիսպը՝ 82 մ երկարությամբ ուժեղացված է երեք, կիսաշրջանաձև հատակագծով բուրգերով։ Հարավային պարսպին կից, բակի կողմից, պատի ամբողջ երկարությամբ կառուցված են երկհարկանի շինություններ, որոնց վերին հարկում եղել են բնակելի սենյակներ (այժմ չեն պահպանվել), իսկ ներքևի կիսանկուղային հարկը՝ ունեցել է տնտեսական նշանակությունից բացի, անհրաժեշտության դեպքում նաև պաշտպանական-ռազմական նշանակություն։ Այսպես, արևմտյան բուրգի մուտքը անմիջականորեն նկուղից է, իսկ արևելյանինը՝ նկուղին կից սենյակից։ Նկուղային հարկը, որը կազմված է երկու երկար սրահներից, ունի լուսամուտներ դեպի դուրս։ Սրանք բարձր լինելով պարսպի ստորոտից, կարող էին պաշտպանության ընթացքում ծառայել որպես հրակնատներ։

Բուրգերը հատակագծում ունեն 5 մ տրամագիծ, իսկ պատերի, ինչպես

---

20 Դավիթ Բեգ, էջ 47—48։

21 Նույն տեղում, էջ 50։

և ողջ հարավային պարսպի հաստությունը հասնում է 1,5 մետրի։ Հարավային պարիսպը լինելով ամենաերկարը և ամենաբարձրը (այժմ կիսով չափ փլված է, սակայն երկրորդ հարկի առկայությամբ ունեցել է 10—12 մ բարձրություն) միաժամանակ ամենալավ պաշտպանվածն է և կոնստրուկտիվ տեսակետից ամենակայունը՝ բուրգերի և երկհարկ կից կառուցվածքների շնորհիվ։ Բացի այդ, հարավային պարիսպը շարված է խնամքով մշակված բազալտե քարերից։

Համեմատաբար անբարենպաստ պայմաններում են գտնվում մյուս պարսպապատերը։ Ունենալով 50 մետրից ավելի (հյուսիսային՝ 80-ից ավելի) երկարություն, նրանք զուրկ են բուրգերից և կառուցված են անմշակ քարերից։ Սակայն շինարարները կարողացել են այս պարիսպներին նույնպես կայունություն տալ։ Այսպես՝ հյուսիսային, ամենաերկար պարիսպը իրականացված է ոչ թե ուղղաձիգ, այլ կոտրված, ստանալով հատակագծում մոտավորապես սեգմենտի ձև։ Սա չի բխում տեղանքից, բլրի հավասարաչափ թեքություն ունեցող լանջից, սակայն զգալի կոշտություն է հաղորդում պատին՝ կորագիծ պատն ավելի կայուն է, քան ուղղագիծ։ Երեք պարսպապատերն էլ ունեն սեղանաձև կտրվածք՝ հիմքում լայնությունը 1,60 մ է, իսկ վերևում՝ 1,0 մետր։ Այսպիսի կոնստրուկցիան առավել նպատակահարմար է երկար և առանց կոնտրֆորսների պարսպապատերի կայունությունն ապահովելու համար։ Հետաքրքրական է, որ շինարարական նման հնարքի մենք հանդիպում ենք Եղեգնաձորին հարևան Սևանա լճի ավազանում գտնվող Մաքենացոց վանքում, կառուցված IX—X դարերում[22]։

Սյունիքի նշանավոր կրոնական կենտրոններից մեկի՝ Գնդեվանքի պաշտպանական կառուցվածքները հորինվածքի հատակագծային-ծավալային լուծման մի շարք հատկանիշներով շատ նման են Տաթևի վանքի կառուցվածքներին։ Այսպես, հարավային պարսպապատը, ինչպես և Տաթևի վանքում, ուժեղացված է բուրգերով և բակի կողմից ունի կից, նույնպես երկհարկանի, շինություններ։ Նկուղային հարկը հիմնականում ունի տնտեսական նշանակություն՝ որպես մթերանոց, մասամբ վերը գտնվող սեղանատան համար։ Այս պատճառով էլ սեղանատան օժանդակ սենյակից մուտք կա դեպի նկուղ։ Բայց, միաժամանակ, վտանգի պահին, նկուղը ծառայել է պաշտպանության նպատակների համար։ Արևմտյան բուրգի մոտ գտնվող սենյակը ունի երկու դուռ, որոնցից մեկը, դեպի վեր տանող քարե աստիճաններով կապում է նկուղը բակի հետ, իսկ երկրորդը բացվում է դեպի ստորգետնյա մի միջանցք, որը տանում է բուրգի առաջին հարկը։ Հատակագծում բուրգը ներսից էլիպսաձև է և ունի երկու հրակնատ։ Հետաքրքրականն այստեղ բուրգի հյուսիսային կողմում, գետնափոր, սֆերիկ թաղով ծածկված կլոր շինու-

---

[22] Ս. Մնացականյան, Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, էջ 200։

թյունն է, որը կարճ միջանցքով հաղորդակցվում է միայն բուրգի հետ։ Հավանաբար այս գետնափոր սենյակը հանդիսացել է բուրգի զինանոցը, զինամթերքի պահեստը։ Հարավային պարսպապատը մյուսների համեմատ ավելի հաստ է։ Այս տարբերությունը հետևանք է նախ և առաջ հարավային պարսպապատի զգալի բարձրությանը և այն հանգամանքին, որ կից սենյակների ծածկի թաղերը մի կողմով հենվում են պարսպապատի վրա։

Վանքի երկու մուտքերից խոշորը և հիմնականը տեղադրված է համալիրի հյուսիս-արևմտյան մասում՝ հյուսիսային պարսպապատում։ Հետաքրքրական է մուտքի հորինվածքը՝ դարբասի վերևում կա պահակատուն, որի առկայությամբ մուտքը վերածվել է ուղղանկյուն աշտարակի։ Դեպի պահակատուն կարելի է բարձրանալ բակից, աշտարակի արևելյան կողմում շինված քարե աստիճաններով։ Աշտարակի վերնահարկն առաջին հերթին ծառայել է վանքի մատույցները հսկելու համար, որովհետև նրա երեք պատերում եղած ուղղանկյուն լուսամուտներն իրենց մեծ բացվածքներով հարմար են շրջապատը դիտելու համար։ Իսկ ինչ խոսք, անմիջական վտանգի դեպքում այս պահակատունը կարող է վերևից ուղղված հրակով ապահովել վանքի գլխավոր մուտքի պաշտպանությունը։ Նման ուղղանկյուն աշտարակով մուտքի մենք հանդիպում ենք Անբերդում։ Այստեղ բերդի հյուսիս-արևմտյան մուտքը՝ նույնպես վերևում, դարբասի վրա ունի աշտարակաձև հրակնատներով մի շինություն՝ դարբասը պաշտպանելու համար[23]։

XVII—XVIII դարերում իր պաշտպանական սիստեմը ստացավ նաև Տաթևի վանքը։ Կառուցված լինելով անդնդախոր ձորի եզրին, վանքը հարավից և մասամբ արևմուտքից դուրս է գալիս դեպի ձորը և այս կողմերից պաշտպանական կառուցվածքների կարիքը չունի։ Իսկ բնական արգելքներից զուրկ հյուսիսային կողմում կառուցված է պարսպապատ՝ մոտ 60 մ երկարությամբ և 1,5 մ լայնությամբ, որը XVIII դարի վերջին լրացվել է երկու կլոր բուրգերով՝ համալիրի հյուսիս-արևելյան և հյուսիս-արևմտյան անկյուններում։ Այժմ պահպանված է միայն առաջինը՝ Աստվածածնի բուրգը, որն ունի 6 մ-ից քիչ ավել տրամագիծ և կառուցված է խոշոր, խնամքով մշակված բազալտե քարերից, կրաշաղախով։ Բուրգը հոծ է՝ հետևաբար պաշտպանվելու և թշնամուն հակահարված տալու համար օգտագործվել է միայն վերևի հարթակը։ Աստվածածնի բուրգը գտնվում է հյուսիսային դարբասից ընդամենը 18 մ հեռու և հիմնականում կոչված է պաշտպանելու վանքի մուտքը։ Այդ պատճառով էլ հատակագծում այն պարսպապատի հարթությունից զգալի դուրս է գալիս՝ մոտ երեք քառորդի չափով։

Տաթևի վանքի հյուսիսային և արևմտյան պարսպապատերին բակի կողմից կից կառուցված են տարբեր շինություններ, որոնք լրացուցիչ ամրու-

23 Ս. Վ. Հարությունյան, Անբերդի պաշտպանական սիստեմը, «Պատմա-բանասիրական հանդես», Երևան, 1967, №1, էջ 142։




*Նկ. 26. Գնդեվանք, պահակատնով դարբասի հատակագիծն ու կտրվածքը։*

*թյուն և կոշտություն են հաղորդում պարիսպներին, և պատահական չէ, որ արևմտյան, առանձին կանգնած պարսպապատը, որին կից ոչինչ չի կառուցված, այժմ համարյա լրիվ քանդված է։*

*Սյունիքի XVII դարի կրոնական համալիրներից բուրգերով պարիսպներ ունեցել են և Շնհերի Կուսանաց անապատը*[24]*։ Սակայն եղած երեք բուրգերից և ոչ մեկը այժմ չի պահպանվել։*

*Առանց բուրգերի Սյունիքում կառուցված են Կնեվանքը և Տաթևի Մեծ անապատը (Բեխի, Հալիձորի Հարանց, Մալևի անապատների պարիսպներից միայն հետքերն են մնացել)։*

*Կնեվանքը շրջապատված է հատակագծում կանոնավոր ուղղանկյուն ձև ունեցող պարիսպներով։ Նման հորինվածքն արդյունք է հավասարաչափ, փոքր թեքություն ունեցող հարթ տեղանքի։ Պարիսպները կառուցված են ճեղքված բազալտից և գետաքարից, կրաշաղախով՝ 1,2—1,3 մ լայնությամբ։ Արևմտյան պարսպապատի մոտ, բակի կողմից երևում են ստորգետնյա գաղտնի անցքի հետքերը։ Պարիսպների վերին մասը փլված է և դժվար է որոշել նրանց սկզբնական բարձրությունը։ Կնեվանքի պաշտպանական այս համեստ սիստեմը, հավանաբար, համապատասխանել է վանքի տնտեսական*

[24] Ե. Լալայան, *Զանգեզուրի գավառ, «Ազգագրական հանդես», հատ. Բ. 1898, էջ 42։*

վիճակին։ Բայց սա փոխհատուցվում է համալիրի հաջող տեղադրումով՝ ժեք սարալանջի վերևում, գագաթի մոտ։

Պաշտպանական տեսակետից բավական հաջող է մշակված Տաթևի Մեծ անապատի հատակագծային ծավալային ողջ հորինվածքը։

Համակառույցը շրջապատված է ուղղանկյուն հատակագծով հաստ և բարձր պարիսպներով։ Սրանց պարագծով ներսից կառուցված միաբանության խցերի, կոմունալ և տնտեսական շինությունների հարթ տանիքները ծառայում են նաև որպես լավ պաշտպանված հարթակներ՝ մարտնչողներին պատսպարվելու և պարիսպների վրա գրոհող թշնամուն զինված հակահարված տալու համար։ Պարիսպների անկյուններում շինված են վերնահարկեր՝ ուղղանկյուն հատակագծով պահականներ։ Պարսպապատերը զգալի բարձր են՝ դրսից 8 մետր և բացի երկու մուտքերից չկան այլ բացվածքներ դեպի դուրս։ Խուլ և բարձր պատերը անթափանցելի են և հարձակվողի կողմից պահանջում են հսկայական ջանքեր՝ այն հաղթահարելու և պարիսպներից ներս անցնելու համար։

Տաթևի Մեծ անապատն ունի պաշտպանական համակարգն ուժեղացնող մի այլ հնարք, որն արտահայտվում է համակառույցի հատակագծային լուծման մեջ։ Հարավային կողմից մենաստանի ուղղանկյուն մասին կցված է սեղանաձև ընդհանուր հատակագծով օժանդակ շինությունների մի խումբ, որի շնորհիվ հիմնական՝ հարավային մուտքը բացվում է ոչ թե անմիջապես դեպի դուրս, այլ դեպի այս խմբի բակը։ Տնտեսական կառուցվածքների պատերը և բակի պարսպապատերը նույնքան բարձր են, որքան հիմնական մասի արտաքին պարիսպները և զգալի հաստ։ Շինությունների այս խումբը, կարելի է ասել, ծառայում է Անապատի համար որպես պաշտպանական համակարգի առաջին աստիճան, որը թափանցելուց հետո միայն կարելի է մտնել մենաստանի դարբասին։

Տաթևի Մեծ անապատը պաշտպանական առումով եթե համեմատելու լինենք Սյունիքի այլ վանքերի ու մենաստանների հետ, կտեսնենք, որ նույնիսկ բուրգերի բացակայության դեպքում միայն պարսպապատեր ունեցող այս համակառույցն իր անառիկությամբ չի զիջում այնպիսի վանք-ամրոցների, ինչպիսիք են Հալիձորի բերդը, Շատին վանքը, Տաթևը, Գնդեվանքը։

* * *

Միջնադարյան Հայաստանի մյուս ամրոցներից իր հատակագծային-ծավալային հորինվածքով առանձնանում է Մեղրու բերդը։

Մեղրու բերդի մասին առաջին պատմական տեղեկության հանդիպում ենք Ստ. Օրբելյանի մոտ, ըստ որի 1083 թ. բերդը կանգուն էր և հայտնի[25]։

---

[25] Ստ. Օրբելյան, էջ 331։

Բերդի կառուցման ժամանակը ճշգրիտ հայտնի չէ, սակայն, մեր կարծիքով ամենահավանականը Սյունիքի թագավորության ստեղծման և հզորացման տարիներն են՝ X դարի վերջը և XI դարի սկիզբը։ Մեղրու բերդը հետագա դարերում չի հիշատակվում, բայց այն, անշուշտ, ակտիվ դեր է խաղացել Սյունիքի հարավային գավառում՝ Արևիքում տեղի ունեցած բոլոր պատերազմական գործողություններում։

Այս պատերազմների հետևանքով բերդը ենթարկվել է բազմաթիվ ավերածությունների ու վերակառուցումների, որի պատճառով դժվար է վերականգնել նրա սկզբնական հորինվածքը։

Մեղրին նորից պատերազմների թատերաբեմ է դառնում XVIII դարի սկզբին, Ղափանի անկախ իշխանության կողմից թուրք նվաճողների դեմ մղած կռիվների ժամանակ։

Թուրքական զորքերի հարձակումը դիմագրավելու համար պետք էր, որ մինչև այդ Դավիթ-Բեկը հիմնովին վերակառուցած լիներ Մեղրու բերդը, որ անհրաժեշտ էր նաև «...ռազմական նոր տեխնիկայի և հատկապես հրազենի օգտագործման կապակցությամբ»[26]։

Մեղրու բերդը անցյալ դարում տեսել և նկարագրել է Դյուբուան։ Վկայակոչելով վերջինիս, բերդի մասին գրում է և Ալիշանը՝ «...յաշտարակս կամ ի մանր բերդորայս, զորս յիշէր վերոյգրեալ ուղեւորն (Տիւպուա) և որք տակաւին փոքր ի շատէ կանգուն կան ի կատարս բլրոց պատելոց զշինիւն, և քաջ ամուր վայր յարդարեն զաւանն, վասն որոյ և կոչի Մեղրոյ բերդ»[27]։

Բերդը բաղկացած է վեց աշտարակից, որոնք բարձրանում են Մեղրու Մեծ թաղի հյուսիսային կողմում։ Երկու լեռնաշղթաներ հատվելով հյուսիսում, ստեղծում են եռանկյունաձև գոգավորություն, որի հարավային լանջին տեղադրված է Մեղրի ավանը։ Այս լեռնաշղթաների առանձին դժվարամատչելի գագաթների վրա կառուցված են բերդի աշտարակները, որոնք պայտաձև ընդգրկում են ավանը հյուսիսից։ Այսպիսի տեղադրումը հուսալի պաշտպանում է ավանի մատույցները հյուսիսային, արևելյան և արևմտյան կողմերից։

Մեղրու բերդի աշտարակները հատակագծով ու տարածական ձևերով երկու տեսակ են՝ կլոր և ուղղանկյուն։

Առաջին խմբին են պատկանում չորսը, որից երեքը տեղադրված են արևմտյան լեռնաշղթայի վրա, իսկ մեկը՝ արևելյան։ Ուղղանկյուն աշտարակներ երկուսն են՝ յուրաքանչյուր լեռնաշղթայի վրա մեկական։

Վեց աշտարակներն էլ կառուցված են նույն շինանյութից՝ կոպտատաշ

---

26 Ս. Խ. Մնացականյան, *Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը*, էջ 195։
27 Ալիշան, *Սիսական*, էջ 303։



9—888

և անմշակ գրանիտե քարերից (ժայռերը, որոնց վրա բարձրանում են աշտարակները, գրանիտյա են), կավե շաղախով շարված։

Պատերի մեջ, որպես սեյսմիկ գոտիներ, օգտագործված են փայտե հեծաններ, դրված աշտարակի ամբողջ պարագծով, մի քանի շարքով։ Այս փայտե գոտիներից մի քանիսը ծառայում են նաև հրակնատների որոշ շարքերի համար որպես բարավոր։ Քարի մշակման աստիճանը, շաղախը նույնն են, ինչ և Մեղրու շրջանի ժողովրդական բնակելի տներինը։

Բոլոր կանգուն աշտարակների պատերը դեպի վերև նեղանում են՝ հիմքի մոտ նրանք ունեն 0,9—1,0 մ լայնություն, իսկ գագաթի մոտ՝ 0,7 մ։ Նեղացումը կատարվում է դրսից՝ աշտարակների ներսում պատերն ուղղաձիգ են։ Սա դրական հանգամանք է աշտարակի կայունությունն ուժեղացնելու համար, առանձնապես տվյալ շարվածքի դեպքում։ Նման երևույթի հանդիպում ենք նաև X—XII դարերի հայկական ամրոցաշինության մեջ (Բջնի Անբերդ, Կիլիկիայի մի շարք ամրոցներ)։

Կլոր աշտարակները նման են միմյանց հատակագծի չափերով և պահպանված մասի ծավալային լուծումով։ Փոքր-ինչ տարբերվում է արևելյան լեռնաշղթայի կլոր աշտարակը՝ այստեղ պատերը նեղանում են ոչ թե հիմքից սկսած, այլ մոտ երկու մետր բարձրությունից։ Արևմտյան լեռնաշղթայի հարավից հաշված առաջին և երրորդ աշտարակները վատ են պահպանվել՝ պատերը մնացել են գետնից մոտ 1,5 մ բարձրությամբ միայն, ընդ որում առաջին աշտարակը լրիվ հողով է լցված, իսկ երրորդը՝ կիսով չափ։ Սա հնարավորություն է տալիս ծանոթանալու միայն մուտքի տեղադրմանը և հրակնատների չափերին ու դասավորությանը։

Հատակագծերը կանոնավոր շրջանագծեր են, նույն տրամագծով՝ երկուսի արտաքին տրամագծերը հավասար են 5,5 մետրի, իսկ պատերի հաստությունը՝ մեկ մետրի։ Մուտքերը հյուսիսային կողմից են։ Հրակնատներ բացված են ամբողջ շրջագծով, ճառագայթաձև, հատակից մոտ մեկ մետր բարձրությամբ։ Հեռավորությունը միմյանցից՝ աշտարակի պատի դրսի երեսում՝ 1,0—1,15 մ է, անցքերի չափերն են՝ 0,16×0,6 մ։

Մյուս երկու շրջանաձև աշտարակները՝ արևմտյանը և արևելյանը, արտաքին տրամագծով չեն տարբերվում առաջիններից և ունեն պատերի նույն հաստությունը։ Բայց ավելի լավ են պահպանված և կարելի է դատել նրանց ծավալային հորինվածքների մասին։ Այս աշտարակներում հրակնատներն ըստ բարձրության եռաշարք են և շարքերը շեղված են այնպես, որ բացվածքները միմյանց նկատմամբ շախմատաձև են դասավորված։

Աշտարակների մուտքերը՝ ուղղանկյուն բացվածքներով և փայտե բարավորներով, նույնպես հյուսիսային կողմից են։ Տվյալ կողմնորոշումն ունի այն առավելությունը, որ հյուսիսից բերդը պաշտպանված է բնական պատնեշներով և թշնամու հարձակումը միայն հակառակ կողմից է հնարավոր։




Նկ. 27ա. Մեղրու բերդը, արևմտյան կլոր աշտարակի հատակագիծը, ճակատը և կտրվածքը։




Նկ. 27բ. Մեղրու բերդը, արևմտյան ուղղանկյուն աշտարակի հատակագիծը և կտրվածքը։

*Ուղղանկյուն հատակագծով երկու աշտարակների երկարությունները համարյա նույնն են՝ 10,2 մ և 10,6 մ, իսկ լայնությունները տարբեր են՝ համապատասխանաբար 2,7 մ և 3,9 մ։ Այս պատճառով արևմտյան աշտարակն ունի ավելի ձգված համաչափություններ։*

*Ուղղանկյուն աշտարակների պատերի հաստությունը և շարման տեխնիկան նույնն է ինչ կլորներինը, նրանց անկյունները կորված են, որի հետևանքով աշտարակները փաստորեն ութանիստ են դառնում։*

*Արևելյան աշտարակի հարավային պատում կա կիսաքանդ բացվածք, որը նայում է դեպի բնակավայրը։ Բայց սա որպես մուտք չէր կարող ծառայել, որովհետև դրսից՝ գետնից զգալի բարձր է։ Հրակնատները շախմատաձև դասավորված են աշտարակների ամբողջ պարագծով, արևմտյանում՝ երկշարք, իսկ արևելյանում՝ չորս շարքով։ Հրակնատների կառուցվածքն ընդհանուր է Մեղրու բերդի բոլոր աշտարակների համար։ Սրանք ուղղանկյուն բացվածքներ են, ուղղաձիգ համաչափություններով, որոնք կորվածքում, դեպի դուրս, թեք են 30°։ Հետաքրքիր է հրակնատների բարավորների կոնստրուկցիան՝ քարից, եռաշարք, դրված միմյանց հանդեպ աստիճանաձև, իջնելով դեպի դուրս։ Բացվածքի տվյալ ձևը պաշտպանում է նաև թշնամու գնդակներից։*

*Թե՛ ուղղանկյուն և թե՛ կանգուն կլոր աշտարակները երկհարկանի են եղել։ Այսպիսի եզրակացության համար հիմք են ծառայում պատերի մեջ պահպանված միջհարկային ծածկերի փայտե հեծանների հետքերը և այն հանգամանքը, որ հրակնատների շարքերը դասավորված են ըստ հարկերի՝ երկուական շարք ներքևում և վերևում։ Հարկերի բարձրությունները երկու մետրի սահմաններում է։ Դեպի երկրորդ հարկ տանող աստիճանները հավանաբար փայտյա են եղել՝ աշտարակներից և ոչ մեկում չեն պահպանվել ոչ աստիճանները, և ոչ էլ միջհարկային ծածկերը։*

*Հրակնատների շախմատաձև դասավորությունը, տարբեր բարձրությունների շարքերով (ներքևի շարքը ծնկաչոք կրակելու համար է, իսկ վերևինը՝ կանգնած), հնարավորություն է տվել առավելագույն օգտագործել պատը ըստ երկարության և ըստ բարձրության։ Օրինակ, արևելյան ուղղանկյուն աշտարակից միաժամանակ կարող են կրակել մոտ 70 հրաձիգ։ Կրակի այսպիսի կենտրոնացումը համեմատաբար փոքր պաշտպանական կառուցվածքում ստեղծում է XVIII դարի ռազմական տեխնիկայի դեպքում հզոր հարվածային ուժ, մանավանդ տեղադրված լինելով լեռնաշղթայի բարձր կատարներին, աշտարակներն անմատչելի են թնդանոթի կրակի նկատմամբ։*

*Մեղրու բերդն իր ճարտարապետությամբ ուրույն տեղ է գրավում Հայաստանի պաշտպանական կառուցվածքների շարքում։ Բերդը հիմնովին վերակառուցված լինելով XVIII դարում՝ այդ ժամանակաշրջանում իր տեսակի մեջ սակավաթիվ օրինակներից է։ Իսկապես, XIV—XVII դարերում, երբ*

*Հայաստանը վերջնականապես կորցրեց իր անկախությունը և դարձավ հարեվան պետությունների համար ռազմադաշտ, երկրում բացարձակորեն ոչ մի հնարավորություն չկար հայերի կողմից, հայկական բերդեր և ամրոցներ կառուցելու համար։ Եվ Ղափանի անկախ իշխանության կարճատև գոյությունը միայն հնարավորություն տվեց Սյունիքում վերանորոգել և օգտագործել որոշ հին ամրոցներ (Բաղաբերդ) կամ հիմնովին վերակառուցվել (Մեղրի, Հալիձոր)։*

*Առաջին կարևոր առանձնահատկությունն այն է, որ Մեղրու բերդը հայկական ճարտարապետության մեջ հայտնի միակ պաշտպանական կառուցվածքն է՝ իրականացված հրազենի օգտագործումը հաշվի առնելով։*

*Երկրորդ, Մեղրու բերդը տարբերվում է նախորդ բոլոր օրինակներից իր կառուցապատման ստրուկտուրայով՝ այն կազմված է առանձին կանգնած աշտարակներից՝ առանց պարսպապատերի։*

*Հայկական բոլոր պաշտպանական կառուցվածքներն ունեն միևնույն կոմպոզիցիոն սկզբունքը՝ աշտարակներով ուժեղացված պարիսպներով շրջափակվող տարածություն, որտեղ գտնվում է միջնաբերդը կամ բնակավայրը, վանքը, իշխանական կամ թագավորական դղյակը։ Այսպես են Անբերդը, Տիգնիսը, Մաղասբերդը, Անին, Լոռի բերդը։*

*Մեղրու բերդը չունի պարսպապատեր, որովհետև լեռնաշղթաներն իրենք են փոխարինել պարիսպներին և բնակավայրը ոչ թե աշտարակների միջև է գտնվում, այլ նրանց հարևան։ Իսկ հրազենի օգտագործման ժամանակաշրջանում պարտադիր չէ բնակավայրը անմիջականորեն շրջափակել պաշտպանական կառուցվածքներով, այլ կարելի է ավելի հարմար դիրքից այն պաշտպանել, թեկուզ և որոշ հեռավորությունից։ Այդպիսին է Մեղրին, որի բերդը հսկողության տակ է առնում ոչ միայն Մեծ թաղը, այլև ամբողջ բնակավայրը*[28]*։*

*Մեղրու բերդի պաշտպանական այս հիանալի հատկությունների շնորհիվ է, որ 1723 թ. չորս հարյուր հոգով պաշարված լինելով թուրքական տասնյակ հազարանոց բանակի կողմից, Դավիթ-Բեկի համախոհները հինգ օր անընդհատ հաջողությամբ դիմադրել են գրոհներին մինչև հիմնական ուժերի Մեղրի հասնելը և թշնամու զորքերին ետ մղելը*[29]*։ Եվ, իրավամբ, Մեղրու բերդը կարելի է համարել ուշ միջնադարի հայկական ամրոցաշինության նվաճումը։*

---

[28] *Նման աշտարակներ XVI—XVII դարերում կառուցվել են նաև Վրաստանում ու արևմըտյան Ռուսաստանում։*

[29] *Դավիթ Բեգ, էջ 29—32։*

* * *

Ձնայած այն հանգամանքին, որ Հայաստանի վանք-ամրոցները ամբողջությամբ վերցրած դեռ լրիվ չեն ուսումնասիրված, սակայն Սյունիքի նշված հուշարձանները հնարավորություն են տալիս ուշ միջնադարի կրոնական համալիրների պաշտպանական համակարգերի վերաբերյալ որոշ ընդհանուր եզրակացությունների հանգել։

XVII—XVIII դդ. վանքերի տեղադրությունը ելնում էր անվտանգության գործոնից և ընդ որում առավելագույնս օգտագործվում էին տեղանքի բնական պաշտպանական հատկությունները։ Սակայն հետաքրքրականն այն է, որ նույնիսկ լեռնային վայրերում կառուցված վանք-ամրոցների հորինվածքը ամբողջությամբ չի թելադրվել ռելիեֆի ուրվանկարից։ Վանքերի հորինվածքում ակնհայտ երևում է ձգտումը դեպի կանոնավոր, ուղղանկյուն հատակագիծը։ Ուշ միջնադարի ռազմա-պաշտպանական քաղաքաշինության մեջ հրազենի օգտագործումը իր դրսևորումը գտավ թե համալիրների ընդհանուր կերպարում և թե նրա առանձին մանրամասներում։ Վանքերը ստացան կանոնավոր ուղղանկյուն հատակագծեր, որը բխում էր ժամանակի պահանջներից և նորություն էր միջնադարյան հայ ճարտարապետության մեջ։

Ուղղանկյուն, կանոնավոր հատակագծերով են կառուցված XVII դ. բազմաթիվ խոշոր համալիրներ՝ Ստեփանոս Նախավկայի վանքը, Տաթևի Մեծ անապատը, Ագուլիսի, ս. Թովմայի վանքը, Խոր-Վիրապը, Կնեվանքը։ Վանքերի բուրգերով ուժեղացված պարսպապատերի ուղղանկյուն հատակագիծը թելադրվում էր, առաջին հերթին, ռազմական պահանջներով։ Ուղղանկյուն պարիսպներն ունեն այն առավելությունը, որ անկյուններում տեղադրված բուրգերից հնարավոր է կողքերից գնդակոծել հարձակվող թշնամուն (фланкировка)։ Սա կարևոր հանգամանք է, մանավանդ հարթավայրերում տեղադրված վանքերի համար, որտեղ հնարավոր է թշնամու հարձակումը բոլոր կողմերից։ Տվյալ դեպքում կողահարումը ամենաազդու և ուժեղ միջոցն է գրոհը ետ մղելու համար։ Այդ պատճառով զգալի մեծանում է բուրգերի և աշտարակների դերը՝ նրանք ոչ թե դիտակետեր են, այլ պաշտպանական ընդհանուր համակարգի կարևորագույն օղակներ։

Երբ տեղանքի պայմաններն ստիպում էին վանքերը կառուցել անկանոն հատակագծով, բուրգերի միջև ընկած պարսպապատերն ուղղագիծ էին իրականացնում, իսկ համալիրների գլխավոր հատակագծերը լինում էին հնգանկյուն, ռոմբաձև (այս սխեմաներն ունեն ուղղանկյուն հատակագծման բոլոր առավելությունները)։

XVII—XVIII դդ. վանք-ամրոցների արտաքին տեսքը, ընդհանուր կերպարը հիմնականում ստացվում է պաշտպանական կառուցվածքներով։ Սյունիքի համալիրներին մոտենալիս այցելուն հաճախ պարսպապատերից և

բուրգերից բացի այլ շինություններ չի տեսնում։ Իսկ պաշտպանական կառուցվածքները ոչ միայն իրականում պետք է հուսալի լինեին, այլև դա պետք է արտահայտվեր նաև նրանց արտաքին տեսքում։ Կրոնական կենտրոնի այսպիսի անառիկ կերպարը պետք է թշնամիներին վախ, իսկ պաշտպանվողներին վստահություն ներշնչեր։ Համալիրների պաշտպանական կառուցվածքների ճարտարապետության համար հատուկ է դառնում խստությունը, հակիրճությունը, որը բխում է այդ կառուցվածքների հիմնական ֆունկցիայի գեղարվեստական արտահայտությունից։

Վանք-ամրոցների ընդհանուր ճարտարապետական կերպարը բնորոշվում է կրոնական, ֆունկցիոնալ, պաշտպանական, գեղարվեստական տարրերի փոխադարձ սերտ կապով։ Այդ կերպարն առավել ամբողջական է առանձնապես այն համալիրներում, որտեղ բնակելի, տնտեսական շենքերը կոնստրուկտիվ կերպով միացված են, նույնիսկ զուգակցված են պարսպապատերի հետ։ Այս դեպքում վանքի աշխարհիկ, օժանդակ շենքերը ոչ միայն տեսողական առումով են կապվում պաշտպանական կառուցվածքների հետ, այլև ձուլվում են նրանց, կազմելով մի միասնական ճարտարապետական օրգանիզմ։

## ԻՆԺԵՆԵՐԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ

Հայաստանի լեռնային տեղանքի խիստ կտրտվածության հետևանքով հաղորդակցական կապերի դժվարությունները առանձին գավառների կամ նույն գավառի առանձին բնակավայրերի միջև պատճառ է հանդիսացել դեռ վաղ միջնադարից բազմաթիվ ինժեներական կառուցվածքներ, հիմնականում կամուրջներ շինելու համար։

Խորենացու, Ագաթանգեղոսի, Փարպեցու կողմից հիշատակվում են մի շարք կամուրջներ, որոնք կառուցված են եղել Հայաստանում մեր թվականության II և III դարերում, ինչպես, օրինակ, Արտաշատի (Արաքսի վրա), Մեծամորի, Տապերականի կամուրջները, որոնք սակայն չեն հասել մինչև մեր օրերը։ Կամրջաշինությունն Հայաստանում առանձնապես զարգանում է XII—XIV դարերում, երբ թագավորները, իշխանները, քաղաքների համայնքները կառուցում են բազմաթիվ կամուրջներ, որոնցից շատերը դեռ մինչև հիմա էլ կանգուն են և նույնիսկ ծառայում են իրենց նպատակին։ Պահպանված շինարարական արձանագրությունները ցույց են տալիս, որ միջնադարյան խոշոր վանքերը նույնպես ունեցել են դեպի վանք տանող ճանապարհների վրա իրենց կամուրջները, որոնք կառուցվել են կամ տվյալ վանքի միջոցներով, կամ էլ վանքի համար որպես նվիրատվություն։ Հայտնի են Սանահնի կամուրջը Դեբեդ գետի վրա, կառուցված XII դարի վերջում Վանանե թագուհու կողմից, Բարձրաքաշ սուրբ Գրիգոր վանքի մոտ Սաղուձոր

*գետակի վրա XIII դարում կառուցված կամուրջը, Խթրավանքի (Թարթառ գետի վրա, 1301 թ.), Նորավանքի (XIII դարի երկրորդ կես) կամուրջները և ուրիշները։*

*Կամրջաշինությունն ընդհատվելով օսմանա-պարսկական պատերազմների ժամանակ, նոր թափ է առնում XVII—XVIII դարերում։ Այդ ժամանակաշրջանում են կառուցվել Աշտարակի, Օշականի, Երևանի բազմաթռիչք խոշոր կամուրջները, որոնք իր ժամանակի ինժեներական տեխնիկայի նվաճումներն էին։*

*Այս դարերում կամրջաշինությամբ Սյունիքը քանակական տեսակետից գերազանցում էր Հայաստանի մյուս գավառներին։ Բազմաթիվ կամուրջներ կառուցվեցին Մեղրի, Գեղի, Արփա, Տաթև և ուրիշ գետերի վրա։ Ճիշտ է, սրանք ձևերով պարզ էին, միաթռիչք, բայց տեղանքի ճիշտ ընտրության, շինանյութի ռացիոնալ օգտագործման, ճարտարապետական ձևերի լակոնիզմի մեջ եղած յուրօրինակ արտահայտչականությամբ նույնպես իրենց արժանի տեղն ունեն Հայաստանի կամրջաշինության պատմության մեջ.*

*Սյունիքի XVII—XVIII դարերի կամուրջներից շատ քչերն ունեն շինարարական արձանագրություններ և սրանց ուսումնասիրությունն առանձնապես կարևոր է՝ համեմատական վերլուծությամբ չթվագրված կամուրջների ժամանակաշրջանը որոշելու համար։ Սյունիքի XVII դարի կամուրջներից առանձնապես հայտնի է այսպես կոչված «Մատուրի կամուրջը», կառուցված Տաթևի վանքի կողմից, Եղեգնաձորի շրջանի Տաթև գյուղից մոտ 4 կմ հարավ, Եղեգիս գետի վրա։ Կամրջից պահպանվել է արևմտյան՝ աջափնյա խելը, իսկ արևմտյան մասը, շինարարական արձանագրության հետ միասին քանդվել է գետի հեղեղման ժամանակ։*

*Ալիշանը, ցիտելով Քաջբերունուն, բերում է արձանագրության տեքստը և որոշ տվյալներ հայտնում կառուցվածքի չափերի մասին՝ «... քարաշէն և միակամար, կմբաձև բարձրացեալ ի միջակին, 13 Զ. երկարութեամբ կողմանէ ի կողմն, իբրև 4,5 լայնութեամբ և իբրև 9-ի բարձրութիւն։ Ի հիւսիսային դիմի արեւելակողմանն ի սրբատաշ վիմի արձանագրեալ է բանս չափաւ, զոր բազում աշխատութեամբ, վասն բարձրութեան տեղւոյն, ընդօրինակեալ է Քաջբերունի, և յայտնե զամ շինութեան 1666։*

*Ի թուին Հայոց հազար ամին-Հարիւր և հնգետասան ամին, Ճնորհաւք ամենազաւրին-Աւարտ եղեւ այս շինուածին. Կամաւն Աստուծոյ ես Սարգիս վարդապետ առաջնորդ Տաթևնու անապատին միաբանեցաք ձեռնտւութեամբ ղ միաբանիս եւ բազում ողորմութեամբ շինեցաք զկամուրջս ի հայրապետութեան Հայոց Տեառն Յակոբայ, ի թագաւորութեան պարսից Ճահ Սիւլեյմանի»[30]։ Կամուրջը կառուցված է բազալտի քարերից, միաթռիչք*

[30] Ալիշան, *Սիսական, էջ 166։*











Նկ. 28. Շատին վանքի կամրջի ճակատները և վերակազմությունը։

է, սլաքաձև կամարով։ Պահպանված մասի չափագրությունը հնարավորություն է տալիս վերակազմել կառուցվածքի նախնական տեսքը։ Լայնությունը 4 մ է, այսինքն Ալիշանի մոտ նշված չափի միավորը ստացվում է 0,88 մ։ Հետևաբար կամրջի թռիչքը (երկարությունը) եղել է 11,7 մ, իսկ բարձրությունը՝ մոտ 8 մետր։ Սլաքաձև կորվածքով թաղը երկկենտրոն է, և կենտրոնները կամարի հիմքերից ցածր և միմյանց մոտ են տեղադրված։ Այս պատճառով կամրջի ուրվագիծը գետնահար է ստացվել։

Թաղի հաստությունը (0,66 մ) հարաբերում է թռիչքի երկարությանը ինչպես 1:18։

Շատին վանքի կամրջում մենք հանդիպում ենք մաքուր տաշած և կոպտատաշ քարերի կոմբինացված շարվածքի. ճակատային պատերն իրականացված են կոպտատաշ, իսկ թաղը և թաղի կամարները՝ սրբատաշ քարերից։ Այսպիսի զուգակցումն աշխուժացնում է կամրջի ճակատների հարթությունները։ Նյութի ֆակտուրայի խաղից բացի ստեղծված է լույսի ու ստվերի խաղ՝ թաղի կամարը կողքի ճակատներից ներս է դրված 7,5 սմ։

Շատին վանքի կամուրջն առանձնապես հետաքրքիր է XVII դարի կամրջաշինության կոնստրուկտիվ և տեխնիկական կողմի ուսումնասիրության

համար: Այստեղ հիմքերի մոտ, թաղը լիցքի ծանրությունից բեռնաթափելու համար, երթևեկելի մասի տակ կառուցված է ընդերկայնական թաղածածկ խորշ, որն իր կտրվածքում ունի պարաբոլիկ ուրվագիծ: Կամրջային թաղի ետևում, այդ դատարկ տարածության մեջ (որը դրսի հետ չի հաղորդակցվում) շարվածքը կատարված է աստիճանաձև: Խորշի թաղն իրականացված է կրկնակի՝ առաջին թաղը շարված է 0.6 մ բարձրությամբ՝ համեմատաբար խնամքով մշակված բազալտից, իսկ երկրորդ թաղը, որը գնում է անմիջապես առաջինի վրայից՝ 0,3 մ բարձրությամբ ճեղքված բազալտից: Երթևեկելի մասը սվաղված է կրաշաղախով:

Իր ճարտարապետությամբ և կոնստրուկտիվ լուծումներով Շատին վանքի կամրջին նման է Տաթևի կամուրջը, կառուցված վանքից արևմուտք, Որոտանի վտակի վրա՝ Տաթևից Բարձրավան տանող ճանապարհին: Միաթռիչք (7,2 մ) կամրջի արևմտյան ճակատին գտնվող շինարարական արձանագրությունից հայտնի է դառնում կառուցման թվականը՝ 1672 թ.: Արձանագրությունը փորագրված է ուղղանկյուն քարի վրա (դեղնավուն ավազաքար), որը հագցված է պատի մեջ, կամրջի ձախ ոտքի վերևում, թաղի կամարին կից՝ «Կամաւն ամենակալին ԱՑ շինեա զկամուրճս Հաճի Ըռիզվան աղին յորում ժամանակի իշխէ յերկրիս Որոտնու ի թագաւորութեն Շայ Սիլէհմանին թվ ՌՃԻԱ»: Կամրջի գլանաձև թաղը նստում է խոր ձորակի ափերի ժայռերի վրա, գետակից մոտ երեք մետր բարձր: Թաղի կամարի կենտրոնը տեղադրըված է հիմքերի հետ նույն հարթության վրա, որի հետևանքով կամուրջն ունի կիսաշրջանաձև ուրվագիծ: Կամարը շարված է մաքուր տաշած բազալտից և 9 սմ հետ է դրված պատերի հարթությունից («Մատուրի» կամրջի նման): Ի տարբերություն կամարի և սրբատաշ բազալտից շարված թաղի, պատերը կառուցված են կոպիտ մշակված բազալտե քարերից, որոնց արանքում, շարվածքի մեջ օգտագործված է բազալտի խիճ:

Թաղի հաստության և թռիչքի երկարության հարաբերությունը կազմում է 1:18:

Պարապետը, որը անմիջականորեն նստում է կամարի վրա, խուլ է, նույն քարից շարված կիսաշրջանաձև վերջավորությամբ: Ճակատային պատերի հարթությունից պարապետը դուրս է գալիս մոտ 10 սմ, որի հետևանքով երթևեկելի մասը թաղից լայն է ստացվել: Սա եզակի դեպք է հայկական կամրջաշինության մեջ: Երթևեկելի մասը ճակատի կողմից հորիզոնական է («Մատուրի» կամրջում երկթեք է):

Նույն ժամանակաշրջանին՝ XVII դարի 70-ական թվականներին է պատկանում Սիսիանի շրջանի Դարաբաս գյուղից հյուսիս-արևելք Որոտան գետի վրա կառուցված «Արզումանի» կամուրջը: Ջախափնյա ոտքի հարավային պատի վրա հագցված են երեք շարքով վեց նեղ քարեր, որոնց վրա



Նկ. 29. Տաթևի կամրջի արևմտյան ճակատը և կտրվածքը։

փորագրված է շինարարական արձանագրությունը՝ «ի թվին Հայոց ՌՃԻԴ ի թագաւորութեան Շահ Սլէմանին և իշխան տեղացս Մաղսուտ Պէկին, որ էր վերակացի տանն արքունի, շինեցաւ կամուրջս Հաճի Ըորզվան աղին, յիշատակ իւրն, որ էր դարուղայ տեղիս եւ բազում գիւղորեից սորին... Ձեռամբ ուստա Հայրապետին»[31]։ Կամուրջը միաթռիչք է, թաղի կիսաշրջանաձև կամարով։ Պատերը կառուցված են անմշակ և կիսամշակ բազալտե քարերից, իսկ թաղը և թաղի կամարը՝ սրբատաշ բազալտից։ Թաղի կամարը, Տաթևի կամրջի նման, ետ է դրված պատի հարթությունից։ Շինարարական տեխնիկան՝ պատերի շարվածքը, թաղի կամարի նման մշակումը և ուրվագիծը, նույն մեկենասը (Ռիզվան) ինչպես և այս երկու կամուրջների կառուցման թվականների փոքր տարբերությունը՝ 3 տարի (1672—1675), հիմք են տալիս այն

[31] Ս. Բարխուդարյան, Դիվան հայ վիմագրության, պրակ 2, էջ 115։

կարծիքը հայտնելու, որ Տաթևի և Դարաբասի կամուրջների վարպետը (ճարտարապետը) նույնն է։

Այս փաստն առանձնապես կարևոր է, եթե նկատի ունենանք, որ Հայաստանում միջնադարյան կամուրջներից և ոչ մեկի կառուցողի անունը մեզ հայտնի չէ (եղած շինարարական արձանագրություններում նշված են միայն մեկենասների անունները)։ Այնպես որ Հայրապետի անունը այժմ միակ բացառությունն է։

Կամրջաշինության կուլտուրան Հայաստանում, ինչպես X—XIV դարերում, այնպես էլ XVII—XVIII դարերում անհամեմատ ավելի բարձր մակարդակի վրա է եղել, քան հարևան բոլոր երկրներում ու ընդհանրապես Արևելքում։ Իրավամբ կարելի է նշել, որ Հայաստանի միջնադարյան կամուրջները «...այն կառուցվածքներից են, որոնք համաշխարհային ճարտարապետության ամենաարժեքավոր ստեղծագործությունների շարքին են պատկանում»[32]։

## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐ

XVII—XVIII դարերում Սյունիքի մենաստանները, ինչպես և Հայաստանի բոլոր կրոնական համալիրները, զարգացած և բավականին հարուստ տնտեսություններ էին։ Տիրելով հսկայական քանակությամբ հողերի, այգիների, եղջերավոր անասունների մեծ հոտերի, վանքերը բնականաբար, պետք է ունենային և համապատասխան արտադրական կառուցվածքներ՝ հումքի և մթերքների մշակման համար։ Այս է պատճառը, որ ուշ միջնադարի կրոնական համալիրներում հանդիպում ենք ձիթահանքների, հնձանների, ջրաղացների, որոնք հայ ճարտարապետության արտադրական կառուցվածքների հետաքրքրական օրինակներից են։

Միջնադարում վանքերը այգիների հետ միասին որպես նվիրատվություն ստանում էին և հնձաններ, կառուցված համալիրներից հեռու, խաղողի այգիներում (Հաղպատ, Սանահին)։ XVII—XVIII դարերում խոշոր հնձան է ունեցել էջմիածնի վանքը։

Սյունիքի կրոնական համալիրներում պահպանվել է միայն Տաթևի Մեծ անապատի այսպես կոչված «Սևի» հնձանը, որը գտնվում է մենաստանից ոչ հեռու, լեռնալանջին, խաղողի այգում։ Այս կառուցվածքը իր հատակագծային-տարածական հորինվածքով տարբերվում է միջնադարյան մեզ հայտնի հնձաններից։ Ուղղանկյուն շենք է (7,4×3,65), դուռը և երկու փոքրիկ լուսամուտներից մեկը զետեղված են երկայնական պատում։ Մուտքից ձախ պահեստն է և առագաստը, դիմացում՝ շիրամանը։ Հնձանը փաստորեն երկհարկանի է՝ առաջին հարկը կիսով չափ թաղված է լանջի մեջ, իսկ վերևում կա

[32] *П. В. Щусев,* Мосты и их архитектура, М., 1952, стр. 180.




*Նկ. 30. Տաթևի Մեծ անապատի. հնձանի հատակագիծը և կտրվածքը։*

*կիսաբաց մի սրահ, ավելի ճիշտ ընդարձակ մի պատշգամբ, որն օգտագործվել է միրգ չորացնելու նպատակով։*

*Հայաստանում միջնադարից մեծ քանակով ձիթահանքներ են հասել։ Ձիթահանքներ են ունեցել աշխարհիկ և վանական խոշոր ֆեոդալական տնտեսությունները (Անի, Հաղպատ)։ XVIII դարում երեք ձիթահանք է ունեցել Էջմիածնի վանքը։*

*Միջնադարյան բազմասենյակ ձիթահանքի օրինակ է Տաթևի վանքի բավականին լավ պահպանված կառուցվածքը (XVIII դ.), որը գտնվում է վանքի պարիսպներից մոտ 20 մ հեռավորության վրա, դեպի հյուսիս-արևելք։ Այն բաղկացած է չորս սենյակից, ունի կոմպակտ հատակագիծ և կառուցված է բազալտի կոպիտ մշակված քարերից։ Հիմնական՝ արտադրական սենյակը երկու զույգ որմնամույթերի և ծածկի սիստեմի միջոցով բաժանվում է երեք մասի։ Կենտրոնական, ամենամեծ հատվածը՝ կալատունը ծածկված է գմբեթով, որը նստում է որմնամույթերի միջև ձգվող չորս կամարների վրա։ Կենտրոնում գտնվում է քարե բարձր եզրերով մի մեծ շրջան, ավելի ճիշտ թաս, ուղղահայաց դիրքով դրված կլոր քարե աղացով։ Այստեղ ծեծվել է*

կտավատը՝ աղացը պտտեցվել է փայտե առանցքի միջոցով, եզան կամ գոմեշի ուժով։ Կտավատը նախօրոք բովվել է սենյակի հյուսիս-արևելյան թաղածածկ, ավելի փոքր հատվածում տեղադրված վառարանում (բովում)։ Սրան սիմետրիկ, հարավ-արևմտյան նույնպես թաղածածկ հատվածում, որի անկյունում ձիթահանքի մուտքի դուռն է, գտնվում է օջախ՝ ջուր տաքացնելու համար։ Տաք ջուրն անհրաժեշտ է աղացած, մաղած կտավատի ալյուրի վրա ցանելու համար, որից հետո կլոր հարթակում նորից տրորում են մինչև մամլելու պիտանի վիճակի հասցնելը՝ մինչև շիլա ստանալը[33]։

Վառարանի մոտից դուռ է բացվում դեպի նեղ ու երկար թաղածածկ մի սենյակ՝ մամլման բաժինը։ Այստեղ գտնվում է երկրորդ կարգի լծակի սկզբունքով գործող մամլիչը՝ բաղկացած երկու հաստ գերաններից։ Սրանք արևմտյան ծայրում միացված են փայտե կոճղով, որի միջով ուղղահայաց դիրքով անցնում է փայտե մեծ պտուտակ։ Պտուտակն էլ իր հերթին անցնում է ներքևում հորիզոնական դրված կլոր աղացաքարի միջով, որը բռնակներ ունի[34]։

Հակառակ կողմից գերանները հագցված են պատի միջի փոքր խորշում, որի առջևում կա քարե տաշտակ՝ զամբյուղների կամ տոպրակների մեջ լցված շիլան ճզմելու համար։ Քամած ձեթը հոսում է տակը դրված անոթների մեջ։

Գերանների ծայրերը բարձրացնում և իջեցնում են՝ աղացաքարի և պտուտակային պտույտի միջոցով, որը կատարվում է մարդկային ուժով։ Ձիթահանքը կառուցվել է վանքի տերիտորիայից դուրս, վանքում մարդկանց, բեռնատար կենդանիների խճողում չստեղծելու, բակը չկեղտոտելու նպատակով։ Տաթևի վանքի ձիթահանքը իր տարածական-ծավալային լուծման, ծածկի տարբեր կոնստրուկցիաների սրամիտ զուգակցման, ռացիոնալ հատակագծի շնորհիվ համարվում է հայ ճարտարապետության տվյալ տիպի կառուցվածքներից ամենաարժեքավորը և հետաքրքրականը։

Միջնադարյան Հայաստանում վանքերը, արտադրական այլ կառուցվածքների շարքում, ունեցել են և ջրաղացներ, որոնք իրենք են կառուցել կամ ստացել են որպես նվիրատվություն։ Օրինակ, XVII դարում Սանահնի վանքը որպես նվեր ստացել է միանգամից երեք ջրաղաց։ XVIII դարում էջմիածնի վանքը ունեցել է տասը ջրաղաց (որից յոթը էջմիածնում)։ Սյունիքում ևս որոշ վանքեր ու մենաստաններ ունեցել են իրենց ջրաղացները (իհարկե, հնարավորության դեպքում՝ կախված տեղանքից, ջրի առկայությունից)։ Հալիձորի Հարանց անապատի և Հալիձոր գյուղի միջև ընկած ճանապարհի վրա, Որո-

[33] Հ. Խալփախչյան, Հայաստանի արտադրական կառուցվածքները, Երևան, 1961, էջ 35։
[34] Նույն տեղում։




Նկ. 31. Տաթևի վանքի ձիթհանի հատակագիծը։

տանի ափին կառուցված է եղել մի ջրաղաց, որից օգտվել են, հավանաբար, գյուղը և մենաստանը միասին։

Կրոնական համալիրների մոտ կառուցված ջրաղացի օրինակ ունենք Շատին վանքում։ Այստեղ, վանքից արևելք, պարիսպներից մոտ 50 մ հեռավորության վրա գտնվում են ջրաղացի ավերակները, որի համար ջուրը բերվել է հատուկ շինված առվով, հարևան ձորակից։ Չափերի փոքրությունը ցույց է տալիս, որ Շատինի ջրաղացը մեկ աչքով է եղել՝ փաստորեն սպասարկել է սոսկ վանքին։ Ցավոք, պահպանվել է միայն ճնշման խողովակը, իրականացված քարե (բազալտե) մեծ օղակներից։ Հետաքրքրականն այն է, որ ճնշման խողովակը կառուցված է ոչ թե թեք, այլ իջնում է ուղղաձիգ՝ ջրի սակավության պատճառով ճնշումն առավել ուժեղացնելու նպատակով։

## Գլուխ չորրորդ

# ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ ԵՎ ԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱՆԵՐԸ

### ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԳՈՐԾԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

*Հայ ճարտարապետության պատմությանը ճշգրիտ և մանրամասը հայտնի չէ միջնադարում շինարարական գործի կազմակերպման դրվածքը։ Այս հարցում շահավետ առանձնանում է ուշ միջնադարի շինարվեստը, շնորհիվ Զաքարիա Ագուլեցու «Օրագրության»։*

*Ագուլեցին՝ XVII դարի հայ վաճառականության այդ ներկայացուցիչը օրագրում մանրամասնորեն տեղեկություններ է տալիս իր ժամանակի կյանքի գրեթե բոլոր բնագավառների մասին։ Առանձնապես հետաքրքրության են արժանի նրա մանրակրկիտ ու բարեխիղճ այն գրառումները, որոնք վերաբերում են շինարարական գործին։*

*XVII դարում Հայաստանում վանքերի ու բնակավայրերի առանձին եկեղեցիների կառուցումը ֆինանսավորվել է երեք աղբյուրներից. տվյալ վանքի և էջմիածնի միջոցներից, առանձին հարուստների կողմից որպես նվիրատվություն և ժողովրդի միջոցներից՝ հանգանակությամբ հավաքված*[1]*։*

*Նոր եկեղեցի կառուցելու համար պարտադիր է եղել պարսկական կառավարության թույլտվությունը*[2]*։*

*Շինարարության հսկողությունը մեկենասը դնում էր հատուկ նշանակված վերակացուի վրա, որը պետք է հսկեր շինարարության ողջ գործին և պատասխանատու լիներ նրա համար։ Վերակացուները աշխղեկներ չէին, այլ հիմնականում հետևում էին միջոցների ճիշտ ծախսմանը, իսկ աշխատանքների կոնկրետ ղեկավարումն իրագործում էր փորձված շինարար վարպետը՝ ճարտարապետը, որ կոչվում էր «մեծ ուստա»։*

*Շինարարությունը կատարվում էր առանձին խմբերի կողմից, որոնք տարբեր էին քարի գործի և աղյուսի կոնստրուկցիաների համար, ընդ որում*

---

[1] *«Զաքարիա Ագուլեցու օրագրությունը» էջ 78, 81, 96։*

[2] *Նույն տեղում, էջ 63։*

եկեղեցու քարային աշխատանքների համար վարպետներ հրավիրել են Վասպուրականից («Քրդստանից»)։

Շինարարական գործի նման կազմակերպում եղել է և Մեղրիում, որի գմբեթավոր բազիլիկաները՝ քարաշեն հիմնական ծավալով և աղյուսաշեն գմբեթով, հար և նման են Ագուլիսի, Շոռոթի, Աստապատի եկեղեցիներին։ Ճարտարապետական մանրամասների ոչ միայն նմանությունը, այլև նույնությունը թույլ է տալիս ենթադրել, որ նրանք կառուցվել են միևնույն խմբերի կողմից։ Շինարարական գործի նման դրվածք է եղել և Սյունիքի մյուս շրջաններում, որտեղ նույնպես դրսից ճարտարապետներ և վարպետներ են հրավիրել։ Օրինակ, Շնհերի Կուսանաց անապատի եկեղեցու շինարարական արձանագրությունից պարզվում է, որ այս բազիլիկան կառուցել է «Քրդստանից» հրավիրված Մուրադ ճարտարապետը։

XVII դարի շինարարական գործին հատուկ է մասնագիտացումը, ընդ որում, բավականին նեղ։ Տարբեր տիպի աշխատանքների ու տարբեր կոնստրուկցիաների համար գոյություն են ունեցել առանձին խմբեր։ Աշխատանքն ըստ բնույթի բաժանվել է հետևյալ մասերի՝ հիմքերի և պատերի կառուցում մինչև թաղի տակը, թաղերի ու կամարների կառուցում (սրանք թաղածածկ դահլիճների ու եռանավ բազիլիկաների դեպքում)։ Գմբեթավոր եկեղեցիների համար ավելացվել են լրացուցիչ երեք էտապ ևս՝ աղյուսի թրծում, գմբեթի և ապա գմբեթի վեղարի կառուցում։ Աշխատանքների այսպիսի նեղ մասնագիտացումը նպաստեց Հայաստանում XVII դարի մի քանի տասնամյակի ընթացքում բազմաթիվ խոշոր համալիրների և տարբեր ժանրի հարյուրավոր շենքերի կառուցմանը։ Բայց, պետք է նշել, որ այս երևույթը միաժամանակ բացասական ազդեցություն ունեցավ հուշարձանների գեղարվեստական արտահայտչական կողմի վրա։ Նույն խմբերի մասնակցությունը բազմաթիվ հուշարձանների կառուցմանը, միևնույն հորինվածքի ու շենքի մասերի կրկնությունը վերջ ի վերջո զրկեցին այդ կառուցվածքները անհատականությունից՝ միջնադարյան հայ ճարտարապետության ամենաբնորոշ կողմերից մեկից։

Հուշարձանների կառուցման տևողությունը տարբեր է՝ Ագուլիսի գմբեթավոր բազիլիկայում այն կազմում է հինգ տարի, Տաթևի Մեծ անապատի եռանավ բազիլիկայի համար՝ մոտ վեց տարի։ Բայց XVII դարի բնորոշ աշխատանքների ինտենսիվությունը և մասնագիտացումը թույլ են տվել զգալի կրճատել շինարարության տևողությունը։ Ագուլիսի ս. Հովհաննես եկեղեցին կառուցվել է 1664 թ. հուլիսի 5-ից մինչև 1665 թ. նոյեմբերի 5-ը՝ 16 ամսվա ընթացքում[3]։ Խոր-Վիրապի եկեղեցու շինարարությունն ավելի կարճ

[3] «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 63—65։

է տևել՝ 1670 թ. սկզբից մինչև սեպտեմբերի 20-ը՝ մոտ 9 ամիս[4]։ Շնհերի Կուսանաց անապատի բազիլիկան, ըստ շինարարական արձանագրության, սկսել են կառուցել 1676 թ. ապրիլի 4-ին և ավարտել նույն թվականի սեպտեմբերի 30-ին՝ շինարարությունը տևել է վեց ամսից էլ քիչ, ընդամենը 178 օր։ Այսպիսի ռեկորդային ժամկետ չի հանդիպում ուրիշ ոչ մի հուշարձանում։

Հետաքրքրական է XVII դարում շինարարության մեջ օգտագործված երկարության միավորի հարցը։ Արևելյան Հայաստանում, որը գտնվում էր պարսկական տիրապետության ներքո, բնականաբար պետք է առնեին կամ շինարարության մեջ կիրառեին Պարսկաստանում ընդունված չափի միավորը՝ գազը (1,12 մ.)։ Այդ մասին որոշակի նշվում է և Զաքարիա Ագուլեցու մոտ։ Նկարագրելով սեփական տան կառուցումը, որը ղեկավարել է, անձամբ, Ագուլեցին շենքի հիմնական չափերը բերում է գազերով։ Ընդ որում արտաքին չափերը՝ երկարությունը և լայնությունն արտահայտված են ամբողջական գազերով (22×7)[5]։ Սյունիքի XVII դարի մի շարք հուշարձանների հատակագծի չափերը ցույց են տալիս, որ շենքի նշահարման ժամանակ հիմնական արտաքին չափերը ամբողջական գազերով վերցնելը ընդունված է եղել այդ դարի մոնումենտալ ճարտարապետությունում ևս։ Այսպես, Հալիձորի բերդի պարիսպներից դուրս գտնվող եկեղեցին ունի 8 գազ լայնություն և 12 գազ երկարություն, Մեղրու փոքր թաղի բազիլիկան՝ համապատասխանաբար 10×18 գազ չափերը։ Ջվարավանքում, որի արտաքին չափերն են 9×18 գազ, այդ միավորը կիրառվել է հատակագծի այլ մասերում՝ թաղի թռիչքը 5 գազ է, որմնակամարները՝ 3,5 գազ։

Սակայն այս երևույթն ընդհանուր բնույթ չունի և XVII դարի շատ հուշարձանների վրա չի տարածվում։ Անսամբլների առանձին կառուցվածքների վերլուծությունը ցույց է տալիս, որ XVII դարում կիրառվել են երկարության տարբեր չափեր՝ մոդուլներ, թե՛ ընդհանուր հորինվածքում և թե՛ նրա առանձին մասերում։ Ահա մի քանի օրինակներ։ Տաթևի Մեծ անապատի բազիլիկայի հատակագիծը (ինչպես և բարձրության որոշ չափեր) կառուցված է՝ միավոր ընդունելով 61,2 սմ. երկարության մոդուլը։ Նույն անապատի միաբանության խցերի հատակագծային-ծավալային ողջ հորինվածքի համար ընդունված է մոդուլ՝ հավասար 71 սմ։ Շնհերի Կուսանաց անապատի սեղանատունը կառուցված է 63 սմ մոդուլի հիման վրա։ Այս առումով հետաքրքրական է Մեղրու գմբեթավոր բազիլիկայի հատակագծի վերլուծությունը։ Այստեղ մոդուլը հավասար է 61,1 սմ-ի և կազմում է գմբեթի տրամագծի մեկ տասներորդ մասը։ Շենքի լայնության սկզբնական չափը եղել է 22 մոդուլ

[4] Նույն տեղում, էջ 82։

[5] Նույն տեղում, էջ 90։

*(շինարարության ընթացքում պատը 28 սմ նեղացրել են)։ Իսկ եկեղեցու երկարության չափը որոշելիս սխալ է տեղի ունեցել՝ հարավային պատը նշահարման ընթացքում մեկ մոդուլ պակաս են վերցրել, քան հյուսիսայինը՝ եթե վերջինիս երկարությունը հավասար է 40 մոդուլի, ապա հարավայինն ուղիղ 39 մոդուլ է։ Այս սխալը մեկ անգամ ևս ապացուցում է, որ XVII դարում հիմնականում շենքի արտաքին չափերն են վերցրել մոդուլներով, ընդ որում, ամբողջական թվով արտահայտված։*

*Վերը բերված օրինակներում հանդիպեցինք երկարության միավորի տարբեր մեծությունների՝ 61,2 սմ, 63 սմ, 71 սմ։ Հանդիպում են նաև այլ միավորներ՝ 80 սմ, մոտ մեկ մետր։ Չափերի այս բազմազանությունն արդյունք է Հայաստանի տարբեր գավառներում ընդունված միավորների և առանձին ճարտարապետների կամ շինարարական բրիգադների նախասիրության։ Վերջիններս ունեցել են սեփական նախընտրած չափը, որով և առաջնորդվել են այս կամ այն հուշարձանի կառուցման ժամանակ։ Իսկ ինչպես են առաջացել վերը նշված չափի միավորները և ի՞նչ հիմք ունեն նրանք։ 112 սմ պարզ է՝ պաշտոնական ընդունված չափն է՝ պարսկական գազը։ Իսկ մյուս չափերի ընտրության ժամանակ որոշիչ դեր են խաղացել մարդու (կոնկրետ դեպքում՝ տվյալ ճարտարապետի կամ վարպետի) կազմվածքի համաչափությունները։ Նման երևույթ գոյություն ունի նաև միջինասիական և պարսկական ճարտարապետության մեջ[6]։*

*Շինարարության գործում մոդուլների կիրառումը (թեկուզ և տարբեր չափերի) զգալի օգնում էր ճարտարապետներին ու վարպետներին մտահղացումը տեղում իրականացնելու և շենքի ամբողջ հորինվածքի և նրա մասերի ներդաշնակ համաչափություններ ստանալու համար։*

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐ

*Սյունիքը հարուստ է բնական ամուր քարերով՝ բազալտով և գրանիտով։ Հեշտ մշակվող տուֆաքարի բացակայությունը, հուշարձանների հիմնականում բազալտից կառուցումը իր կնիքն են դրել Սյունիքի ճարտարապետության վրա։*

*Ինչպես նախորդ դարերում, XVII դարում էլ Սյունիքի անսամբլները կառուցվել են քարից, ճնշող մեծամասնությամբ՝ բազալտից։ Քարի մշակման աստիճանը տարբեր է՝ մի շարք հուշարձաններ ամբողջովին իրականացված են մաքուր տաշած քարերից (Տաթևի անապատի, Տաթևի վանքի բազիլիկաներ)։ Բեխի, Հալիձորի, Շնհերի անապատները կառուցված են կոպիտ մշակ-*

[6] *К. С. Крюков.* Модуль в памятниках среднеазиатского зодчества, Архитектурное наследство, №17, М., 1964, стр. 158.

*ված քարերից, իսկ թաղերը՝ երկարավուն, ճեղքված բազալտից։ Գրանիտ օգտագործված է միայն Մեղրու շրջանում։*

*Հուշարձանների պատերի մեջ (հիմնականում պարսպապատերում) հանդիպում է գետաքար։ Պարիսպների շարվածքում, կոպիտ մշակված և անմշակ քարերից իրականացված, օգտագործված է նաև բազալտի խիճ՝ պատի երեսում քարերի անկանոն եզրագծերից ստացվող արանքները փակելու համար։*

*Աղյուս կիրառվել է հարավային Սյունիքում՝ հիմնականում Մեղրիում։ Աղյուսից են կառուցված Մեղրու երկու եկեղեցիների գմբեթները։ Օգտագործված է թրծված աղյուս, որի լայնության ու երկարության հարաբերությունն է 1:2։ Այսպիսի համաչափությունները հարմար են ուղղաձիգ կարանների շեղման և առավել կայուն՝ շղթայաձև շարվածք ստանալու համար։ XVII դարում չկար աղյուսի կենտրոնացված արտադրություն։ Յուրաքանչյուր առանձին դեպքում թրծման վառարանը պատրաստվում էր կառուցվող շենքի մոտ։*

*Կղմինդր Սյունիքում XVII դարում հազվադեպ է օգտագործվել։ Այն հանդիպում է միայն Հալիձորի Հարանց և Բեխի անապատներում։ Ընդ որում կղմինդրով ծածկված են եղել միայն օժանդակ շինությունները։ Ի տարբերություն աղյուսից, կղմինդրի արտադրությունը կենտրոնացվել է որոշ բնակավայրերում (օրինակ Աստապատում)[7], որտեղից գրաստներով այն տեղափոխել են շինարարության վայրը։*

*Շաղախ օգտագործվել է միայն բարձր որակի։ Սրա ապացույցն են XVII դարի այժմ կիսաքանդ այն կառուցվածքները, որոնց պատերի քարերը թափված են կամ պոկված, բայց կրաշաղախով իրականացված բուտոբետոնի միջուկը դեռ կանգուն է։ Շաղախի ամրությունն արդյունք է բաղադրիչների՝ կրաքարի և գետի ավազի բարձր որակի։ XVII դարի կառուցվածքների կրաշաղախը իր մեխանիկական և կապակցվող հատկություններով չի զիջում հայ ճարտարապետության նախորդ շրջաններում կիրառված շաղախներին։*

*Փայտ XVII դարում օգտագործվել է հիմնականում տախտակամածների համար։ Հազվադեպ փայտե գերաններ դրվել են պարսպապատերում, որպես սեյսմիկ գոտիներ (Շատին վանք)։ Փայտե կոնստրուկցիաներ ունեցել են Տաթևի վանքի XVII դարի կառուցվածքները՝ երկհարկանի պատշգամբներ բակի կողմից և պահունակային փայտի պատշգամբներ՝ խոր ձորի վրա բացվող (սրանք ավերվել են 1931 թ. երկրաշարժի ժամանակ)։*

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱՆԵՐ

*XVII դարում սկզբունքային նոր շինարարական կոնստրուկցիաներ*

7 «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 347։

չեն ստեղծվել։ Կառուցվածքներում օգտագործված են հայ ճարտարապետության մեջ մինչև այդ մշակված ձևերը։ Որոշ, ոչ էական տարբերությունները, նախորդ դարերի հետ համեմատած, արդյունք են կոնկրետ պայմանների կամ շինանյութի։

**Հիմքեր:** Սյունիքի XVII դարի մոնումենտալ կառուցվածքների պատերի հիմքերը շինված են ժապավենաձև և իջնում են մինչև ժայռային գրունտները։ Վերջինիս խորության տարբեր նիշերը որոշում են և հիմնատակի նիշերի տարբեր չափերը։ Հիմքերը խոր չեն՝ Սյունիքում ժայռային գրունտները հողի երեսին մոտ են գտնվում, որի պատճառով հիմքերի խորությունը տատանվում է կես մետրից մինչև մեկ մետր (իհարկե, հնարավոր չի ուսումնասիրել բոլոր հուշարձանների հիմքերը և այս չափերը վերաբերում են մի քանիսին միայն)։

Հիմքերը շարված են անմշակ և կիսամշակ բազալտե քարերից, կրաշաղախով, կանոնավոր շարքերով։ Սա ցույց է տալիս, որ հիմքերի շարվածքի որակի վրա մեծ ուշադրություն է դարձվել և այն շարել են ինչպես պատ։ Այդ մասին որոշակի նշում է Զաքարիա Ագուլեցին[8]։

Հիմքերի լայնությունը պատերի լայնությանը շատ քիչ է գերազանցում՝ հինգ սանտիմետրի սահմաններում։ Հիմքերը հանցվել են մինչև հողի երեսը, որից հետո առանց որմնախարիսխների, բարձրացվել են կառուցվածքի պատերը։

**Պատեր:** Պատերի շարվածքը կատարվել է հայ ճարտարապետության համար ավանդական «միդիս» սիստեմով՝ երկու երեսից քարի շարվածք, միջուկը լցված բուտոբետոնով։

Պատերի հաստությունը XVII դարի հուշարձաններում տարբեր է, կախված կառուցվածքի տիպից։ Թաղածածկ դահլիճների համար, որոնք որմնամույթեր և որմնակամարներ չունեն, այն զգալի հաստ է՝ մինչև 1,55 մ (Հալիձորի բերդ)։ Այսպիսի մեծ հաստություն անհրաժեշտ էր համեմատաբար մեծ թռիչք ունեցող թաղի հրող ուժին դիմակայելու համար։ Եռանավ բազիլիկաների պատերի հաստությունը տատանվում է 1,21 մ-ից (Տաթևի վանք, Մեղրի) մինչև 1,37 (Տաթև, Հալիձորի անապատներ)։ Առանձնանում է Շընհերի անապատի մեկ զույգ մույթով եռանավ բազիլիկան՝ պատերն ունեն 0,9 մ հաստություն, որին ավելացված է 20 սմ. լայնությամբ որմնակամար, ընդհանուրը՝ 1,1 մ։ Պատերի այսպիսի կոնստրուկցիան ամենանպատակահարմարն է XVII դարի շինարարական պրակտիկայում և ճարտարապետի մեծ փորձի և վարպետության արտահայտությունն է։

Գմբեթավոր բազիլիկաների (Մեղրի) պատերն ունեն 1,35—1,36 մ հաստություն։ Կառուցվածքների արտաքին պատերի այսպիսի լայնությունը

[8] «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 96։

*գերազանցում է X—XIV դարերի հուշարձաններում ընդունված չափերին և ավելի մոտ է V—VII դարերի կառուցվածքներին։*

*XVII դարում կա պաշտամունքային կառուցվածքների մի հորինվածք, որն այս հարցում շահավետ տարբերվում է մյուսներից՝ որմնամույթերով ու որմնախորշերով դահլիճը։ Երկայնական պատերին կից հզոր որմնամույթերը և նրանց միջև որմնակամարները վերցնում են ծածկի ծանրությունը և թաղի հրող ուժը։ Սա հնարավորություն է տվել նույնիսկ թաղի մեծ թռիչքի դեպքում պատերն իրականացնել 1,05—1,15 մ հաստությամբ։*

*XVII դարի համալիրների բնակելի ու կոմունալ շինությունները նույն անսամբլների եկեղեցիների համեմատությամբ ավելի նեղ պատեր ունեն՝ 0,95—1,0 մ։*

*Պարսպապատերի հաստությունը տարբեր է, այն նույնիսկ տատանվում է միևնույն համալիրի սահմաններում՝ եթե մեծ մասամբ նրանք ունեն 80—100 սմ լայնություն, ապա թշնամու հավանական մոտեցման կողմն ուղղված պարիսպները, որոնք ուժեղացված են և աշտարակներով, շարված են զգալի լայն՝ 1,4—1,55 մ (Գնդեվանք, Շատին վանք)։*

*Պատերի հաստության նվազում նկատվում է և ըստ ժամանակաշրջանի՝ եթե անսամբլների XVII դարի սեղանատներն ունեն մինչև 1,3 մ լայնությամբ պատեր, ապա XVIII դարի առաջին կեսում կառուցված Շնհերի Կուսանաց անապատի և Տաթևի վանքի սեղանատներում այն հավասար է 1,08—1,18 մ։ Պատերի տարբեր լայնությունները XVII դարում ստացվում են ոչ թե երեսապատման քարերի չափերի մեծության հաշվին (այն ընդհանուր առմամբ նույնն է՝ թե նեղ և թե լայն պատերում), այլ բուտոբետոնի զանգվածի հաշվին։*

*Երեսպատման քարերի մշակման աստիճանը առանձին համալիրներում տարբեր է։ Տաթևի Մեծ անապատում և Շատին վանքում բազիլիկաների պատերը երկու կողմից էլ մաքուր տաշած քարերով են շարված։ Առանձին քարերի հպումը միմյանց կատարված է մեծ խնամքով, կարանները համարյա աննկատ են և քարերը տարբերվում են միայն իրենց գույնով և տոնով, ճիշտ այնպես, ինչպես հայ ճարտարապետության դասական հուշարձաններում։*

*XVII դարի կառուցվածքների մեծ մասի պատերը շարված են կիսամշակ բազալտե քարերից, որձաքարից, սակայն այս դեպքում ևս մեծ ուշադրություն է դարձվել շարվածքի որակին՝ հնարավորին չափ քարերը հպված են միմյանց, իսկ արանքները փակված են խճով կամ գետաքարով։ Սրա շնորհիվ շաղախը բոլորովին դուրս չի գալիս պատի արտաքին հարթություններում։*

*Թե սրբատաշ և թե կիսամշակ քարերից իրականացված շարքերը հորիզոնական են, բայց տարբեր բարձրություններով։ Խստորեն չի պահպանվում միևնույն բարձրությունը նաև յուրաքանչյուր շարքի համար՝ քարերի չափերը*

*տարբեր են ու մեկ շարքի բարձրությունը տատանվում է 0,15-ից մինչև 0,5—0,6 մ։ Խոշոր քարեր հիմնականում օգտագործվել են պատերի ստորին մասում։ Սա մեծացնում է պատի կայունությունը և ստեղծում պատի վերևից դեպի ներքև ծանրացման տպավորություն, մոնումենտալություն հաղորդելով նույնիսկ ոչ մեծ կառուցվածքներին։*

*Մեծ, մոտավորապես 0,5×0,8 մ չափի քարեր են օգտագործված և պատասխանատու հանգույցներում՝ կառուցվածքի անկյուններում, ընդ որում, ի տարբերություն մնացած շարվածքի, այս քարերը սրբատաշ են։ Անկյունների ուժեղացումը նույնպես կարևոր է կոնստրուկտիվ տեսակետից և ուժեղացնում է կառուցվածքի ընդհանուր դիմադրությունը սեյսմիկ ուժերի նկատմամբ։*

*Շարվածքում ընդունված է քարերի ուղղաձիգ կարաններ։ Թեք, ատամնավոր կամ ձևավոր կարաններ չեն հանդիպում։ Բացառություն է Շատին վանքի բազիլիկայի քիվի տակ գտնվող անկյունային քարերի կարանները, որոնք թեք են շարվածքի նկատմամբ և ուղղահայաց են քիվին։*

**Մույթեր**։ *XVII դարի հուշարձաններում առանձին կանգնած հենակետերն իրականացված են հաստահեղույս մույթերի ձևով և կամարաշարքերում սյուներ չեն օգտագործվել։ Միայն տանիքների վրա տեղադրված զանգակատըների ոչ մեծ ռոտոնդաներում են սյուներ կիրառվել, այն էլ միակտոր քարից պատրաստված։*

*Եռանավ կառուցվածքների նավերի թաղերի և գմբեթավոր բազիլիկաների գմբեթի ծանրությունները կրում են մույթերը։ Սրանք, որպես օրենք, շարված են խոշոր չափերի, մաքուր տաշած բազալտե քարերից։ Մույթերը կառուցված են պատի շարվածքի սկզբունքով՝ արտաքին երեսները քարից, միջուկը բուտոբետոնից։ Ունեն տարբեր հորիզոնական կտրվածքներ՝ քառակուսի, ուղղանկյուն, T-աձև, խաչաձև։ Մույթերն իրենց չափերով ոչ միայն բավարար են, այլև զգալի պաշար ունեն վերևից եկող բեռը կրելու համար։ Մույթերի երկարությունը տատանվում է եռանավ բազիլիկաներում 1,37 մ-ից մինչև 1,49 մ, գմբեթավոր բազիլիկաներում 1,0 մ-ից մինչև 1,5 մ։ Լայնությունները երկու դեպքում էլ 0,90-ից մեկ մետր է։ Բարձրությունները (առանձին կանգնած մասի) 2—3 մետր է, հազվադեպ հասնում է 4 մետրի։ Մույթերը վրան հանգչող կամարների հետ կազմում են ստատիկ ամուր սիստեմ, կոնստրուկտիվ և սեյսմիկ պահանջներին միանգամայն բավարարող։ Որմնամույթերը մեծ դեր են խաղում թաղածածկ դահլիճների հորինվածքում։ Նրանք են հիմնականում կրում ծածկի ծանրությունը, որի պատճառով իրականացվում են պատերից էլ հաստ՝ 1,2—1,5 մ, իսկ պատերի հարթությունից դուրս են գալիս 0,75-ից մինչև 1,5 մ։ Որմնամույթերի շարվածքի տեխնիկան նույնն է, ինչ առանձին կանգնած մույթերինը՝ կառուցված են խնամքով, մաքուր տաշած քարերից, որոնցից խոշորներն օգտագործված են ներքևի մասում։*

**Բացվածքներ**: XVII դարի կառուցվածքներում բացվածքները բազմազան են թե՛ չափերով և թե՛ ձևերով:

Լուսամուտների բացվածքներն ըստ բարավորի ձևի կարելի է բաժանել երկու խմբի՝ հորիզոնական և կիսաշրջանաձև վերջավորությամբ: Փոքր լայնությամբ լուսամուտները (0,1—0,3 մ) վերջանում են կամարով, որն ուղղակի փորված է բարավորի քարի մեջ: Ավելի մեծ բացվածքները՝ մինչև 0,9 մ ծածկվում են միակտուր հորիզոնական բարավորով: Այն լուսամուտները, որոնք դեպի ներս լայնանում են, արտաքին ճակատում ունեն մեկ քարից պատրաստված բարավոր, իսկ ներսից ծածկվում են կամարով: 0, 9 մ-ից լայն լուսամուտներ չեն հանդիպում:

Դռների բացվածքները նույնպես, ըստ վերին մասի ավարտման ձևի, բաժանվում են երկու տիպի՝ հորիզոնական բարավորով և կամարակապ: Միակտուր քարից բարավորով ծածկվում են մինչև 1,4 մ լայնության բացվածքները: Ավելի մեծ թռիչքները՝ 1,4-ից մինչև 1,7 մ ծածկվում են կամարներով:

XVII դարի հուշարձանների դռների մեծ մասը, հորիզոնական բարավորով, ըստ լայնության ունեն հետևյալ կառուցվածքը՝ ճակատի կողմից այն մշակված է կամարով 25—30 սմ հաստությամբ, որից հետո գալիս է դռան ուղղանկյուն բացվածքը՝ ծածկված հորիզոնական բարավորով (նույնպես 25—30 սմ հաստությամբ), ապա բացվածքի մնացած մասը, ծածկված կիսաշրջանաձև կամ սլաքաձև կամարով: Դռան ուղղանկյուն բացվածքի ներգծումը կրկնակի կամարների միջև, արտահայտչական նշանակությունից բացի (մուտքի շեշտում) հիմնականում ունի կոնստրուկտիվ դեր՝ նրանք են կրում բավականին հաստ պատի բեռը, և ոչ թե բացվածքի արխիտրավը: Իսկ հորիզոնական բարավորը ունի նաև այն ֆունկցիոնալ նշանակությունը, որ դռան ուղղանկյուն ձևը ավելի հարմար է փայտե փեղկերի համար:

Ավելի մեծ թռիչքներ ունեցող բացվածքները ծածկվում են կամարներով, կիսաշրջանաձև կամ սլաքաձև ուրվագծով: Վերջինիս ձևը սեյսմիկ առումով ավելի կայուն է, որովհետև նույնիսկ վնասվելով, այն աշխատում է որպես ճկուն սիստեմ[9]: Այս է, պատճառը, որ XVII դարում կամարները, առանձնապես մեծ թռիչք ունեցողները, հիմնականում երկկենտրոն են:

Եռանավ բազիլիկաներում և գմբեթավոր կառուցվածքներում կամարների թռիչքը հասնում է մինչև հինգ մետրի: Լայնությունները տատանվում են 0,6—1,0 մ-ի սահմաններում: Շենքի ընդհանուր կառուցվածքում կարևոր կոնստրուկտիվ տարր լինելով, կամարները շարվում են մաքուր տաշած բազալտե քարերից, մեծ խնամքով: Մեղրու շրջանի մի շարք հուշարձան-

---

[9] *О. Х. Халпахчьян,* Строительные традиции народных мастеров Армении, Архитектурное наследство, №3, 1953, стр. 69.

*ներում այն կառուցվում է սեպաձև, կոպիտ մշակված բազալտե քարերից։ Այս դեպքում շինարարները կիրառել են մի հետաքրքիր հնարք՝ հիմնական կամարի վրայից, նույն տիպի քարերից շարել են երկրորդ կամարը, և կրկնակի կամարներով այս կոնստրուկցիան տվյալ ոչ բարձրորակ շարվածքի դեպքում ստացել է միանգամայն բավարար կայունություն և կրողունակություն։*

*Սրբատաշ քարերից շարված կամարների դեպքում առանձին քարեր երկարավուն են, աղեղնաձև։ Քարերի չափերը տարբեր են՝ վարպետներն աշխատել են ձեռքի տակ եղած քարակտորներն օգտագործել իրենց լրիվ երկարությամբ։ Քարերի թիվը կենտ է՝ կամարի վերևում, սիմետրիայի կենտրոնում տեղադրվում է «կողպեքի» քարը։*

*XVII դարի կամարների թռիչքները առանձնապես մեծ չեն, նրանք միայն ինժեներական կառուցվածքներում են հասնում մինչև 12,0 մ երկարության («Ծատուրի» կամուրջ)։*

**Թաղեր:** *Սյունիքի XVII դարի բոլոր հուշարձաններում ծածկերն իրականացված են թաղով կամ գմբեթով, հարթ ծածկեր չեն հանդիպում։ Եռանավ բազիլիկաների և թաղածածկ դահլիճների թաղերը հիմնականում ունեն 4—5 մ թռիչք, ամենամեծը Հալիձորի բերդի եկեղեցու թաղն է (6,15 մ)։*

*Թաղերի շարվածքի տեխնիկան երկու տեսակ է։ Առաջինը շենքի երկայնական առանցքին զուգահեռ շարքերով, բազալտե կիսամշակ քարերի շարվածքն է։ Այս ձևը նման է հայ ճարտարապետության մեջ վաղուց ի վեր ընդունված սիստեմին։ Սակայն նախորդ դարերում թաղի քարերն արտաքին երեսից մաքուր են տաշած, միմյանց հպման եզրերը լայն են և քարը ծառայում է նաև կաղապար բուտոբետոնի համար։ Հիմնականում աշխատում էր քարը և նույնիսկ մեծ թռիչքների դեպքում թաղակիր կամարների կարիքը չկար։ XVII դարում թաղի շարվածքի սիստեմը տարբեր է՝ քարերը կոպիտ են մշակված, միմյանց լրիվ չեն հպվում և քարերի հետ միասին աշխատում է նաև շաղախը։ Այս երևույթն ավելի ցայտուն է XVII դարի թաղերի շարվածքի երկրորդ ձևում՝ այն իրականացված է նեղ, ճեղքված բազալտի քարերից, որոնք շարված են աղյուսի սկզբունքով։ Այսպիսի թաղերը կոնստրուկտիվ առումով ավելի թույլ են, որի հետևանքով նրանք երկար թռիչքների դեպքում ուժեղացվում են թաղակիր կամարներով։ Իսկ, ի տարբերություն թաղերի, թաղակիր կամարները բացառապես շարված են մաքուր տաշած քարերից, մեծ խնամքով։*

*Թաղերի այսպիսի սիստեմները պահանջում են տախտակամածների և փայտե կաղապարների օգտագործում։ Որ XVII դարի հուշարձաններում օգտագործվել են և փայտե կամարակալները, երևում է Կարմրավանքի օրինակով։ Այստեղ, որպեսզի բարձրությամբ համատարած տախտակամածներ*

չպատրաստեն, կամարակալները հենել են փայտե հեծանների վրա, որոնք դրվել են թաղի թռիչքի ուղղությամբ, ծայրերը հենելով թաղի առաջին շարքի վրա։ Կարմրավանքում վեց զույգ այսպիսի խորշեր կան ընդերկայնական պատերի մեջ, ծածկի թաղի հիմքին համասար։ Հեծանների ծայրերի այս բները հետագայում ծածկվել են նույն չափի քարերով, սակայն, մի քանի դեպքում այդ քարերը ինչ-ինչ պատճառներով չեն տեղադրվել։ Կամարակալների և տախտակամածների կառուցման նման եղանակը փայտի զգալի տնտեսում է տալիս։ Այս ձևը կիրառվել է դեռ VI—VII դարերի հայ հուշարձաններում՝ Արուճի տաճարում (որտեղ երևում են թաղի շարվածքի մեջ տախտակամածի գերանների հենման խորշերը), Պտղնիում[10]։

Գմբեթներ, գմբեթարդներ։ XVII դարի գմբեթները և գմբեթարդները կառուցման տեխնիկայով նման են թաղային ծածկերին։ Շարվածքը նույնպես բաժանվում է երկու տեսակի՝ մշակված քարերից և ճեղքված բազալտից, աղյուսի շարվածքի նման։ Վերջին դեպքում շաղախը դուրս է գալիս պատի երեսը։ Պատերի, թաղերի, գմբեթարդների շարվածքում շաղախի երևալը ինտերյերում չի մտահոգել շինարարներին, որովհետև բոլոր այդ հուշարձանների ներսում սվաղ է նախատեսվել։

Սյունիքի XVII դարի գմբեթավոր երկու կառույցվածքների (Մեղրի) գմբեթները իրականացված են աղյուսից, այս շինանյութին հատուկ շարվածքի տեխնիկայով։

Կիրառված ծածկերի ձևերը, ինչպես տեսանք, բազմազան չեն։ Հիմնականում բավարարվել են պարզ և շինարարներին քաջ հայտնի այնպիսի կոնստրուկցիաներով, ինչպիսիք են կամարը, թաղը, գմբեթը։ XII—XIV դարերում Հայաստանում տարածված խաչվող կամարները XVII դարում Սյունիքում բոլորովին չեն հանդիպում։

Տանիքներ։ Սյունիքի համալիրներում տանիքները ըստ ձևի լինում են հարթ, միաթեք, երկթեք, բրգաձև։

Հարթ տանիքներ օգտագործվել են հիմնականում անսամբլների բնակելի և օժանդակ շինություններում, որտեղ այն ստացվում է թաղակապ ծածկի վրա բուսաբեռոնի լիցքի վրա փռված կավե շաղախով։ Միաթեք տանիքներ նույնպես սահմանափակ են կիրառվել։ Նրանք հանդիպում են եկեղեցիներին կից սրահ-գավիթներում։ Կոնստրուկցիան և կառուցման տեխնիկան նույնն է, ինչ և հարթ տանիքներինը։ Բրգաձև ծածկ ունի Մեղրու գմբեթավոր եկեղեցին, որը կառուցված է աղյուսից։

Ամենալայն կիրառություն ունի երկթեք տանիքը, որն օգտագործվել է բոլոր պաշտամունքային կառույցվածքներում։

Տանիքի ծածկի շինանյութ են հանդիսանում քարը և, հազվադեպ, կղ-

---

[10] *Н. М. Токарский*, Архитектура Армении IV-XIV вв., Ереван, 1961, стр. 176.

*մինդրը։ Քարե սալերով են ծածկված Տաթևի, Շնհերի անապատների և Ճատին վանքի բազիլիկաները։*

*Քարե սալերը կրաշաղախով ամրացվում են բետոնի լիցքին, որով լցրել են ծածկի թաղերի և տանիքի միջև ստացվող տարածությունը։ Սալերը պատրաստված են բազալտից, 10—15 սմ հաստությամբ։ Մաքուր տաշված են արտաքին երեսը և կողերը, ծածկին նայող երեսը չի հարթեցվում՝ շաղախի հետ ավելի ամուր կապակցման համար։ Տանիքների թեքությունը շատ մեծ չէ, և կրաշաղախը միանգամայն բավարար է սալերի ամրացման համար։ Այս պատճառով մետաղական կապեր, որոնք ընդունված էին X—XIV դարերի հուշարձանների տանիքներում, XVII դարում չեն հանդիպում։*

*Սալերն ուղղանկյուն են, տարբեր չափերի՝ երկարությունը տատանվում է կես մետրից մինչև 1,25 մ, լայնությունը՝ 0,4—0,8 մ։ Ընդերկայնական ուղղությամբ սալերը միմյանց ամրանում են քառորդի միջոցով, որը կամ թաքնված է լինում սալի հաստության մեջ, կամ էլ, ընդհակառակը, դուրս է գալիս սալի վերին հարթությունից։ Երկրորդ դեպքում այն ունի Γ-աձև ելուստ, որը մշակված է կամ ուղղանկյուն չորսուի, կամ կիսագլանի ձևով։ Սալերի այս ելուստները զուգահեռ են տանիքի թեքությանը և հուսալի ծածկում են կարանները։ Նման մշակում ունեն և Հայաստանի միջնադարյան վանքերի տանիքների սալերը*[11]*։*

*Տանիքի գագաթը նույնպես պատրաստված է բազալտից։ Այն երկար, եռանկյունաձև կտրվածքով հեծան է, որի երկթեք երեսները ծածկի սալերի հետ նույն հարթության մեջ են գտնվում և ունեն քողարկված քառորդներ՝ սալերի հետ միանալիս անջրանցիկ կարաններ ստանալու համար։*

*Քիվի մոտ սալերն իրենց ձևը չեն փոխում։ Նրանք ուղղակի դրվում են քիվի վրա, վերջինից դուրս գալով 5—10 սմ։ Փաստորեն ծածկի սալերի ծայրերը կազմում են քիվի տրամատի վերին մասը։ Տանիքի ծածկի մյուս շինանյութը կղմինդրն է։ Կղմինդրը լայն տարածում է ունեցել հայկական ճարտարապետության վաղ շրջանում՝ IV—VII դարերում։ Հետագայում՝ X—XI դարերում այն դուրս է մղվել քարե սալերի կողմից։ Վաղ միջնադարում կղմինդրե ծածկերն իրականացվել են կիսախողովակաձև և հարթ կղմինդրների զուգակցումով։ Տանիքի թեքության ուղղությամբ հարթ կղմինդրները դրվել են այնպես, որ վերևի սալը ծածկել է ներքևինին, իսկ ընդերկայնական կարաններն իրենց հերթին փակվել են կիսախողովակաձև կղմինդրներով*[12]*։*

*XVII դարում կղմինդրե ծածկերն իրականացված են միանգամայն ուրիշ եղանակով։ Հարթ կղմինդրներ չկան։ Ծածկն ամբողջովին պատրաստված է*

---

[11] *О. Халпахчьян*, Строительные традиции народных мастеров Армении, Архитектурное наследство, №3, стр. 63—64.

[12] *Н. Токарский*, Архитектура Армении IV-XIV вв., 177.

*կիսախողովակաձև կղմինդրներից (Հալիձորի անապատ)։ Սրանք ունեն մոտ 30 սմ երկարություն և մի ծայրում լայնանում են։ Երկթեք ծածկի վրա կղմինդրները տեղադրված են թեքությանը զուգահեռ, երկու շարքով։ Առաջին շարքը դրված է տանիքի վրա գոգավորությամբ դեպի վերև, ընդ որում վերևի կղմինդրի ծայրը հագցված է ներքևինի լայն մասին։ Ստացվում են առվակներ, որոնցով անձրևի ջուրն ազատ հոսում է դեպի ներքև։ Հարևան կղմինդրների միջև եղած արանքը փակելու համար օգտագործված է երկրորդ շարքը, որը դրված է ուռուցիկ մասով դեպի վեր։ Ինչպես տեսնում ենք, պարզ և սրամիտ ձևով կարողացել են անջրանցիկ ծածկույթ ստանալ, օգտագործելով միայն մեկ ձևի կղմինդր։*

*Տանձափարախում ծածկը չի պահպանվել։ Բայց հուշարձանի մոտ կան առանձին կղմինդրներ, որոնք նույնպես կիսախողովակաձև են։ Սակայն սրանք տարբերվում են Հալիձորում կիրառվածից՝ ամբողջ կղմինդրն է ըստ երկարության լայնանում։ Բայց կիրառման ձևը, մեր կարծիքով նույնն է եղել՝ այս կղմինդրներով նույնպես կարելի է ստանալ վերը նկարագրած ծածկը։*

*Կղմինդրները, քարե սալերի նման, ամրացվում են տանիքին կրաշաղախի միջոցով՝ մեխեր կամ գամեր այս նպատակի համար չեն օգտագործվել։*

## ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆԵՐԻ ՍԵՅՍՄԱԿԱՅՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

*Հայ միջնադարյան ճարտարապետության զարգացման ողջ ընթացքում ճարտարապետներն ու շինարարներն առաջնահերթ ուշադրություն են դարձրել կառուցվածքների սեյսմակայունության խնդրին։*

*Հայկական լեռնաշխարհի կործանիչ երկրաշարժերը յուրօրինակ խիստ քննություններ են հանդիսացել հուշարձանների առանձին կոնստրուկցիաների և շենքի տարածական ողջ հորինվածքի համար։ Դարավոր փորձը ցույց է տվել, որ առանձին կանգնած հենակետով երկարավուն կառուցվածքների հորինվածքը վատ է դիմադրում սեյսմիկ ուժերին, և հայ ճարտարապետությունը դեռ վաղ միջնադարից մշակել է կոմպակտ, համարյա սիմետրիկ հատակագծային ծավալային հորինվածքներ (խաչաձև, կենտրոնագմբեթ եկեղեցիներ)։ X—XIV դարերում լայնորեն տարածված գմբեթավոր դահլիճը նույնպես ներսում ունի խաչաձև հատակագիծ, և գմբեթը նստում է պատերի հետ մի ամբողջություն կազմող հզոր որմնամույթերի վրա։*

*Ինչպես տեսանք, XVII դարում պաշտամունքային կառուցվածքի ամենատարածված տիպը եռանավ բազիլիկան է։ Հայ շինարարներին արդեն վաղուց ծանոթ էին այս հորինվածքի սեյսմիկ առումով բացասական կողմերը։ Եվ նրանք կիրառեցին բազիլիկայի տիպը ոչ թե նույնությամբ, ինչպես այն ծանոթ էր IV—VI դարերում, այլ կարևոր փոփոխություններով՝ զգալի*

կրճատելով կառուցվածքների ընդհանուր երկարությունը և առանձին կանգնած մույթերի քանակը։ Ոչ թե կրկնությունը, այլ ստեղծագործական մոտեցումն ունեցավ այն հետևանքը, որ եռանավ բազիլիկայի հորինվածքը XVII դարում ստացավ մույթերի ամենաքիչ հնարավոր քանակը՝ մեկ զույգ, որը նորություն էր հայ ճարտարապետության մեջ։ Մի կողմ թողած այս բազիլիկաների ինտերյերի գեղարվեստական, արտահայտչական կողմը, պետք է ասել, որ մոտավորապես քառակուսի ներքին տարածություն ունեցող այս տիպը կոնստրուկտիվ և սեյսմիկ առումով ավելի կայուն հորինվածք է, քան վաղ միջնադարի երկար հատակագծով բազիլիկաները։

XVII դարի բազիլիկաների սեյսմակայունության հիանալի օրինակ է Հալիձորի Հարանց անապատի երկու զույգ խաչաձև մույթերով եկեղեցին։ 1658 թ. երկրաշարժը, տեղանքի ճեղքվելը և սրան հաջորդած ողջ համալիրի մոտ 15 մ ներքև սահելը կործանեցին բոլոր կառուցվածքները, բացառությամբ եկեղեցու, որն ստացավ ոչ էական վնասվածքներ։

Տեսնենք, թե կոնստրուկտիվ ինչ տարբերություններ կան բնության դաժան քննությունը բռնած այս կառուցվածքի և հայ ճարտարապետության վաղ շրջանի բազիլիկաների միջև։ Մինչև VII դարը կառուցված նմանատիպ հուշարձաններից Սյունիքի XVII դարի բազիլիկաներին թե՛ հատակագծով, և թե՛ ծավալային լուծումով առավել նման է Աշտարակի բազիլիկան, որն ունի այդ շրջանի համար մույթերի նվազագույն քանակը՝ երեք զույգ։

Աշտարակում կառուցվածքն ավելի ձգված է, քան Հալիձորում, համեմատության համար ավելի ճիշտ է վերցնել ոչ թե երկուսի բացարձակ երկարությունները, այլ լայնության և երկարության հարաբերությունները։ Աշտարակում այն 1:2 է, Հալիձորում՝ 1:1,6։ Հետևաբար, վերջինս ավելի քիչ ձգված հորինվածք ունի, իսկ դա ամբողջ կառուցվածքի կայունության համար դրական հանգամանք է։ Այս հարցում կարևոր է նաև հուշարձանի բարձրության և լայնության հարաբերությունը՝ Աշտարակում այն մոտավորապես 1:1 է, իսկ Հալիձորում՝ 1:1,3, այսինքն սա ավելի գետնահար է և ողջ կառուցվածքի ծանրության կենտրոնը ավելի ներքև է գտնվում։ Այս երկու եկեղեցիներում զգալի տարբերվում են և մույթերի բարձրությունները (հատակից մինչև կամարաշարքի կամարների իմպոստները)։ Բացարձակ չափերը համեմատելը կարևոր չէ, որովհետև հուշարձանների մեծությունները տարբեր են։ Սակայն հետաքրքրական է վերցնել կառուցվածքի և մույթի ազատ բարձրության հարաբերությունը՝ Աշտարակում այն կազմում է 2:1, իսկ Հալիձորում 3:1՝ վերջինիս առանձին մույթի՝ կոնստրուկտիվ տեսակետից ամենապատասխանատու հանգույցի ազատ կանգնած մասի բարձրությունը համեմատաբար ավելի փոքր է, հետևաբար այն ավելի կայուն է։ Տվյալ մասնավոր դեպքում հետաքրքիր է և մույթի ձևը՝ Աշտարակում այն Γ-աձև է, Հալիձորում՝ խաչաձև։

*Եթե առաջինը սեյսմիկ ուժերին տարբեր ուղղություններով տարբեր դիմադրություն է ցուցաբերում, ապա խաչաձևը հավասարապես կայուն է բոլոր ուղղություններով գործող ուժերի նկատմամբ։*

*Այս բոլոր գործոնները միասին վերցրած, հնարավորություն են տվել նույն չափերի կոնստրուկցիաներում (մույթերի, կամարների, պատի հաստությունը երկու դեպքում էլ համարյա նույնն է) առավել ամրություն ստանալ։*

*XVII դարում, ինչպես տեսանք, ստեղծվեց թաղածածկ դահլիճի հորինվածքի մի նոր ենթատիպ՝ որմնամույթերով և որմնախորշերով դահլիճը։ Այս տիպի տարածական կառուցվածքը՝ պատերին կից հզոր մույթերի միջև ձգված կամարների վրա հենվող թաղով, շատ ավելի կայուն է, քան սովորական թաղածածկ դահլիճները։ Այստեղ թաղի հրող ուժը ոչ թե անմիջապես փոխանցվում է պատերին, այլ կամարների միջոցով՝ հզոր մույթերին։ Այս հորինվածքում ստացվել է ծավալային այնպիսի կոնստրուկտիվ համակարգ, որն ընդունակ է դիմակայելու ամենատարբեր կործանիչ ուժերին։*

*Կառուցվածքների սեյսմակայունությունն ապահովելու համար XVII դարում չեն բավարարվել միայն հատակագծային-տարածական հորինվածքները նըշված առանձնահատկություններով օժտելով։ Մեծ ուշադրություն է դարձվում շենքի առանձին կոնստրուկցիաների և ծանրության տեղաբաշխմանը՝ նրա առանձին մասերում։ Այս մոտեցումը հատուկ է հայ ճարտարապետությանն ընդհանրապես և X—XIV դարերի հուշարձաններին մասնավորապես, որովհետև «...կառուցվածքի սեյսմակայունության համար բավական կարևոր նշանակություն ունի շենքի ընդհանուր զանգվածի ծանրության կենտրոնի տեղաբաշխումը։ Կառուցվածքների միևնույն ծավալի դեպքում որքան ցածր լինի տեղադրված ծանրության կենտրոնը, այնքան կառուցվածքը լավ կդիմադրի սեյսմիկ ցնցումներին»[13]։ Այս պատճառով շինարարները, բացի ողջ հորինվածքին գետնահար բնույթ տալուց, XVII դարում ձգտել են հնարավորին չափ թեթևացնել շենքի վերին մասերը։ Գմբեթավոր բազիլիկաներում սա արտահայտվել է շինանյութի ընտրության հարցում. թե հարավային Սյունիքի և թե Նախիջևանի շրջանի XVII դարի գմբեթավոր կառուցվածքների մեծ մասի գմբեթը ոչ թե իրականացված է շենքի հիմնական ծավալի շինանյութից՝ բազալտից (ծավալային կշիռը 2,6—2,7), այլ աղյուսից (1,42—1,7)։ Ընդ որում այդ աղյուսի գմբեթների ծածկը կառուցված է սնամեջ։*

*X—XIV դարերի համալիրներում կառուցվածքների վերին մասի ծանրության նվազեցումը կատարվում էր նաև ծածկի թաղի ու տանիքի միջև եղած լիցքի ծավալի առավել թեթևացմամբ։ Այդ նպատակով բետոնի հոծ լիցքի փոխարեն շատ հուշարձաններում օգտագործված են կժեր և կարասներ*

[13] *О. Халпахчьян*, Строительные традиции народных мастеров Армении, Арх. наследство, №3, стр. 67.

(Սանահին, Հաղպատ, Անբերդ, Հովհաննավանք)[14]: XVII դարում նման հնարքի չենք հանդիպում: Սակայն սրա փոխարեն բազիլիկ կառուցվածքներում (ինչպես և գմբեթավոր) թաղի և տանիքի արանքում, կոնստրուկտիվ դեր չխաղացող և պատասխանատու հանգույցում ավելորդ բեռ հանդիսացող բետոնի լիցքի փոխարեն թողել են թունելանման թաքստոցներ: Պաշտամունքային կառուցվածքներում ավանդատները բարձրությամբ հավասար չեն կողքի նավերին և ավանդատան թաղի ու տանիքի միջև ստացվում է խուլ տարածություն, որը լցվում է բետոնով: Այս ավելորդ բեռից ազատվելու համար միջնադարում հաճախ ոչ թե մեծացրել են ավանդատան բարձրությունը, այլ այն կառուցել են երկհարկանի: Նման հորինվածք կիրառված է X—XIV դարերի ճարտարապետական համալիրների շատ եկեղեցիներում: XVII դարում, Սյունիքում նույնպես հանդիպում ենք նման օրինակի՝ Մեղրու բազիլիկայում:

XVII դարում փնտրել են և առանձին կոնստրուկցիաների համար առավել սեյսմակայուն ձևեր: Զգալի թեթևացված է քիվը՝ այն վերածվել է մի պարզ սալիկի, պատի հարթությունից շատ քիչ դուրս եկող: Հուշարձանները կիսամշակ քարերից կառուցելիս, որպես օրենք, պատասխանատու կոնստրուկցիաները իրականացվել են մաքուր տաշած քարերից, ավելի խնամքով շարված: Վերամշակված է և եռանավ բազիլիկայի ավանդական հորինվածքի որոշ կոնստրուկտիվ մասերը: Օրինակ, եթե վաղ շրջանի բազիլիկաներում կիրառվել են պայտաձև կամարներ, աբսիդներ, ապա XVII դարում դրանք կառուցվել են կիսաշրջանաձև և, ավելի շատ սլաքաձև, որովհետև ժամանակը ցույց տվեց պայտաձև կոնստրուկցիայի անբավարար սեյսմակայունությունը:

XVII—XVIII դարերի կառուցվածքների կոնստրուկտիվ վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ժամանակաշրջանի ճարտարապետությունը մի կամուրջ հանդիսացավ, կապելով միջնադարի շինարարական տեխնիկայի նվաճումները մեր օրերի հետ և թույլ չտվեց, որ հայկական շինարվեստի հազարամյակներ տևող զարգացման շղթան ընդհատվի:

---

[14] Նույն տեղում, էջ 68:

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հայկական շինարվեստի նոր զարթոնքի ժամանակաշրջանում՝ XVII—XVIII դարերում կարևոր տեղ են գրավում Սյունիքի ուշ միջնադարի ճարտարապետական համալիրները: Նրանց մասնագիտական ուսումնասիրությունը և մանրամասն վերլուծությունը միայն պատմական հետաքրքրություն չեն ներկայացնում և սոսկ լրացնում հայ ճարտարապետության պատմությունը: Սյունիքի XVII—XVIII դարերի համալիրների վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ժամանակաշրջանի Հայաստանի շինարվեստը ոչ թե անկումային բնույթ ուներ, այլ իր զարգացման նոր էտապն էր ապրում, նոր սոցիալ-տնտեսական, էսթետիկական պահանջներին համապատասխան:

Սյունիքի ուշ միջնադարի համալիրները բնորոշ են բազմաթիվ և բազմազան աշխարհիկ կառուցվածքներով: Նրանց կազմում կան բնակելի սենյակներ, կոմունալ շինություններ՝ սեղանատներ, խոհանոցներ, մթերանոցներ, հյուրատներ, պաշտպանական կառուցվածքներ, արտադրական շենքեր՝ ձիթհաններ, հնձաններ, ջրաղացներ, ինժեներական կառուցվածքներ՝ ջրանցքներ, կամուրջներ: Քաղաքացիական բնույթի այս կառուցվածքներն աչքի են ընկնում ճարտարապետական, գեղարվեստական հնարքների հակիրճությամբ և ռացիոնալ լուծումներով:

Կրոնական համալիրները տարբերվում են Հայաստանի այլ համակառույցներից յուրահատուկ անսամբլային ճարտարապետությամբ: Նրանց ողջ հորինվածքը կազմակերպվում է մեկ պաշտամունքային կառուցվածքի շուրջը: Բացակայում են վերապալց շեշտերը, համալիրները մեկուսացված են շրջապատից և նրանց անսամբլային ճարտարապետությունը բացահայտվում է միայն ներսում: Սյունիքի XVII—XVIII դդ. անսամբլների ճարտարապետության արժանիքներն են ֆունկցիոնալ կապերի հստակ լուծումը, ռացիոնալ հատակագծային ու ծավալային հորինվածքները:

XIV—XVII դարերում, երբ Հայաստանը վերջնականապես կորցրել էր իր պետականությունը, երկրում հայերի կողմից իրենց պաշտպանության համար բերդեր ու ամրոցներ կառուցելու ոչ մի հնարավորություն չկար: Միայն Ղափանի անկախ իշխանության կարճատև գոյությունը Սյունիքում հայկական ամրոցաշինության վերածննդի հնարավորություն ստեղծեց (Մեղրի, Հալիձոր): Մեղրու բերդը հայ ճարտարապետության մեջ առայժմ հայտնի միակ պաշտպանական կառուցվածքն է՝ իրականացված հրազենի օգտագործումը հաշվի առնելով:

Սյունիքի կրոնական համալիրների հորինվածքներն աչքի են ընկնում երկու տարբեր ճարտարապետական օրգանիզմների՝ կրոնական և պաշտպանական կառուցվածքների յուրօրինակ միավորումով:

Հայաստանում վանք-ամրոցի հորինվածքը հայտնի է դեռ ավելի վաղ ժամանակներից, երբ կրոնական համալիրները շրջապատվում էին այնպիսի պաշտպանական կառուցվածքներով, որոնք բնորոշ են ամրոցներին: Վանք-ամրոցների կառուցումն առանձնապես լայն տարածում ստացավ XVII—XVIII դարերում: Հայաստանի վանքերի մեծ մասն այս դարերում շրջապատվեցին բուրգերով ուժեղացված պարիսպներով (Գնդեվանք, Տաթևի վանք, Գեղարդ): Բայց վանք-ամրոցն իր ճարտարապետական ավարտուն կերպարն ստացավ XVII դարում կառուցված նոր համալիրներում, որտեղ անսամբլը հենց սկզբից ստեղծվում էր կրոնական ու պաշտպանական տարրերի զուգակցման միասնական մտահղացումով, և Հայաստանում այս հորինվածքի լավագույն օրինակները կառուցված են Սյունիքում:

Ուշ միջնադարում խաղաղ ստեղծագործական աշխատանքի ժամանակաշրջանը կարճ էր՝ մեկ դարից պակաս և Հայաստանի սոցիալ-տնտեսական վիճակը նպաստավոր չէր ոչ միայն սկզբունքորեն նոր տիպի ճարտարապետական կառուցվածքներ ստեղծելու, այլև նախորդ դարերի ժառանգությունը հանդիսացող մի շարք համարձակ կոնստրուկցիաների ու ինքնատիպ հորինվածքների կիրառման համար: Համարյա բացակայում է ճարտարապետության և քանդակագործության սինթեզը, որը հնում զարգացման բարձր մակարդակի էր հասել: XVII—XVIII դարերի համար բնորոշ են նախկինում ձևավորված ճարտարապետական և շինարարական-տեխնիկական ավանդների հնարավորին չափ պահպանումը: Սակայն միայն Սյունիքում XVII դարում ստեղծվեց ավանդական թաղածածկ դահլիճի մի հետաքրքրական տարբերակ՝ որմնամույթերով ու որմնախորշերով դահլիճ, որն ունի մի շարք կոնստրուկտիվ և ֆունկցիոնալ առավելություններ սովորական թաղածածկ դահլիճի և բազիլիկաների նկատմամբ:

Հայաստանում ու առանձնապես Սյունիքում XVII դարում պաշտամունքային կառուցվածքի ամենատարածված տիպը եռանավ բազիլիկան է: Սակայն հայ շինարարները այդ տիպը կիրառեցին ոչ թե նույնությամբ, ինչպես այն ծանոթ է վաղ միջնադարից, այլ հատակագծային-ծավալային հորինվածքի կարևոր փոփոխություններով: Կառուցվածքի երկարության և առանձին կանգնած հենակետերի քանակի կրճատումը, ծավալի ավելի գետնահար լուծումն անհամեմատ ուժեղացրին այս ավանդական հորինվածքի ամրությունը և սեյսմակայունությունը:

XVII դարում հարավ-արևելյան Հայաստանում կատարելագործվեց շինարարական գործի կազմակերպումը: Տարբեր աշխատանքների ու կոնստրուկցիաների համար առաջացան առանձին շինարարական խմբեր: Սա նորություն էր հայ ճարտարապետության մեջ և բավական առաջադեմ երևույթ: Աշխատանքների այսպիսի



11—888

նեղ մասնագիտացումը հնարավորություն տվեց Սյունիքում շատ կարճ ժամանակամիջոցում ստեղծել բազմաթիվ խոշոր կոմպլեքսներ և տարբեր ժանրի հարյուրավոր կառուցվածքներ, ավելի շատ, քան նախորդ բոլոր դարերում:

Սյունիքում ուշ միջնադարում շինարարության մասսայական բնույթը ստիպեց ճարտարապետներին կատարելագործել շենքերի հատակագծերը և կազմվածքը, ավելի նպատակահարմար լուծումներ գտնել: Համալիրների և առանձին շենքերի հորինվածքներն աչքի են ընկնում ճարտարապետական ձևերի և կոնստրուկտիվ հիմքի հարազատությամբ, ճակատների լուծման պայմանավորվածությամբ՝ ներքին տարածության կազմակերպմամբ: XVII դարում գեղարվեստական արտահայտչականությունը ստացվում է ոչ թե դեկորով, այլ համաչափությունների մեծ վարպետությամբ մշակված համակարգով: Այս վերջին առանձնահատկությունը (դեկորի բացակայումը) Հայաստանի ուշ միջնադարի ճարտարապետությունն անկումային համարելու անարդարացի կարծիքի սկզբնապատճառներից մեկն է:

Սյունիքի XVII—XVIII դարերի համալիրների վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ժամանակաշրջանի ճարտարապետությունը բնորոշ է պարզությամբ, ամրությամբ, ֆունկցիոնալ հիմնավորումով ու ռացիոնալիզմով:

XVII—XVIII դարերի Հայաստանի իրավիճակն այնքան էլ բարենպաստ չեղավ ճարտարապետական-շինարարական կյանքի համար: Սակայն այս դժվարին ժամանակաշրջանում նույնպես հայ ճարտարապետությունը կարողացավ շարունակել իր հաջորդական զարգացումը, պահպանելով և գալիքին հանձնելով դարերից եկող իր ավանդները:



1. Տաթևի Մեծ անապատ. ընդհանուր տեսքը։



2. Տաթևի Մեծ անապատ. տեսքն արևմուտքից։



3. Տաթևի Մեծ անապատ. Աստվածածին եկեղեցու արևմտյան ճակատը։



4. Տաթևի Մեծ անապատ. զամբարանը հյուսիս-արևմուտքից։



5. Շատին վանք. ընդհանուր տեսքը։



6. Շատին վանք. Սիոն եկեղեցին հարավ-արևմուտքից։



7. Կնեվանք. տեսքը հարավ-արևելքից։



8. Կնեվանք. տեսքը արևմուտքից։



9. Շնհերի Կուսանաց անապատ. ընդհանուր տեսքը։



*10. Հալիձորի Հարանց անապատ. Համալիրի և գավթի մուտքերը*



*11. Հալիձորի Հարանց անապատ. եկեղեցու արևելյան ճակատը։*



*12. Բեխի անապատ. եկեղեցու արևմտյան ճակատը։*



*13. Բեխի անապատ. Հնագույն եկեղեցու քանդակազարդ բեկորը։*



14. Հալիձորի բերդ. ընդհանուր տեսքը։



*15. Տաթևի վանք. ընդհանուր տեսքը մինչև 1931 թ. երկրաշարժը։*



16. Մեղրու Մեծ թաղի Աստվածածին եկեղեցու ընդհանուր տեսքը։



17. Մեղրու Մեծ թաղի Աստվածածին եկեղեցու գմբեթը։



*18. Տաթևի Մեծ անապատ. Հարավային խցերի շարքը։*



*19. Տաթևի Մեծ անապատ. խցերի Γ-աձև խումբը։*



*20. Գնդեվանք, սեղանատան հարավային ճակատը։*



*21. Շնհերի Կուսանաց անապատ. սեղանատան արևմտյան ճակատը։*



22. Գնդեվանք. պահակատնով դարբասը։



23. Գնդեվանք. արևելյան բուրգը։



*24. Շատին վանք. արևելյան աշտարակի մուտքը։*



*25. Շատին վանք. հարավային պարիսպը։*



26. Շատին վանք. արևմտյան մուտքը։



27. Տաթևի Մեծ անապատ. Հարավային դարպասը։



28. Մեղրի ավանի և բերդի ընդհանուր տեսքը։



29. *Մեղրու բերդի արևելյան կլոր աշտարակը։*



30. *Մեղրու բերդի արևելյան ուղղանկյուն աշտարակը։*



31. Տաթևի Մեծ անապատի Սեի հնձանի ընդհանուր տեսքը։



32. Տաթևի վանքի ձիթահանքը։

# ՑԱՆԿԵՐ

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

МУРАД МАРГАРОВИЧ АСРАТЯН
ՄՈՒՐԱԴ ՄԱՐԳԱՐԻ ՀԱՍՐԱԹՅԱՆ

ՍՅՈՒՆԻՔԻ XVII—XVIII ԴԱՐԵՐԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐՆԵՐԸ

Տպագրվում է Հայկ. ՍՍՀ ԳԱ արվեստի ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ Ս. Խ. Մնացականյան
Հրատարակչական խմբագիր՝ Ս. Ա. Անաստասյան
Կազմը նկարիչ Կ. Կ. Ղաֆադարյանի
Տեխնիկական խմբագիր Ս. Կ. Զաքարյան
Սրբագրիչ Ա. Ա. Ղափլանյան

ՎՖ 04272 ԽՀԽ 1358 Հրատ. 3610 Պատվեր 888 Տպաքանակ 2000

Հանձնված է արտադրության 5/X 1971 թ., ստորագրված է տպագրության 29/V 1973 թ., տպագր. 11,88 մամուլ. հրատ. 11,28 մամուլ, պայմ. 13,9 մամուլ, թուղթ № 1, $70 \times 90^{1}_{16}$:
Գինը 1 ռ. 60 կ.:

Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչության Էջմիածնի տպարան

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 52 | 15 վ. | հիմնադրվել են | հիմնադրվել է |
| 133 | 6 վ. | վերակառուցվել | վերակառուցել |
| 183 | 12 ն. | Հակոբ Թ. Խ. | Հակոբյան Թ. Խ. |
| 188 | 1 ն. | Օսմանյա | Օսմանյան |